

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**8**

ՕԳՈՍՏՈՍ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
**ИЗДАЕТСЯ С 1922 г.**
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

---

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



---

ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՀԵՏԱԳԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ԵՎ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման հարցը։**

*Որոշման մեջ նշված է, որ լենինյան կոմերիտմիությունը ըստ արժանվույն է կատարում կուսակցության հուսալի ռեզերվի դերը, մատաղ սերունդների կոմունիստական դաստիարակության գործում, կոմունիզմի իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում կուսակցության ակտիվ օգնականի դերը։ Իր շարքերում միավորելով 42 միլիոն պատանիների ու աղջիկների, ՀամԼԿԵՄ-ը կարևոր տեղ է գրավում սովետական հասարակության քաղաքական սիստեմում, գործուն մասնակցություն է ցուցաբերում էկոնոմիկայի, գիտության և մշակույթի զարգացմանը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալմանը, երկրի պաշտպանունակության ամրապնդմանը։*

*Կոմերիտականները, երիտասարդները պատվով են շարունակում ավագ սերունդների գործը, կուսակցության կոչով խանդավառությամբ ձեռնամուխ են լինում երկրի համար առավել կարևոր խնդիրների լուծմանը։ Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ իրենց ամենօրյա առօրյա աշխատանքով նորանոր էջեր են գրում կոմերիտական փառքի տարեգրության մեջ։ Ծանրակշիռ է կոմերիտմիության ավանդը Բայկալ—Ամուր մայրուղու, Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղի կառուցման, Ռուսաստանի ոչ սևահողային գոտու վերափոխման, խոպանի յուրացման, Սիբիրի, Հեռավոր Արևելքի, Ծայրագույն հյուսիսի հարստությունների յուրացման, պարենային ու էներգետիկ ծրագրերի իրականացման մեջ։*

*Հավատարիմ մնալով Լենինի պատգամներին, ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ կուսակցության կողմից երիտասարդական շարժման ղեկավարումը սոցիալիստական հասարակության մեջ սերունդների հեղափոխական հաջորդայնության առաջնագույն պայմանն է և կարևորագույն երաշխիքը, կոմերիտմիության գաղափարայնության, մարտունակության և ստեղծագործական ակտիվության գրավականը։ Եվ այս սկզբունքն անշեղորեն կենսագործվում է։ Կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների ազդեցությամբ հարստանում է կոմերիտմիության կուսակցական ղեկավարման բովանդակությունը, կատարելագործվում են դրա*

ձևերն ու մեթոդները, ուժեղանում է երիտասարդության վրա կուսակցական ազդեցությունը կոմերիտական կազմակերպություններում աշխատող կոմունիստների միջոցով։ Երիտասարդության հետ կատարվող աշխատանքին ակտիվորեն մասնակցում են պետական ու հասարակական կազմակերպությունները, կուսակցության, աշխատանքի և պատերազմի վետերանները։

Սրա հետ միասին զարգացած սոցիալիզմի կատարելագործման խնդիրները, երկու համաշխարհային սիստեմների հակամարտության ուժեղանալը պահանջում են է՛լ ավելի բարելավել կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, մատաղ սերնդի դաստիարակության ամբողջ գործը, ակտիվացնել կոմերիտմիության մասնակցությունը սոցիալիստական շինարարությանը։ Անհրաժեշտ է հաշվի առնել նաև այն, որ երիտասարդության մի մասի մեջ առկա են աշխատանքային ու հասարակական պասսիվությունը, ինդիվիդուալիզմը, անկարգապահությունը և բացասական այլ դրսևորումներ։

ՀամԼԿԵՄ Կենտկոմը, տեղական կոմերիտական մարմինները դանդաղ են վերակառուցում իրենց գործունեության ոճն ու մեթոդները, էական թերություններ են թույլ տալիս կոմերիտական կադրերի հետ կատարվող աշխատանքում։ Կոմերիտական կազմակերպությունները միշտ չէ, որ արդյունավետ են օգտագործում երիտասարդների վրա ազդելու առկա հնարավորությունները, փորձում են նոր խնդիրները լուծել «մաշված», շաբլոնային եղանակներով ու միջոցներով։ Նրանք հաճախ չեն հասցնում իրենց վերաբերմունքը ցույց տալ երիտասարդության միջավայրում առաջացած նոր հետաքրքրություններին, դրանց հաղորդել հարկավոր ուղղությունը։

Կուսակցական մարմինները կոմերիտական կազմակերպությունների նըկատմամբ պահանջկոտ վստահությունը երբեմն փոխարինում են ավելորդ կանոնակարգումով ու խնամակալությամբ, իսկ որոշ դեպքերում էլ նույնիսկ տարրական ուշադրություն չեն դարձնում նրանց գործերին ու հոգսերին։ Կուսակցական շատ կոմիտեներ թուլացրել են կոմերիտական ակտիվի հետ կատարվող աշխատանքը, անբավարար են ընդհանրացնում և արմատավորում կոմերիտմիության, երիտասարդության հետ կատարվող աշխատանքի դրական փորձը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշել է, որ մատաղ սերնդի դաստիարակության հետագա բարելավումը պետք է դիտել որպես կուսակցական, պետական և համաժողովրդական շատ կարևոր գործ, ելնել այն բանից, որ դա վերջին հաշվով մեր հայրենիքի ապագայի հուսալի ապահովման հարցն է։

Արդի պայմաններում ավելի ու ավելի մեծ հրատապություն է ստանում կոմերիտմիության երրորդ համագումարում Վ. Ի. Լենինի ելույթի մեջ երիտասարդությանը տրված պատմական պատգամը՝ կոմունիզմ սովորել։ Կուսակցական կազմակերպությունների պարտքն է պատանիներին և աղջիկներին կոմունիզմ սովորեցնել մեծ Լենինի կյանքի ու գործունեության օրինակի հիման վրա, կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթների հիման վրա, երիտասարդությանը ցույց տալ լիակատար վստահություն, միաժամանակ բարձրացնել պահանջկոտությունը նրա նկատմամբ, նրա պատասխանատվությունը սոցիալիզմի պատմական բախտի համար։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին առաջարկված է ապահովել կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի այն ցուցումների պարտադիր կատարումը, որ բովանդակում են Կենտկոմի 1984 թվականի փետրվարյան և ապրիլյան պլենումներում, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների համաբանակային խորհրդակցությունում նրա ունեցած ելույթները և վերաբերում են կոմերիտմիության կուսակցական ղեկավարումն ուժեղացնելու, երիտասարդության դաստիարակության գործում կոմերիտմիության դերը բարձրացնելու



հարցերին։ Կոմերիտմիության, երիտասարդության գլխավոր խնդիրը համարել լիառուժ մասնակցությունը այն ոչ դյուրին, բազմապլանային աշխատանքին, որ կուսակցությունը բնորոշում է որպես զարգացած սոցիալիզմի կատարելագործում, երիտասարդներին դաստիարակել կոմունիզմի գործին անսահման նվիրվածության ոգով, դաստիարակել որպես սովետական հասարակության արժանավոր քաղաքացիների։

Երիտասարդների մեջ հաստատակամորեն ձևավորել մարքս-լենինյան աշխարհայացք, դասակարգային ինքնագիտակցություն, անհաշտ վերաբերմունք բուրժուական գաղափարախոսության և այն ամենի նկատմամբ, ինչը հակասում է սոցիալական արդարության գաղափարին։ Երիտասարդության մեջ օրգանական պահանջմունք մշակել տիրապետելու ժամանակակից գիտելիքներին, նրան ակտիվորեն ներգրավել մասնակցելու ստեղծարար գործունեությանը, տնտեսական ու սոցիալական զարգացման հանգուցային խնդիրների լուծմանը, պետության և հասարակության կառավարմանը։ Հասնել այն բանին, որ երիտասարդության դաստիարակության, կրթության և ուսուցման ամբողջ գործը լինի նրա մեջ կոմունիստական բարոյականության դաստիարակում։

Կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, պետք է կրի պլանաչափ, սիստեմատիկ բնույթ, ապահովի երիտասարդական միության բոլոր օղակների ակտիվ, նպատակասլաց գործունեությունը։ Կարևոր է, որ մշտապես և ինչպես հարկն է խորամուխ լինեն երիտասարդական միջավայրում տեղի ունեցող սոցիալական, գաղափարախոսական պրոցեսներին, սիստեմատիկաբար վերլուծեն դրանք, կոմերիտական կազմակերպություններին օգնեն ընտրելու աշխատանքի հիմնական ուղղությունները, դրա առավել գործուն ձևերը։

Ընդսմին պետք է հանդես բերել առավելագույն համոզմունք և ընկերական ուշադրություն, պաշտպանել օգտակար նախաձեռնությունները, սովորեցնել և առաջ մղել «ոչ թե խրատներով, այլ աշխատանքով» (Լենին)։ Այս ամենը դիտել որպես երիտասարդական կազմակերպության կուսակցական ղեկավարման ոճին ներկայացվող պարտադիր պահանջ։

Անհրաժեշտ է կանոնավոր կերպով քննարկել կոմերիտական կազմակերպությունների կյանքի ու գործունեության հարցերը, նրանց օգնել երիտասարդության սոցիալական պրոբլեմների լուծման գործում, պայմաններ ստեղծել, որպեսզի կոմերիտմիությունը լիովին օգտագործի պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու իր մեծ իրավունքները։ Երիտասարդների ուսուցման, աշխատանքի, կենցաղի ու հանգստի բոլոր կենսական հարցերը պետք է լուծվեն անպայման կոմերիտմիության անմիջական մասնակցությամբ։ Պրակտիկա դարձնել կոմերիտականների և երիտասարդների հրավիրումը կուսակցական ժողովների։ Նպատակահարմար համարել կուսակցական կոմիտեների և բյուրոների կազմում ընտրել կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներին, երիտասարդության իսկական ղեկավարներին։ Կուսակցության շարքերն ընդունել կոմերիտմիության լավագույն սաներին, նախ և առաջ՝ բանվորներից ու կոլտնտեսականներից։ Բարձրացնել կոմերիտական կազմակերպությունների պատասխանատվությունը ՀամԼԿԵՄ-ի անդամներին կուսակցության մեջ երաշխավորելու համար։

Պետք է մշտապես հոգալ երիտասարդական միության գործունեության մեջ կուսակցական կորիզի դերը բարձրացնելու մասին։ Հիշել, որ կոմերիտմիության մեջ կոմունիստի աշխատանքը պատասխանատու կուսակցական աշխատանք է և այն պետք է պատվով կատարել։ Յուրաքանչյուր երիտասարդ կոմունիստ կոչված է ծառայելու որպես անձնվեր աշխատանքի, գաղափարական համոզվածության, անբասիր անձնական վարքի օրինակ։

Կուսակցական կոմիտեները պետք է միջոցներ ձեռնարկեն ուժեղացնելու սովետական, արհմիութենական, տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների՝ երիտասարդության հետ կատարվող աշխատանքը, բարելավելու նրանց գործողությունների կոորդինացումը։ Պետք է հասնել այն բանին, որ գործնականում անշեղորեն իրականացվեն երիտասարդության հետ

կուսակցական ղեկավարների մշտական հաղորդակցման, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակությանը կոմունիստների, բոլոր ղեկավար կադրերի ակտիվ մասնակցության վերաբերյալ կուսակցության պահանջները։ Նրանք կոչված են սիստեմատիկաբար լինելու այնտեղ, որտեղ աշխատում, սովորում, հանգստանում են երիտասարդները, նրանց հետ սրտաբաց, վստահություն ներշնչող զրույցներ ունենալ ցավոտ հարցերի շուրջը, սպառիչ պատասխաններ տալ այդ հարցերին։

ՀամԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության հանրապետական, երկրամասային ու մարզային կոմիտեները պարտավոր են մեծացնել կոմերիտական կազմակերպությունների ավանդը տնտեսական ու սոցիալ-կուլտուրական պլանների իրականացման գործում։ Յուրաքանչյուր երիտասարդ աշխատավորի ներարկել այն բանի գիտակցումը, որ կուսակցությունը, սահմանելով երկրի զարգացման հեռանկարները, զգալի չափով ապավինում է ներկայիս երիտասարդության ձեռքերի ճարտարությանը, նրա մտքի խիզախմանը, աշխատանքային խանդավառությանը։ Երիտասարդությանը հաստատակամորեն ընդգրկել սոցիալիստական մրցության մեջ, զարգացնել կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվների շարժումը, բարձրացնել նրանց հեղինակությունն ու դերը պատանիների դաստիարակության գործում։ Երիտասարդության ջանքերը կենտրոնացնել հանրային արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի, կոմպլեքսային ավտոմատացման, էլեկտրոնիկայի, ատոմային էներգետիկայի զարգացման, նյութերի, տեխնիկայի ու տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների ստեղծման ու արմատավորման հիմնական ուղղություններում, տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների տիրապետման գործում։

Ընդսմին շատ կարևոր է, որ ուշադրություն նվիրելով լայնամասշտաբ միջոցառումներին, կոմերիտական կազմակերպությունները երկրորդ պլան չմղեն այսպես կոչված «փոքր», ամենօրյա կոնկրետ գործերը, որոնցից վերջին հաշվով ստեղծվում են շոշափելի արդյունքները։

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները պետք է մշտապես հոգան երիտասարդ բանվորների, կոլտնտեսականների և մասնագետների համար բարձրարտադրողական աշխատանքի, նրանց պրոֆեսիոնալ վարպետության բարձրացման և լիարժեք հանգստի պայմաններ ստեղծելու մասին։ Զարգացնել և կատարելագործել վարպետ դաստիարակների շարժումը, երիտասարդության մեջ դաստիարակել սեր աշխատանքի նկատմամբ, անհաշտ վերաբերմունք՝ անկարգապահության, անտնտեսվարության, հարբեցողության ու ծուլության նկատմամբ։ Բանվորների և գյուղացիների հետ միասին գիտակցական ու կարգապահ աշխատանքով միայն, նշել է Լենինը, կարելի է դառնալ իսկական կոմունիստներ։

ՀամԼԿԵՄ Կենտկոմին, մինիստրություններին ու գերատեսչություններին առաջարկված է վճռականորեն վերջ տալ հարվածային կոմերիտական կառույցների, դրանցում աշխատավորական կոլեկտիվների ձևավորման նկատմամբ եղած ձևական-բյուրոկրատական վերաբերմունքին։ Ապահովել, որ յուրաքանչյուր կոմերիտական-երիտասարդական կառույց պատանիների ու աղջիկների համար լինի քաղաքացիական հասունացման, աշխատանքային ու քաղաքական կոփման, իրոք հարվածային աշխատանքի իսկական դպրոց։ Միջոցներ ձեռնարկել բարելավելու ուսանողական շինարարական ջոկատների աշխատանքը։

ՍՄԿԿ Կենտկոմը, ասված է որոշման մեջ, գտնում է, որ կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների համար առաջնահերթ կարևորության գործ պետք է լինի երիտասարդության գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակությունը։ Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի հիմնադրույթներով, պետք է այդ աշխատանքը կատարել լայն ճակատով, հաշվի առնելով երիտասարդության տարբեր խմբերի առանձնահատկությունը, կրթական մակարդակը, տեղյակությունը, հետաքրքրու-



թյուններն ու հակումները, ընդգրկել այն բոլոր ոլորտները, որտեղ կատարվում է երիտասարդի անձնավորության ձևավորումը։

Բարձրացնել կոմերիտմիության դաստիարակչական ջանքերի արդյունավետությունը, դրանք սերտորեն շաղկապել տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծման հետ։ Մասսայական պրոպագանդայի ու ագիտացիայի, քաղաքական լուսավորության, հակապրոպագանդիստական աշխատանքի բազմազան ձևերը ենթարկել մատաղ սերնդի կողմից արդի հասարակական զարգացման օրինաչափությունների մարքս-լենինյան խոր ըմբռնման, նրա մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ձևավորման հետ։ Պատանիներին ու աղջիկներին դաստիարակել եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդների հետ բարեկամության ու միասնության ոգով, կապիտալիստական և զարգացող պետությունների աշխատավորների ազատագրական պայքարի հետ համերաշխության ոգով։ Անհրաժեշտ է երիտասարդներին մանուկ հասակից պատվաստել հարգանք հայրենիքի փառապանծ պատմության, Սովետական Միության պետական գերբի ու հիմնի, երկրի պետական դրոշակի նկատմամբ, անսասան հավատ սոցիալիստական իդեալների արդարության նկատմամբ։ Ուժեղացնել պատանիների աթեիստական դաստիարակությունը, հաստատակամորեն կենցաղ դարձնել սոցիալիստական ծիսակատարությունները։

Զարգացած սոցիալիստական հասարակության երիտասարդին պետք է ներհատուկ լինեն գաղափարաբարոյական բարձր հատկանիշները, նախ և առաջ կոմունիստական համոզվածությունը, սոցիալական ակտիվությունը, աշխատասիրությունն ու ինքնակարգապահությունը, պատասխանատվությունը ընդհանուր գործի համար, բարեկրթությունն ու վեհանձնությունը ընտանիքի, կոլեկտիվի, հասարակության նկատմամբ, հարգալից վերաբերմունքը օրենքի նկատմամբ։ Նա պետք է ընդունակ լինի հաղթահարելու առաջացող դժվարությունները։

ՀամԼԿԵՄ Կենտկոմը, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինները, հասարակական կազմակերպությունները պետք է ամենասևեռուն ուշադրությունը նվիրեն երիտասարդության հանգստի կազմակերպումը բարելավելուն։ Պետք է մշակել և իրականացնել գիտատեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության, ֆիզկուլտուրայի ու սպորտի, երիտասարդական տուրիզմի լայն զարգացման, բնակության վայրում, հատկապես հանրակացարաններում երիտասարդության հետ կատարվող աշխատանքի բարելավման միջոցառումների համակարգը։ Կարևոր է, որ պատանիներն ու աղջիկներն իրենց ազատ ժամանակին չտարվեն դատարկ զվարճալիքներով, որ հանգստի բոլոր ձևերը նպաստեն նրանց գաղափարական հարստացմանը, ֆիզիկական զարգացմանը, կուլտուրական բարձր պահանջմունքների և գեղագիտական ճաշակի մշակմանը, նրանց հաղորդակցմանը հայրենական ու համաշխարհային մշակույթի լավագույն նվաճումներին։

Թույլ չտալ, որ ինքնագործ միավորումների քողի տակ երիտասարդության միջավայր թափանցեն ապաքաղաքականությունը, բարոյազրկությունը, արևմտյան նորաձևության կույր ընդօրինակումը։ Կոմերիտական աշխատողները պետք է անձամբ մասնակցեն երիտասարդության հանգստի կոլեկտիվ ձևերին, լինեն պատանիների ու աղջիկների հանգստի անմիջական կազմակերպիչներ։ Ամեն մի կոմերիտական կազմակերպության, ամեն մի կոմերիտականի պարտքն է ակտիվորեն պայքարել հասարակական կարգի ամրապնդման համար, դրան ձեռնամուխ լինել լրջորեն, չսահմանափակվելով հերթական կամպանիայի կամ արշավի հայտարարումով։

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությունը, ՍՍՀՄ պետկինոն, ՍՍՀՄ հրատպետկոմը, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմը, ստեղծագործական միությունները պետք է ՀամԼԿԵՄ Կենտկոմի հետ սերտ համագործակցությամբ ձգտեն ստեղծելու գրականության ու արվեստի գեղարվեստորեն բարձր այնպիսի ստեղծագործություններ, որոնք խորապես և վառ կերպով բացահայտեն սովետական մարդու հոգևոր, գաղափարաբարոյական ուժը, գովերգեն հասարակության բարօրության օգտին կատարվող աշխատանքը, հանուն հայրենիքի կատարվող

սխրանքը։ Այս գործում լայնորեն ներգրավել մշակույթի վարպետներին, ստեղծագործող երիտասարդ մտավորականության տաղանդավոր ներկայացուցիչներին։ Առանձնապես խստապահանջ լինել մանուկների ու դեռահասների համար նախատեսված կինոֆիլմերի ու հեռուստաֆիլմերի, երաժշտական ու գրական ստեղծագործությունների նկատմամբ։ Փակել գրականության ու արվեստի մեջ գաղափարազրկության ու տափակության թափանցման բոլոր ուղիները, հուսալի պատնեշ կանգնեցնել բուրժուական «մասսայական մշակույթի» ազդեցության առջև։

Կենտրոնական ու տեղական թերթերի ու ամսագրերի, ռադիոյի ու հեռուստատեսության, ՏԱՍՍ-ի, ԱՊՆ-ի խմբագրությունները պետք է բազմազան դարձնեն երիտասարդական թեմատիկան, բարձրացնեն տպագրվող և հաղորդվող նյութերի գաղափարական բովանդակությունը, պրոֆեսիոնալ մակարդակը։ Ավելի լրիվ լուսաբանել կոմերիտմիության կուսակցական ղեկավարման պրակտիկան և երիտասարդության հետ կատարվող աշխատանքը, ավելի վառ պատկերել կոմերիտական ղեկավարի կերպարը։ ՀամԼԿԵՄ Կենտկոմը, կուսակցական կոմիտեները պետք է միջոցներ ձեռնարկեն բարելավելու կոմերիտական մամուլի գործունեությունը։

Սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի, ԴՕՍԱԱՖ-ի կուսակցական և կոմերիտական կոմիտեներին, քաղմարմիններին, կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին առաջարկված է ուժեղացնել երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը, նրան բարձր պատասխանատվության զգացում պատվաստել սոցիալիստական հայրենիքի պաշտպանության պատվավոր պարտքի կատարման համար։ Պետք է երիտասարդության մեջ ավելի մեծ հաստատակամությամբ դաստիարակել սիրո զգացումը՝ հայրենիքի և ատելության զգացումը՝ նրա թշնամիների նկատմամբ, դաստիարակել քաղաքական, դասակարգային բարձր զգոնություն, սխրանք գործելու մշտական պատրաստակամություն։ Նախազորակոչային երիտասարդության հետ կատարվող աշխատանքում ավելի շատ ուշադրություն նվիրել նրա բարոյաքաղաքական, ռազմատեխնիկական և ֆիզիկական պատրաստությանը։ «Ռազմական գործը սովորել ինչպես հարկն է» լենինյան պատվիրանը պետք է դառնա բանակային կոմերիտմիության ամբողջ աշխատանքի առանցքը։ Ռազմահայրենասիրական աշխատանքում լայնորեն օգտագործել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 40-ամյակի նախապատրաստությունը։

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, տեղական կոմերիտական մարմիններին պարտավորեցրել է մշտապես իրենց տեսադաշտում պահել կոմերիտական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման հարցերը բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների կյանքում, յուրաքանչյուր ուսանողի և աշակերտի մեջ մարքս-լենինյան տեսության, կուսակցության քաղաքականության խոր ուսումնասիրման պահանջմունքի ձևավորման գործում, ընտրած մասնագիտությանը տիրապետելու, այնտեղ աշխատելու պատրաստակամության ձևավորման գործում, որտեղ հարկավոր է հայրենիքին։ Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումի որոշումներով, հաստատակամորեն և հետևողականորեն կատարել դպրոցական ռեֆորմի իրականացման հետ կապված աշխատանքը նրա բոլոր հիմնական ուղղություններում։ Կոմերիտմիությունը պետք է լինի մանկավարժական կոլեկտիվների հուսալի նեցուկը ուսումնադաստիարակչական պրոցեսի որակի, աշակերտների աշխատանքային, պրոֆեսիոնալ պատրաստության որակի բարձրացման գործում։ Հատուկ ուշադրություն դարձնել ձեռներեցության ու ինքնուրույնության և ստեղծագործական հիմունքների համակողմանի զարգացմանը աշակերտական կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում, ուժեղացնել արտադրական կոմերիտական կազմակերպությունների շեֆությունը դպրոցների, պրոֆտեխուսումնարանների, պիոներական դրուժինաների նկատմամբ։

Բարելավել Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազ-



մակերպության ղեկավարումը։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր ջոկատում կատարվի հետաքրքրական, գաղափարապես և հուզականորեն հագեցած պիոներական աշխատանք, պիոներների և հոկտեմբերիկների մեջ դրվեն ճիշտ կենսադիրքի ամուր հիմքերը։ Պիոներների հետ կատարվող աշխատանքի հարցերը քննարկել կուսակցական կազմակերպություններում։

Ընտանիքում, միջնակարգ ու բարձրագույն դպրոցում, աշխատավորական կոլեկտիվում, պիոներական ու կոմերիտական կազմակերպություններում ուսման և դաստիարակության ամբողջ մթնոլորտը պետք է տոգորված լինի կոլեկտիվիզմի, գաղափարայնության ոգով, խնամառության, իրամոլության, անտարբերության, այն բանի նկատմամբ անհանդուրժողության ոգով, ինչը ներհակ է մեր բարոյականությանը, աշխատավորական ապրելակերպին, ակտիվորեն նպաստի համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորմանը։ Կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները պետք է բարձրացնեն ծնողներին ներկայացվող պահանջկոտությունը երեխաների դաստիարակության համար։

ՍՄԿԿ Կենտկոմն ընդգծել է, որ կոմունիստական շինարարության մեջ ՀամԼԿԵՄ-ի դերի աճը պահանջում է կոմերիտմիության կազմակերպական-քաղաքական հետագա ամրապնդում, նրա բոլոր օղակների, հատկապես սկզբնական կոմերիտական կազմակերպությունների մարտունակության և ինքնուրույն գործունեության ուժեղացում։ Կոմերիտական աշխատանքը պետք է հագեցած լինի հասարակական մեծ բովանդակությամբ, այն ամենով, ինչով ապրում է մեր ժողովուրդը, պատանիներին ու աղջիկներին գրավի ռոմանտիկայով, ստեղծագործական պրպտումներով, օգտակար գործերով։

Կոմերիտմիության կոմիտեները պետք է իրենց ուշադրության կենտրոնում պահեն կոմերիտմիության աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների բարելավումը։ Մշտապես առաջնորդվել ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի այն ցուցումով, որ այդ աշխատանքի էությունն է մի կողմից բարձրացնել կազմակերպվածությունը, կարգուկանոնը, կարգապահությունը ՀամԼԿԵՄ-ի շարքերում, իսկ մյուս կողմից զարգացնել կոմերիտականների ձեռներեցությունն ու ակտիվությունը։ Կոմերիտական կազմակերպությունների գործունեության մեջ վճռականորեն արմատախիլ անել ձևամոլությունն ու կազմակերպամոլությունը, ցուցադրական, արտաքին էֆեկտի համար նախատեսված կամպանիաներով տարվելը։ Կոմերիտական աշխատողները կոչված են առավելագույն ժամանակ անցկացնել երիտասարդական կոլեկտիվներում, երիտասարդների հետ հաղորդակցվել ոչ միայն մասսայական միջոցառումների ժամանակ, այլև ամենօրյա կյանքում, խորամուխ լինել նրանց հոգսերին, հմտորեն զուգորդել պատանիների ու աղջիկների շրջանում կատարվող աշխատանքի մասսայական և անհատական ձևերը։ Ջանքերը կենտրոնացնել անմիջականորեն սկզբնական կազմակերպություններում և կոմերիտական խմբերում կատարվող աշխատանքի վրա, բարձրացնել կոմերիտական ժողովների դերը։ Հասնել այն բանին, որ ամեն մի կոմերիտական բարեխղճորեն կատարի հասարակական հանձնարարությունները, ակտիվորեն մասնակցի իր կազմակերպության գործերին։ Պատշաճ կարգ ու կանոն հաստատել ՀամԼԿԵՄ-ի անդամների հաշվառման գործում։ Բարձրացնել կոմերիտականի կոչումը, հպարտության և պատասխանատվության զգացում դաստիարակել երիտասարդ լենինյանների միությանը պատկանելու համար։ Խիստ անհատական մոտեցման հիման վրա ապահովել բանվոր, գյուղական, բանակային և սովորող երիտասարդության արժանավոր ներկայացուցիչների ընդունելությունը ՀամԼԿԵՄ-ի շարքերում, թույլ չտալ կոմերիտմիության շարքերի աճի փութացում։ Կոմերիտմիության մեջ ընդունվելը պետք է նշանակալից, անմոռաց իրադարձություն լինի յուրաքանչյուր երիտասարդի կյանքում։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, կոմերիտական կոմիտեներին՝ հատուկ ուշադրություն նվիրել կոմերիտական կադրերի հետ կատարվող աշխատանքին, այն դիտելով որպես կոմերիտմիության

գործունեության ուժեղացման հանգուցային օղակ։ ՍՄԿԿ Կենտկոմը ընդգծել է, որ այստեղ հսկայական նշանակություն ունի ամեն ինչ՝ գաղափարական համոզվածությունը և բարոյական անաղարտությունը, կազմակերպչական հմտությունը և երիտասարդության յուրահատուկ պահանջմունքներին զգայուն վերաբերվելու ընդունակությունը, պրոֆեսիոնալ հասունությունն ու երիտասարդության հատուկ ավյունը։ Անհրաժեշտ է վճռականորեն արմատախիլ անել կարիերիզմի և անտարբերության ամեն տեսակ դրսևորումները, գործի նկատմամբ անքննադատական վերաբերմունքը, ամեն կարգի չարաշահումները։

Կադրեր ընտրելիս և տեղաբաշխելիս ապահովել կոլեկտիվությունը, բարձր սկզբունքայնությունն ու պահանջկոտությունը։ Կոմերիտական մարմինների համար ավելի ակտիվորեն երաշխավորել բանվոր, կոլտնտեսական, երիտասարդ մասնագետ այն գործունյա կոմերիտականներին, որոնք աշխատավորական կոլեկտիվի դպրոց են անցել, հեղինակություն են վայելում երիտասարդների շրջանում։ Կոմերիտմիության մեջ ղեկավար աշխատանքի համար ավելի ակտիվորեն ներգրավել իգական սեռի երիտասարդներին, ձգտել կադրերի որոշակի կայունության։ Կուսակցական, սովետական և տնտեսական աշխատանքի համար ավելի համարձակորեն առաջ քաշել իրենց լավ դրսևորած կոմերիտական ակտիվիստներին։

Միջոցներ ձեռնարկել կատարելագործելու կոմերիտական մարմինների ապարատի կառուցվածքը, նախ և առաջ ի նկատի ունենալով ամրապնդել կոմերիտմիության քաղկոմներն ու շրջկոմները, հատկապես՝ գյուղական շրջկոմները։ Կարևոր նշանակություն տալով կոմերիտական կադրերի քաղաքական կրթությանը, անհրաժեշտ է համարված ընդլայնել այդպիսի կադրերի պատրաստումը բարձրագույն կուսակցական ուսումնական հաստատություններում և ՀամԼԿԵՄ Կենտկոմին առընթեր բարձրագույն կոմերիտական դպրոցում։

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիային և մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին, ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիային և ՀամԼԿԵՄ Կենտկոմին առընթեր բարձրագույն կոմերիտական դպրոցին հանձնարարված է բարելավել երիտասարդության կոմունիստական դաստիարակության հրատապ պրոբլեմների գիտական մշակումը։ Այդ աշխատանքում լայնորեն ներգրավել հասարակագետ գիտնականներին, կուսակցական ու կոմերիտական աշխատողներին։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները այսուհետև էլ կմեծացնեն ու կդաստիարակեն այնպիսի երիտասարդություն, որն ըստ արժանվույն շարունակի նոր հասարակության կառուցումը, գտնվի երկրի բախտի համար, սոցիալիզմի ու աշխարհի բախտի համար պատմական պատասխանատվության բարձրության վրա, կարողանա ոչ միայն յուրացնել ավագ սերունդների փորձը, այլև այն հարստացնել սեփական մեծագործություններով։

---



# ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ

**Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստր

ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության առանցքն է, տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրը։ «Մեր ողջ աշխատանքի վերջնական նպատակը սովետական ժողովրդի կյանքի բարելավումն է»,— ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ։ Այդ խնդրի լուծման նպատակով մշակվել և իրականացվում է երկրի պարենային ծրագիրը, որը թե՛ տնտեսական և թե քաղաքական առումով առաջիկա տարիների կենտրոնական պրոբլեմն է։

Պարենային ծրագրի իրականացման անհրաժեշտ պայմանը զարգացած և արդյունավետ գործող ագրոարդյունաբերական համալիրն է, միմյանց հետ սերտորեն շաղկապված դրա բոլոր օղակների ամբողջ գործունեության ենթարկումն ընդհանուր վերջնական նպատակին՝ բարձրորակ սննդամթերքների արտադրությանն ու դրանք սպառողին հասցնելուն։

Ինչպես նշվեց ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմներին նվիրված հանրապետական խորհրդակցությունում, պարենային ծրագրի առաջադրանքների կատարման գործում դրական տեղաշարժեր կան վերամշակող արդյունաբերության ճյուղերում։ 1983 թ. և ընթացիկ տարվա չորս ամիսներին պլանից ավելի արտադրվել և իրացվել է 50 մլն ռուբլու արտադրանք։ Այդ հաջողության մեջ իրենց արժանի բաժինն ունեն սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները, որոնք թողարկում են շուրջ մեկ մլրդ ռուբլու պարենային ամենաբազմազան ապրանքներ։

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության այդ կարևոր հատվածը ակտիվորեն մասնակցում է պարենային ապրանքների արտադրության ասպարեզում աշխատանքի միութենական բաժանմանը։ Հայկական ՍՍՀ-ն թողարկում է երկրի կոնյակի արտադրության 11 տոկոսը, հանքային ջրերի 13 տոկոսը, գինու, «էքստրա» աղի և խորդենու յուղի 3—4 տոկոսը։ Մշտական և մեծ պահանջարկ ունի հայկական կոնյակը համաշխարհային շուկայում։ Նրա տարբեր տեսակները միջազգային մրցանակաբաշխություններում և ցուցահանդեսներում նվաճել են 58 ոսկե և արծաթե մեդալներ։ Մեծ քանակությամբ հայկական կոնյակ է արտահանվում սոցիալիստական ընկերակցության բոլոր երկրները, զարգացող շատ երկրներ, ինչպես նաև Ճապոնիա, ԳՖՀ, Կանադա, Անգլիա, Նոր Զելանդիա, ԱՄՆ։ Հայկական «Արարատ» արդյունաբերական միավորման Մոսկվայի և Լենինգրադի գործարանները զգալի քանակությամբ կոնյակ են արտահանում Սկանդինավյան երկրներ։

Հանրապետությունում դինամիկ կերպով զարգանում է սննդարդյունաբերությունը, աճում է արտադրությունը, ընդլայնվում տեսականին։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրականացման բնագավառում ձեռք բերված ցուցանիշները վկայում են, որ տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները

հաջողությամբ կատարվում են։ Անցած երեք տարվա գումարով հանրապետության սննդարդյունաբերության ձեռնարկությունների արտադրության ծավալն աճեց 13,8 տոկոսով, հնգամյակի կոնտրոլ թվերով նախատեսված 5,7 տոկոսի փոխարեն։ Պլանից ավելի թողարկվել է 153,3 մլն ռուբլու ապրանքային արտադրանք։

Մեր լավագույն ձեռնարկություններն աշխատում են արդյունավետ և որակով։ 1983 թ. արդյունքներով, սոցիալիստական մրցության հաղթողների թվում են Երևանի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատը և Հոկտեմբերյանի եթերայուղային սովխոզ-գործարանը, որոնք արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մրցությունում հաղթող է ճանաչվել և ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին է արժանացել Երասխի հանքային ջրերի գործարանը։

Համամիութենական և հանրապետական սոցիալիստական մրցության առաջավորների համբավ ունեն նաև Երևանի արևելյան սննդամթերքների արտադրության ֆաբրիկան, Ավանի աղի և Երևանի գինու կոմբինատները, Երևանի կոնյակի, Լենինգրադի և Մոսկվայի գինու-կոնյակի գործարանները, Երևանի և Հրազդանի հացի կոմբինատները, Աբովյանի և Կամոյի հացի գործարանները։

Պետական առաջադրանքների, կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների իրականացման գործում արժանի ավանդ են ներդնում արտադրության առաջավորները։ Նրանց ձեռք բերած արդյունքները այն բարձր բնագծերն են, որոնց ձգտում են հասնել մյուսները։ Ինչպես ասում են, դրանք մեր փարոսներն են։

Արտադրության հմուտ կազմակերպիչների ու նորարարների մեծ համբավ են ձեռք բերել Երասխի հանքային ջրերի լցման արտադրամասի բրիգադավար-կարգավորող Հրահատ Հովսեփյանը, Երևանի կոնյակի գործարանի անվանի մասնագետ, կոնյակի-սպիրտի և կոնյակների վերամշակող Արամ Մկրտչյանը, Երևանի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատի էներգակարգավորող Հովիկ Օսյանը, Ավանի աղի կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի փաթեթավորող ավտոմատների կարգավորող Վաղինակ Ներսեսյանը, «Հայհացարդ» արդյունաբերական միավորման գլխավոր ինժեներ Էմմա Առուստամովան և շատ ուրիշներ։ Մինիստրության կոլեգիայի, ձեռնարկությունների ադմինիստրացիայի, կուսակցական, հասարակական կազմակերպությունների ձեռնարկած տեխնիկատնտեսական և կազմակերպական միջոցների շնորհիվ երբեմնի ետ մնացող մի շարք ձեռնարկություններ բռնել են վերելքի ուղին։

Կարգավորվում է վիճակը «Հայհանքջրեր» արտադրամիավորման ձեռնարկություններում, որոնք երկար տարիներ չէին կատարում պետական առաջադրանքները։ Այժմ միավորումը հաղթահարում է ետ մնալը, պակասել են արտադրանքի որակի վերաբերյալ բողոքները, կրճատվել են անարտադրողական ծախսերը։ Մինիստրությունը, ելնելով մեծ ծավալի պահանջարկից, գործնական միջոցներ է ձեռնարկում հանքային ջրերի արտադրությունն ընդլայնելու նպատակով։ Նկատի ունենալով զովացուցիչ ըմպելիքների մեծ պահանջարկը, աշխատանքներ են կատարվում Երևանում կազմակերպելու «պեպսի-կոլայի» և «ֆանտայի» արտադրությունը։ Եկող տարվա սկզբներին ոչ ալկոհոլային խմիչքների գործարանում շահագործման կհանձնվի «պեպսի-կոլայի» արտադրության ավտոմատ գիծը՝ ժամում 26 հազար շիշ կարողությամբ։

Մշտապես կատարելագործվում է հացաթխման տեխնոլոգիան, կրկնակի ավելացել է մանրահատ հացի արտադրությունը։ Ֆերմենտների, մոդիֆիկացված կրախմալի, մակերեսային ակտիվ նյութերի, կաթնասիճուկի կիրառումը նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը և հացի ռեսուրսների տնտեսմանը։ Այդ ամենի շնորհիվ զգալիորեն կրճատվել է խանութներից գործարան վերադարձվող հացի քանակությունը։ Դրա հետ մեկտեղ արմատախիլ չեն արվել ցածրորակ հացի արտադրության փաստերը։ Խոտանի պատճառները տարբեր են, բայց դրանք նախ և առաջ արտադրության տեխնոլոգիական ռեժիմի խախտումներն են, բոլոր գործողությունների նկատմամբ անհրաժեշտ վերահսկողության բացակայությունը՝ սկսած հացը թխելուց մինչև սպառողին հասցնելը։ Մեր խնդիրն է խպառ վերացնել հացի արտադրության բնագավառում առկա թերությունները և առևտրական կազմակերպությունների հետ մեկտեղ գործնական միջոցներ ձեռնարկել հացի ընդունման, պահպանման և վաճառքի համար նորմալ պայմանների ստեղծման նպատակով։



Առանձնապես հարկ է կանգ առնել լավաշի պրոբլեմի վրա։ Հայտնի է, որ հացի այդ ազգային տեսակը մեծ պահանջարկ ունի բնակչության շրջանում։ Պետք է ասել, որ իրականացված միջոցառումների շնորհիվ լավաշի արտադրությունն աճում է. 1983 թ. արտադրվել է 7,8 հազար տոննա՝ նախորդ տարվա համեմատությամբ 1.000 տոննայով ավելի։ Մոսկվայի ճյուղային գիտահետազոտական ինստիտուտի և մեր մինիստրության մասնագետները ստեղծել են լավաշի թխման մեքենայացված վառարանի նոր մոդել։ Այդպիսի 38 վառարաններ արդեն տեղադրվել և գործում են։ Տարեկան պատրաստվում է 10 վառարան։ Առայժմ չի լուծված խմորի պատրաստուկի պրոցեսի մեքենայացման հարցը, որի վրա աշխատում են համակարգի մասնագետները։

Ակտիվ աշխատանքներ են կատարվում խնայողության ռեժիմի խստիվ կիրառման նպատակով։ Մենք ջանքեր ենք գործադրում ժողովրդատնտեսական այնպիսի կարևորագույն խնդրի լուծման համար, ինչպիսին է անթափոն արտադրության կազմակերպումը։ Այդ նպատակն են հետապնդում երկրորդային նյութական ռեսուրսները արտադրության մեջ ներդնելու և ռացիոնալ օգտագործելու աշխատանքները։ Արդեն լրիվ ավարտվել է երկրորդային ռեսուրսների հաշվառումը գինեգործության, գարեջրի, հացի, հրուշակեղենի, շաքարի, կիտրոնաթթվի, ձեթի, օճառի, ծխախոտի, ինչպես նաև եթերայուղային արտադրություններում։ Երկրորդային նյութական ռեսուրսներից պատրաստվում են կիտրոնի և գինեքարի թթուներ, խորդենու և խաղողի կնճեռից՝ կերալյուր և սպիրտահումք։

Մշակված է խաղողի մնացուկների սիլոսացման եղանակը, որի իրագործմամբ զգալիորեն կհամալրվեն անասնակերի ռեսուրսները։ Անցած տարի արդեն ստացվել է տասը տոննա այդպիսի սիլոս։ Մեկ այլ նորույթ. մշակվել է խաղողի կորիզից փոշի ստանալու տեխնոլոգիան։ Նոր արտադրատեսակը կիրառություն ունի հրուշակեղենի արտադրության մեջ։ Այս միջոցառումների շնորհիվ տնտեսվում են մեծ քանակությամբ նյութական ռեսուրսներ։ Միայն 1983 թ. հումքի և ռեսուրսների խնայման տնտեսական արդյունավետությունը կազմեց ավելի քան 2 մլն ռուբլի։

Արտադրության արդյունավետության և որակի հետագա բարձրացմանը խոչընդոտում են մի շարք չլուծված պրոբլեմներ։ Դրանցից է գինու արտադրության համար խաղողի վերամշակման հզորությունների ավելացման հարցը։ Առաջիկա հնգամյակում 400—450 հազար տոննա խաղողի վերամշակման համար անհրաժեշտ հզորությունների ստեղծման հարցը պետք է լուծվի արդեն այժմ, այլապես արտադրության այդ բնագավառը որոշ ժամանակ անց լուրջ դժվարությունների կհանդիպի։ Չի լուծված նաև կոնյակի սպիրտի պահպանման հարցը։ Հայտնի է, որ բարձրորակ տեսակավոր կոնյակները ստացվում են երկար տարիներ կաղնու տակառներում պահպանված սպիրտից։ Ընդ որում այդ տակառները կոնյակի սպիրտի համար ոչ միայն տարողություններ են, այլև տեխնոլոգիական հումք։ Մինչդեռ այսօր զգալի անհամապատասխանություն է գոյացել կաղնու տակառների նկատմամբ արտադրության պահանջարկի և դրանց առկա քանակության միջև։ Դրա հետևանքով հանրապետությունում կոնյակի սպիրտի միայն 60 տոկոսն է պահպանվում պահանջվող տիպի տակառներում։ Մի մասը հնացվում է մետաղական էմալապատ տարողությունների մեջ, որտեղ դրվում են կաղնու փայտից պատրաստված տախտակներ։ Մի մասն էլ, կարողություններ չլինելու պատճառով, պահպանվում է առանց հասունացման։

«Արարատ» միավորումում տակառների սեփական արտադրության կազմակերպումը և Այգեվանի կոնյակի գործարանի կառուցումը որոշ չափով թեթևացնում են վիճակը, բայց հարցը վերջնականապես չի լուծվում։ Միջոցներ

են ձեռնարկվում ավելացնելու տակառների քանակը, օրակարգի հարց է նոր գործարանների և պահեստարանների կառուցումը։

Աշխատանքի մեջ թերացումներ կան ոչ միայն արտադրության ոլորտում, այլև սպասարկող առանձին տեղամասերում։ Ճիշտ է, 1983 թ. զգալի չափով՝ 1,3 ժամով կրճատվել են վագոնների պարապուրդները, նախորդ տարվա համեմատությամբ նվազել է տուգանքների գումարը, սակայն դրանք դեռևս մեծ չափերի են հասնում։ Վիճակը վատ է հատկապես «Սևան» հանքային ջրերի գործարանում և ձեթ-օճառի կոմբինատում, որոնց հասցեին իրավացի քննադատական խոսք ասվեց ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. մարտյան պլենումում։ Վագոնների պարապուրդները մեծ չափերի են հասնում նաև ծխախոտի և աղի կոմբինատներում, «Բջնի» հանքային ջրերի, Արտաշատի գինու գործարաններում։ Վագոնների պարապուրդների կրճատման հիմնական միջոցը բեռնման-բեռնաթափման աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումն է, որը շատ ձեռնարկություններում իրականացվում է արագ թափով։ Միաժամանակ աշխատանքներ են կատարվում երկաթգծի մերձուղիների, ներգործարանային գծերի, գործնական բակերի, հրապարակների կարգավորման նպատակով։ Այդ առումով կարևոր է նաև երկաթուղու ծառայության հետ ձեռնարկությունների գործողությունների սերտ համապատասխանեցումը, վագոնների պատվերների և դրանց կատարման հստակ համաձայնեցումը։

Ինչպես և նախորդ տարում, վերամշակող արդյունաբերության 1984 թ. պլանները ձևավորվեցին խիստ անբարենպաստ պայմաններում։ Խաղողի մթերման պլանային մակարդակի նվազեցման հետևանքով, օրինակ, «Արարատ» միավորման 1984 թ. համախառն արտադրանքի պլանը մոտ 35 մլն ռուբլով պակաս է 1983 թ. փաստացի կատարողականից։ Եվ դա այն դեպքում, երբ այդ նույն չափով էլ նվազեցված էր 1983 թ. պլանը՝ նախորդ տարվա փաստացի կատարողականի համեմատ։ Նկատի ունենալով, որ «Արարատ» միավորումը տալիս է մինիստրության համախառն արտադրանքի կեսից ավելին, արտադրության նվազեցում թույլ չտալու համար նախատեսված են մյուս ճյուղերի աճի համեմատաբար բարձր տեմպեր, նպատակ ունենալով ապահովել հնգամյակի կոնտրոլ թվերով նախատեսված բնագծերի նվաճումը։ Դրա համար մոբիլիզացվում և օգտագործվում են ներքին հնարավորությունները, բարձրացվում կոլեկտիվների աշխատանքային ակտիվությունը։

Դժվարություններ կան գարեջրի, ոչ ալկոհոլային խմիչքների, օղու և գինու իրացման գործում։ Այդ հարցի լուծումը պայմանավորված է առևտրական կազմակերպությունների ճկուն աշխատանքով, նրանց և արտադրող ձեռնարկությունների սերտ համագործակցությամբ։

Ճյուղի համակարգում կապիտալ շինարարության, արտադրության վերակառուցման և վերազինման զգալի աշխատանքներ են կատարվում։ Անցած տարի շահագործման է հանձնվել Այգեվանի կոնյակի գործարանի երրորդ արտադրական մասնաշենքը՝ 200 հազար դեկալիտր սպիրտի պահպանման և մշակման հզորությամբ։ Վերակառուցվել է Ջերմուկի հանքային ջրերի գործարանը, որի արտադրական հզորությունը մեծացվեց 38 մլն շշով՝ հասցվելով մինչև 78 միլիոնի։ Նոր արտադրամասեր են կառուցվել Երևանի ձեթ-օճառի կոմբինատում և այլն։ Ընդհանուր առմամբ գործարկվել են շուրջ 19 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր։

Կապիտալ շինարարության մեծ ծավալի՝ շուրջ 20 մլն ռուբլու, աշխատանքներ են իրականացվում ընթացիկ տարում։ Շահագործման կհանձնվի Դիլիջանի հացի գործարանը՝ օրական 45 տոննա հացաբուլկեղենի և երկու տոննա հրուշակեղենի հզորությամբ։ Շարունակվում է Էջմիածնի հացի գործարանի, Մոսկվայի գինու-կոնյակի գործարանի շինարարությունը։ Վերակառուցվում և վերազինվում են գործող ձեռնարկությունները։ Ձեթ-օճառի կոմբինատում վերակառուցվել է էքստրակցիոն արտադրությունը, տեղադրվել են նոր սարքավորումներ, փոխարինվել են հները, գործարկվել է ձեռքի օճառի արտադրության նոր հոսքային գիծը։ Ավանի աղի կոմբինատում սկսվել են «էքստրա» աղի արտադրության վերակառուցման և ընդլայնման աշխատանքները, որի շնորհիվ հաջորդ հնգամյակում աղի այդ տեսակի արտադրությունը



կկրկնապատկվի և կհասնի 100 հազար տոննայի։ Շահագործման է հանձնվել 0,33 լիտր շշերով գարեջրի լցման ավտոմատացված գիծը Աբովյանի գարեջրի գործարանում։ Ավտոմատ նոր գծեր են տեղադրվել ծխախոտի կոմբինատում և հանքային ջրերի ձեռնարկություններում։

Միաժամանակ հարկ է նշել, որ սննդարդյունաբերության համակարգում իրականացվող կապիտալ շինարարության ոլորտում առկա են բազմաթիվ չլուծված պրոբլեմներ։ Չնայած ձեռնարկված միջոցներին, չեն կրճատվում անավարտ շինարարության ծավալները, խախտվում են թողարկվող օբյեկտների շահագործման ժամկետները։ Շինմոնտաժային աշխատանքների 1983 թ. պլանները թերակատարվել են 2,7 մլն ռուբլով։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը չի ապահովել Դիլիջանի հացի գործարանի և հրուշակեղենի արտադրամասի ու Աբովյանի գարեջրի գործարանի բնակելի տան շինմոնտաժային աշխատանքների պլանների կատարումը։ Գյուղական շինարարության մինիստրությունը թերակատարել է Էջմիածնի հացի գործարանի և խորդենու սովխոզ-գործարանի գյուղատնտեսական տեխնիկայի սպասարկման արտադրական բազայի կառուցման առաջադրանքները։

Սննդարդյունաբերության մինիստրության շինարարական վերանորոգման տրեստը չապահովեց Երևանի ոչ ալկոհոլային խմիչքների գործարանի օժանդակ կորպուսի, Երասխի հանքային ջրերի կոյուղու կոլեկտորի, Արտաշատի գինու գործարանի և Երևանի գինու կոմբինատի կաթսայատների կառուցման պլանների կատարումը։ Շինարարներն իրենց թերացումները պատճառաբանում են նախագծերի ոչ լիարժեքությամբ, սարքավորումների ստացման ժամկետների խախտումներով և այլն։ Անշուշտ, նախագծման-նախահաշվային փաստաթղթերի ցածր որակը, հաճախ նաև սխալները կապիտալ շինարարության և վերանորոգման աշխատանքների ձգձգման լուրջ պատճառ են, սակայն չպետք է անտեսել նաև բուն շինարարական պրոցեսում առկա էական բացթողումները։

Համակարգի առջև ծառացած պրոբլեմների լուծման վրա ազդում են «արտաքին» կարգի նաև այլ գործոններ։ Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար ճյուղի ձեռնարկություններին անհրաժեշտ են այնպիսի հոսքային գծեր և սարքավորումների կոմպլեկտներ, որոնք ապահովեն աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացումը, գյուղատնտեսական մթերքների հիմնավոր վերամշակումն ու դրանց կորուստների կրճատումը, սնդամթերքի որակի բարձրացումն ու տեսականու ընդլայնումը։ Ճյուղի ձեռնարկություններին անհրաժեշտ են բուսական յուղի անընդմեջ զտման բարձր արտադրողական կայանքներ, հացի մասսայական տեսակների արտադրության, փոքր քանակությամբ չափակշռված հացաբուլկեղենի թողարկման հոսքային մեքենայացված գծեր։ Մինչդեռ, ինչպես նշվեց ագրոարդյունաբերական համալիրի հարցերի շուրջը Մոսկվայում հրավիրված տնտեսագիտական խորհրդակցությունում, մեքենաշինական ձեռնարկություններում դանդաղ է յուրացվում նոր տեխնիկայի շատ նոր նմուշների արտադրությունը։

Հնգամյակի անցած տարիներին սննդարդյունաբերության հումքային բազայի ամրապնդման, ստացված բերքը տեղում և կոմպլեքսայնորեն վերամշակելու գործում առավել բարձրացել է ճյուղի համակարգի գյուղատնտեսական ձեռնարկությունների դերը։ Հաղթահարելով բնակլիմայական անբարենպաստ պայմանները, այդ ձեռնարկությունների կոլեկտիվները միայն 1983 թվականին կրկնակի չափով գերազանցեցին պետությանը բանջարեղեն և հացահատիկ վաճառելու առաջադրանքները։ Գերակատարվեցին պտղի, խորդենու, կանաչ զանգվածի և բոստանային կուլտուրաների վաճառքի պլանները։ Առանձնապես ակնառու են Հոկտեմբերյանի եթերայուղային և Արարատի շրջանի Կիրովի անվան սովխոզ-գործարանների հաջողությունները։ Այդ կոլեկտիվները զգալիորեն գերակատարեցին հողագործության կուլտուրաների բերքատվության և պետվաճառքի պլանները։ Յուրաքանչյուր հեկտարից հավաքելով 292 ցենտներ խորդենու կանաչ զանգված, հոկտեմբերյանցիները գերազանցեցին առաջադրանքները։ 1983 թվականին սովխոզ-գործարանները պլանավորվածից կրկնակի անգամ ավելի խաղողի և պտղատու նոր այգիներ հիմնեցին։

Հաջողությունները շոշափելի են նաև անասնապահական մթերքների արտադրության բնագավառում։ Գերակատարված են մսի, կաթի, ձվի, բրդի վաճառքի պլանները։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը սովխոզ-գործարաններում կազմեց 2.933 կգ, որը պլանից ավելի է 450 կգ-ով։ Իրացված անասունի միջին քաշը 345 կգ է, այն ավելի բարձր է Հոկտեմբերյանի եթերայուղային և Կիրովի անվան սովխոզ-գործարաններում՝ շուրջ 400 կգ։

Գյուղատնտեսական մեր ձեռնարկություններում, այնուամենայնիվ, դեռևս լիովին չեն օգտագործվում արտադրության աճի և արդյունավետության բարձրացման ներքին ռեզերվներն ու հնարավորությունները։ Դա հատկապես վերաբերում է այգիների լիարժեքության ապահովմանը։ «Արարատ» միավորման սովխոզ-գործարաններում անբավարար են զբաղվում մաքրասորտ, գինեգործության համար արժեքավոր սորտերի խաղողի մեծ, զանգվածային այգիների ստեղծման գործով։

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ առկա թերությունների մասին ՀԿԿ Կենտկոմի վերջին պլենումներում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի արած քննադատական դիտողությունները լիովին վերաբերում են նաև սննդարդյունաբերության ձեռնարկություններին ու կազմակերպություններին։ Այդ թերությունների վերացումը պայմանավորված է նրանով, թե որքանով կկարողանանք բարձրացնել աշխատանքային, արտադրական, պլանային և պետական կարգապահությունը յուրաքանչյուր ձեռնարկությունում։ Այդ նպատակով մինիստրության կոլեգիայի և կուսակցական կազմակերպության վերջին տարիներին իրականացրած միջոցառումների շնորհիվ համակարգի ձեռնարկություններում զգալիորեն բարձրացել է կարգապահությունը և յուրաքանչյուր ղեկավարի անձնական պատասխանատվությունն իրեն վստահված տեղամասի գործերի վիճակի համար։

Որոշակի աշխատանք է կատարվել պետական սեփականության պահպանության, կորուստների նվազեցման, հումքի և նյութերի խնայողության, ծախսերի կրճատման, նորմաների ճշտման, պահեստային տնտեսությունների կարգավորման նպատակով։ Այդ հարցերը մշտապես գտնվում են մինիստրության կոլեգիայի ուշադրության կենտրոնում։ Սոցիալիստական սեփականության պահպանությունն ամրապնդելու նպատակով մշակված միջոցառումների կատարման նկատմամբ վերահսկողություն իրականացնող և աշխատանքները կոորդինացնող՝ մինիստրության մշտական գործող հանձնաժողովի նիստերում լսվում և քննարկվում են պետական ունեցվածքի պահպանմանը վերաբերող բազմաթիվ հարցեր։ Ուժեղացել է ներգերատեսչական վերահսկողության ազդեցությունը ձեռնարկությունների ֆինանսատնտեսական գործունեության նկատմամբ։ Վերստուգման նյութերի հիման վրա կարգապահական խիստ պատասխանատվության են ենթարկվել մի շարք ղեկավար և նյութական պատասխանատու անձինք, առանձին նյութեր ուղարկվել են դատաքննչական մարմիններին՝ մեղավորներին պատասխանատվության ենթարկելու և պետությանը պատճառած վնասը վերականգնելու համար։ Կատարվել է մի շարք կատեգորիայի աշխատողների և նյութական պատասխանատու անձանց ատեստավորում, իրենց չարդարացնող աշխատողները ազատվել են աշխատանքից։

Մենք ձգտում ենք ճյուղի ղեկավարմանը տալ դինամիկ և նպատակասլաց բնույթ, ամրապնդել և բազմապատկել ամեն նորը, առաջավորը, բոլոր ամենայնի զարգացնել արտադրական կոլեկտիվների ստեղծագործությունն ու ձեռներեցությունը, ամրապնդել կարգուկանոնը։ Սակայն, ինչպես նշել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— ձեռք բերածը մեծ աշխատանքի միայն սկիզբն է, և մեզ սպասող գործերը, ընդ որում անհետաձգելի, շատ-շատ են։ Մենք կարող ենք առաջ գնալ ավելի արագ։ Կարող ենք և պետք է անհամեմատ եռանդագին լուծենք էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման պրոբլեմները։ Միայն այդ հիման վրա է հնարավոր իրականացնել ժողովրդի նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։

Դա կուսակցության ծրագրային պահանջն է, որի անթերի կենսագործումը մեր անմիջական խնդիրն է, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի ու ձեռնարկությունների առաջնագույն պարտքը։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման պրոցեսում արդի գիտատեխնիկական առաջընթացի վճռական դերի հետ մեկտեղ կարևորվում է հասարակության աշխատանքային պոտենցիալի արդյունավետ օգտագործման պրոբլեմը։ Աշխատանքային ռեսուրսների, մասնավորապես երիտասարդ աշխատուժի, արդյունավետ օգտագործումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա վերելքի գլխավոր պայմաններից է։ «Այն բանից,— նշում է ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— թե մենք ինչպես կկարողանանք մոբիլիզացնել ժողովրդի հոգևոր եռանդը, բարձրացնել նրա աշխատանքային ու սոցիալական ակտիվությունը, մեծապես կախված են հնգամյա պլանների կատարումը, մեր առաջընթացի տեմպերը և իհարկե՝ երկրի պաշտպանունակության ամրապնդումը»։

Զարգացման տարբեր փուլերում երկրի ամեն մի տնտեսական շրջանի բնորոշ է եղել երիտասարդ աշխատանքային ռեսուրսների բարենպաստ կամ անբարենպաստ հաշվեկշիռը, որը տվյալ տնտեսական շրջանի զարգացման ուղղությունն ընտրելու վճռական գործոններից մեկն է։ Տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների տարիներին Հայկական ՍՍՀ բնակչության, մասնավորապես աշխատանքային տարիք մուտք գործող երիտասարդության արագ աճը կանխորոշեց աշխատանքային ռեսուրսներով հանրապետության ապահովվածության բարձր մակարդակը։ Մինչդեռ երկրի շատ տնտեսական շրջաններում նվազում էր այդ կատեգորիայի բնակչության թիվը։ Ելնելով դրանից, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման վերջին երկու հնգամյա պլաններում, զուգակցվում են տնտեսական շրջանների տեղական առանձնահատկություններն ու երկրի տնտեսական զարգացման ընդհանուր օրինաչափությունները։ Խոսքը տվյալ դեպքում ոչ միայն ռեգիոնալ և ճյուղային առումով միջոցների այնպիսի բաշխման մասին է, որով նպաստավոր պայմաններ ստեղծվեն իրար փոխարինող այն ճյուղերի առավել արագ զարգացման համար, որոնք քիչ ծախսումներով խոստանում են ապահովել բարձր արդյունավետություն, այլ այն մասին է, որ համապետական պլանավորման հետ ռեգիոնալ պլանավորման խնդիրները զուգակցելիս, տնտեսական շրջանների էկոնոմիկայի զարգացման ուղղություններն ընտրելիս և տեմպերը կանխորոշելիս պետք է ելնել դրանց բնական պայմանների, բնական ու աշխատանքային ռեսուրսների առկայության և օգտագործման հնարավորությունների փոխկապակցումից։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում ուղղակի նշվում է. «Միջոցներ ձեռնարկել հասնելու եղած և նոր ստեղծվող աշխատատեղերի հավասարակշռվածությանը աշխատանքային ռեսուրսների հետ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 227)։

ՍՍՀՄ միասնական էկոնոմիկայի առկայությունը բնավ չի բացառում, որ ամեն մի տնտեսական շրջան յուրաքանչյուր կոնկրետ ժամանակաշրջանում բնութագրվի բնակչության աճի որոշակի տեմպերով և աշխատանքային ռեսուրսների կազմավորման ուրույն աղբյուրներով։ Դա նրանց բնակչության պատմական զարգացման օրինաչափությունների, սոցիալ-տնտեսական պայմանների և արտադրաուժերի զարգացման մակարդակի արտահայտությունն է։ Այդ առանձնահատկությունների հետևանքով ՍՍՀՄ առանձին տնտեսական շրջաններ տարբերվում են ոչ միայն բնակչության աճի տեմպերով, այլև հանրային տնտեսությունը չհանրայնացված ոլորտում զբաղված աշխատանքային ռեսուրսներով համալրելու ռեզերվներով։ Ահա թե ինչու երկրի մի մասում աշխատանքային ռեսուրսների պակաս է զգացվում, իսկ որոշ տնտեսական շրջաններ ունեն այդպիսի ռեսուրսների բարենպաստ հաշվեկշիռ։ Ելնելով դրանից և երկրում ստեղծված գիտատեխնիկական մեծ պոտենցիալից, խնդիր է դրվում գերազանցապես ուշադրություն դարձնել հասարակական արտադրության ինտենսիվ զարգացմանը։ Օրինակ, տասնմեկերորդ հնգամյակում ազգային եկամտի հավելաճի 85—90 տոկոսը ձեռք կբերվի ինտենսիվ գործոնի հաշվին։ Անդրադառնալով տասներկուերորդ հնգամյակի խնդիրներին, ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ուղղակի նշեց, որ նոր հնգամյակը նախ և առաջ պետք է դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ։

Աշխատանքային ռեսուրսների ակտիվ հաշվեկշիռ ունեցող հանրապետությունները էկոնոմիկայի ինտենսիվ զարգացումը կզուգակցեն նոր աշխատատեղերի ստեղծման հետ, երբ նորագույն տեխնիկայի արմատավորման բազայի վրա լայն կիրառում կունենա որակյալ աշխատանքի օգտագործումը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՀ աշխատանքային ռեսուրսների վերարտադրության տեմպերը մոտ ապագայում ևս կգերազանցեն ինչպես եվրոպական մասի հանրապետությունների, այնպես էլ ամբողջ երկրի աշխատանքային ռեսուրսների վերարտադրության տեմպերին։ Երկրի բնակչությունը 1959—1982 թթ. ավելացել է 29,8 տոկոսով։ Հայկական ՍՍՀ-ում այդ աճը կազմել է 82,5 տոկոս։ Սակայն դա բնավ չի նշանակում, որ հանրապետությունը այսուհետ ևս կունենա ռեսուրսների այնպիսի ակտիվ հաշվեկշիռ, ինչպես նախորդ երկու հնգամյակներում, քանի որ գալիք տասնամյակում (1986—1995 թթ.) աշխատանքային տարիք մուտք կգործեն տարեկան 15—20 հազարով ավելի քիչ պատանիներ ու աղջիկներ, քան նախորդ տասնամյակում (1976—1985 թթ.)։

Անցյալ տասնամյակում, աշխատանքային տարիք մուտք գործող երիտասարդության մեծ թվի հետ միասին, կենսաթոշակային տարիք թևակոխեցին քիչ մարդիկ, քանի որ կենսաթոշակի էր անցնում Հայրենական մեծ պատերազմին մասնակցած սերունդը։ Այդ պրոցեսը շարունակվում է նաև տասնմեկերորդ հնգամյակում։ Դա նշանակում է, որ ընթացիկ հնգամյակում հանրային արտադրություն մուտք գործող երիտասարդության մեծ թիվը ուղեկցվում է քիչ ազատվող աշխատատեղերով։ Սակայն ընթացիկ հնգամյակի վերջերից սկսած աշխատանքային տարիք մուտք գործող երիտասարդության նվազումը կուղեկցվի թոշակի անցնող բնակչության հաշվին ավելի շատ ազատվող աշխատատեղերով։ Հետևապես, հակադիր ուղղությամբ գործող այդ երկու միտումների փոխգործողության հետևանքով նոր աշխատատեղեր ստեղծելու խնդիրն այնքան սուր բնույթ չի կրի, ինչպես մինչև այժմ։ Նման իրավիճակը, սակայն, դեռևս հիմք չի տալիս եզրակացնելու, որ հանրապետությունում նոր աշխատատեղեր ստեղծելու մինչև այժմ իրականացվող քաղաքականությունը կորցնում է իր հրատապությունը։

Մոտ ապագայում հանրապետությունում լրացուցիչ աշխատատեղեր ստեղծելու անհրաժեշտությունը թելադրվում է ոչ միայն աշխատանքային տարիք մուտք գործող երիտասարդության թվաքանակով, այլև ավանդական արտադրություններից ցածր որակավորում ունեցողների և չմեքենայացված աշխատանքներում զբաղվածների ինտենսիվ արտամղումով, տնային տնտեսությու-



նից դուրս եկող բնակչությանը հանրային տնտեսության մեջ ընդգրկելով, աշխատունակ բնակչության կազմում առավել ակտիվ տարիքի (24—45) տեսակարար կշռի բարձրացմամբ, օգտակար և մշակելի հողատարածությունների ընդարձակման սահմանափակությամբ, բնակչության բարձր և անընդհատ ավելացող խտությամբ, ջրային, էներգետիկ, հանքահումքային ռեսուրսների ոչ մեծ պոտենցիալով և այլն։

Սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային ուղղություններն ընտրելիս կարևոր է հաշվի առնել երիտասարդության աշխատանքային-արտադրական հակումները, կանանց ու կենսաթոշակառուների աշխատուժի օգտագործման յուրահատկությունները։ Այսօր մեր հանրապետությունը բնութագրվում է խիստ արտահայտված երիտասարդ աշխատանքային տարիքի բնակչությամբ։ Մոտ ապագայում կգերակշռի աշխատանքային ակտիվ տարիքի բնակչությունը։ Նախորդ հնգամյակի համեմատությամբ, 24—45 տարեկանների բացարձակ թիվը դարի վերջին կաճի ավելի քան 80 տոկոսով։ Ինչ վերաբերում է աշխատանքային տարիք մուտք գործող բնակչությանը, ապա այն կսկսի մեծ չափերով ավելանալ 1995 թվականից։ 1986—2000 թթ. աշխատանքային տարիք մուտք կգործի ավելի քան մեկ միլիոն մարդ։

Զբաղվածության արդյունավետության բարձրացումը պայմանավորված է նյութական արտադրության և ոչ արտադրական ոլորտի ճյուղերի միջև անհրաժեշտ համամասնության ապահովմամբ և, ավելի մեծ չափով, հանրապետության աշխատանքային ռեսուրսների արդեն ձևավորված պրոֆեսիոնալ որակական մակարդակին համապատասխանող արտադրությունների հետագա ընդլայնմամբ։

Ոչ արտադրական ոլորտի ճյուղերի հետ մեկտեղ աշխատուժի (մասնավորապես երիտասարդ) զբաղվածության արդյունավետության բարձրացման գործում բացառիկ դեր ունի արդյունաբերությունը։ Դա իր արտահայտությունն է գտել ոչ միայն աշխատուժի ընդգրկման այս ճյուղի անընդհատ ընդլայնվող մասշտաբներում. լինելով գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր կրողը, այն կլանում է բարձր որակավորում պահանջող երիտասարդ աշխատուժը, նոր ստեղծվող աշխատատեղերում ընդգրկում նորագույն պրոֆեսիոնալ կազմ ունեցող աշխատողներին։

Արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործումը հասարակական արտադրության, ինչպես նաև աշխատուժի օգտագործման արդյունավետությունը կանխորոշող կարևոր գործոններից է, տնտեսական զարգացման մակարդակը բնութագրող էական ցուցանիշ։ Արդյունաբերության ճյուղային կառուցվածքի համալիրում դրա ներճյուղային կառուցվածքի կատարելագործումը, առավել հեռանկարային արտադրությունների ստեղծումն ու առաջանցիկ զարգացումը վճռական ազդեցություն են ունեցել ոչ միայն բուն արդյունաբերության մեջ աշխատուժի օգտագործման, այլև հասարակական արտադրության ճյուղային կառուցվածքի և դրանում աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացման վրա։ ՀՍՍՀ արդյունաբերությունը, օրինակ, քայլ առ քայլ նվաճել է արտադրական մեկ ասպարեզը մյուսի ետևից և մուտք գործելով ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտները, ապահովել է դրանց ոչ միայն ինդուստրիալ զարգացումը, այլև աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացումը։ Հանրապետության բնակչության կազմում աշխատունակ տարիքի բարձր տեսակարար կշիռը, հետևապես և դրանց զբաղվածությունն ապահովելու անհրաժեշտությունը պայմանավորել են մեքենաշինության և թեթև արդյունաբերության նոր և նորագույն մի շարք աշխատատար ճյուղերի ստեղծումն ու զարգացումը։

Բնակչության բարձր խտությունը, ջրային ռեսուրսների ոչ մեծ պոտենցիալը, ինչպես նաև գիտատեխնիկական պրոգրեսի նյութական հիմքը կազմող մի շարք առաջատար ճյուղերի զարգացման բարձր մակարդակը և, դրան համապատասխան, ինժեներատեխնիկական ու բանվորական կադրերի առկայությունը թելադրում են արդյունաբերության մեջ որակավորում պահանջող, աշխատատար, բայց ոչ նյութատար, ոչ էներգատար և ոչ ջրատար ճյուղերի

զարգացում, իսկ զբաղվածության արդյունավետության բարձրացման և բնակչության սպասարկման մակարդակի հետագա բարելավման շահերը թելադրում են ավելի ընդլայնել ոչ արտադրական ոլորտի ճյուղերը։ Զբաղվածության արդյունավետության բարձրացման խնդիրները պետք է սերտորեն զուգակցել շրջակա միջավայրը և մթնոլորտը չաղտոտող արտադրությունների ստեղծման հետ։ Այդ առումով այսուհետ ևս հանրապետությունում առավել հեռանկարային է սարքաշինական, գործիքաշինական, էլեկտրոնային ու ռադիոէլեկտրոնային և թեթև արդյունաբերության, ինչպես նաև տեղական գյուղատնտեսական հումքի առկայությամբ պայմանավորված սննդարդյունաբերության վերամշակող ճյուղերի զարգացումը։ Նման հարցադրումը պայմանավորված է ոչ միայն հանրապետության աշխատանքային ռեսուրսների զարգացման օրինաչափություններով։ Այդ ճյուղերի ձեռնարկությունները, հիմնականում լինելով աշխատատար, մեծ պահանջներ չեն հարուցում ջրի և հողային տարածության նկատմամբ, պահանջում են որակավորում ունեցող աշխատուժ, կարող են տեղաբաշխվել ցանկացած վայրում, հիշյալ ճյուղերի շատ արտադրություններ նպատակահարմար են նաև կանանց աշխատուժն զբաղեցնելու առումով, մի հանգամանք, որը չափազանց կարևոր է գյուղական շրջանների և փոքր քաղաքների համար։

Չնայած հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքի անընդհատ կատարելագործմանը, դրա զարգացումը զերծ չէ միակողմանիությունից։ Հաճախ նոր ճյուղեր ստեղծելիս, անտեսվել են համապատասխան հումքով և էներգիայով ապահովվածության մակարդակը, բնական պայմանները, բնակչության զարգացման տվյալ փուլի ժողովրդագրական առանձնահատկությունները։ Ելնելով աշխատուժի զբաղվության արդյունավետության բարձրացման և մյուս պոտենցիալ ռեսուրսների ռացիոնալ օգտագործման անհրաժեշտությունից, նպատակահարմար է ընտրել արդյունաբերության զարգացման այնպիսի ուղղություն և կառուցվածք, որոնք կապահովեն առաջադիմական ճյուղերի առավել արագ աճը և դրանց մասնագիտացման խորացումը, հայթայթող արդյունաբերության մեջ հումքատեսակների կորզման օգտակար գործողության գործակցի բարձրացումը և կորուստների կրճատումը, վերամշակող արդյունաբերության նվազ էներգատար ու ո՛չ ֆոնդատար այնպիսի ճյուղերի առավել արագ զարգացումը, որոնք բարձր որակավորման աշխատանք են պահանջում։ Կարևոր է ապահովել նաև բնակչության պահանջմունքները անմիջականորեն բավարարող ճյուղերի, ինչպես նաև սահմանափակ կապիտալ ներդրումների պայմաններում բարձր արդյունավետություն ապահովող արտադրությունների զարգացումը։

Հանքահումքային և հողային ռեսուրսների օգտագործման վրա խարսխված ճյուղերը (արդյունահանող և սննդի արդյունաբերություն) նպատակահարմար է ընդլայնել միայն ինտենսիվ գործոնի հաշվին, առանց նոր լրացուցիչ աշխատուժ ընդգրկելու։ Ինչ վերաբերում է վերամշակող արդյունաբերության որոշ ճյուղերի (հատկապես մեքենաշինության, մետաղամշակման, թեթև արդյունաբերության), ապա ինտենսիվ զարգացումն այստեղ կուղեկցվի նոր աշխատատեղերի ստեղծմամբ, որոնցում կկիրառվի բարձր որակավորում պահանջող աշխատուժ։

Չնայած արդյունաբերության մեջ զբաղվածությունը կդրսևորի բացարձակ աճի միտում, բնակչության ընդհանուր թվի նկատմամբ դրա հարաբերական ցուցանիշը, նախկինի նման կզիջի միութենական միջինին, այն դեպքում, երբ հանրապետության քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կշարունակի մնալ ավելի բարձր մակարդակի վրա։ Այլ պատճառների հետ միասին, դա բացատրվում է նաև ՍՍՀՄ միջինի համեմատությամբ հանրապետության բնակչության կազմում անչափահասների, ինչպես նաև աշխատանքային տարիքում սովորողների ավելի բարձր տեսակարար կշռով։

Աշխատուժի արդյունավետության բարձրացման չօգտագործված մեծ հնարավորություններ կան գյուղատնտեսության մեջ։ Աշխատատար ճյուղերում արտադրության մեքենայացման մակարդակի հետագա աճից բացի, խոսքն



այստեղ վերաբերում է նաև գյուղատնտեսության ճյուղային կառուցվածքի կատարելագործմանը, դրա մասնագիտացման հետագա խորացմանը։ Այսուհետ ևս նպատակահարմար է ընդլայնել եկամտաբեր և մասնագիտացված ճյուղերը։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ավելացման պայմաններում էապես նվազել է դրանում զբաղված բնակչության բացարձակ թիվը և դրա տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների ընդհանուր թվում։ Ոչ հեռավոր անցյալում, օրինակ 1960 թվականին, գյուղատընտեսության և անտառային տնտեսության մեջ ընդգրկված էր հանրապետության զբաղված բնակչության 44, իսկ այժմ՝ 21 տոկոսը։ Դրա փոխարեն բարձրացել է զբաղվածությունը արդյունաբերության և շինարարության մեջ։

Գյուղատնտեսական արտադրության ընդլայնման և համախառն արտադրանքի ավելացման պայմաններում զբաղվածության կրճատման միտումը կպահպանվի նաև ապագայում։ Նախկինի նման իր կարևորությունը կպահպանի ոչ միայն գյուղատնտեսությունից ազատվող աշխատանքային ռեսուրսները ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի միջև վերաբաշխելու, այլև դրա ոչ եկամտաբեր ճյուղերից առավել եկամտաբեր ճյուղերին անցնելու խնդիրը։

Միաժամանակ պետք է նշել, որ գյուղատնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը Միության միջինից ցածր է։ Ինչպես նշվեց ՀԿԿ XXVII համագումարում, հանրապետությունում դեռևս ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, ձեռքով են կատարվում շաքարի ճակնդեղի, ծխախոտի, խորդենու մշակության և բերքահավաքի, այգեթաղի և այգեկութի, անասնապահության հետ կապված շատ աշխատանքներ։ Թեև գյուղատնտեսության մեջ ընդհանուր առմամբ բարձրանում է մեքենայացման մակարդակը, բայց աշխատանքային ծախսումները դանդաղ են նվազում։

Ապագայում մեր հանրապետության գյուղատնտեսության ոլորտում զբաղվածության կրճատումը Միության միջին ցուցանիշի համեմատ ավելի ինտենսիվ կլինի։ Երկրի այլ հանրապետություններում նոր հողերի յուրացման հնարավորության, գյուղատնտեսության մեկ բնագավառից մեկ այլ բնագավառ աշխատուժի տեղափոխության, ինչպես նաև նույն ոլորտի արտադրության ընդլայնման պայմաններում կներգրավվի աշխատանքային տարիք մուտք գործող բնակչության մի մասը։ Մինչդեռ ՀՍՍՀ գյուղատնտեսությունը կարող է ընդգրկել աշխատանքային տարիք մուտք գործած բնակչության ավելի քիչ մասը։ Դա, իր հերթին, կուժեղացնի երիտասարդության նկատվող միգրացիան գյուղից դեպի քաղաք, եթե միջոցներ չձեռնարկվեն հանրային արտադրության մեջ երիտասարդության աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու նպատակով։ Թեև գյուղի ու քաղաքի միջև բնակչության շարժը միակողմանի չէ, այնուամենայնիվ, քաղաքն առ այսօր հիմնականում աճում է գյուղի հաշվին և «երիտասարդանում» է ի հաշիվ գյուղական բնակչության «ծերացման»։

Զարգացման նախորդ փուլերում գյուղատնտեսությունից ազատվող աշխատանքային ռեսուրսների ընդգրկումը ոչ գյուղատնտեսական ոլորտներում և դրա հետևանքով քաղաքային բնակչության ավելացումն օբյեկտիվորեն թելադրվում էր գիտատեխնիկական առաջընթացով և բարձրացնում էր աշխատուժի օգտագործման արդյունավետությունը։ Սակայն արդի պայմաններում հարցի այսպիսի լուծումը, որ միաժամանակ հանգեցնում է ծայրամասային գյուղական շրջաններում բնակչության տարիքային կազմի անցանկալի փոփոխության, խախտում է ինչպես գյուղատնտեսական արտադրության զարգացման, այնպես էլ բնակչության վերարտադրության նորմալ ընթացքը։

Գյուղատնտեսական արտադրության որոշ ճյուղերից երիտասարդության հեռանալը բացատրվում է այդ ճյուղերում աշխատանքի և վարձատրության կազմակերպման ոչ բավարար մակարդակով, աշխատանքների սեզոնային բնույթով, գյուղի ու քաղաքի սոցիալ-տնտեսական պայմանների էական տարբերություններով, քաղաքներում իրենց հակումներին համապատասխան մաս-

նագիտություն ստանալու և աշխատելու առավել լայն հնարավորությամբ, իսկ դա ձգողական մեծ ուժ ունի հատկապես միջնակարգ դպրոցի նոր շրջանավարտների համար, ինչպես նաև տվյալ տնտեսական շրջանի աշխատանքային ռեսուրսների փաստացի աճի համեմատ տնտեսության առանձին ճյուղերի զարգացման ցածր տեմպերով, դրանց ոչ արդյունավետ տեղաբաշխմամբ։

Հայտնի է, որ գյուղատնտեսական պրոֆեսիոնալ կրթություն ունեցող մասնագետներից շատերը չեն մնում գյուղում։ Վերջին 15—20 տարիների ընթացքում գյուղատնտեսության համար պատրաստված մեխանիզատորական կադրերի թիվը գերազանցում է աշխատող մեխանիզատորների թվին։ Օրինակ, 1966—1982 թթ. հանրապետության գյուղատնտեսության համար պատրաստվել են ավելի քան 75,5 հազար մեխանիզատորական կադրեր (տրակտորիստներ, կոմբայնավար-մեքենավարներ, կոմբայնավար-մեխանիկներ, ավտովարորդներ և այլն)։ Մինչդեռ այդ ընթացքում գյուղատնտեսության մեջ դրանց թիվն ավելացել է միայն 7,3 հազարով։

Գյուղից մեխանիզատորական կադրերի, ինչպես նաև ընդհանրապես երիտասարդության արտահոսքի գլխավոր պատճառներից մեկը սեզոնային աշխատանքն է և սեզոնային վարձատրությունը։ Գյուղի շատ բնակիչներ տեղափոխվում են ժողովրդական տնտեսության այն ճյուղերը, որոնք գործում են կլոր տարին։ Ներկայումս, չնայած գյուղատնտեսության մեջ աշխատանքային ռեսուրսների նկատմամբ գոյություն ունեցող պահանջարկին (հատկապես անասնապահության մեջ), ակտիվ աշխատանքային տարիքի տղամարդ բնակչության մի զգալի մասը աշխատանքի է անցնում ինչպես հանրապետության քաղաքներում, այնպես էլ երկրի այլ վայրերում, ուր կիրառվում են նյութական շահագրգռվածության առավել ռացիոնալ ձևեր։ Սակայն նման միգրացիան չի ապահովում աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, քանի որ այն կրում է անկազմակերպ բնույթ, ինչը հասարակական տեսակետից աննպատակահարմար է և դեռ ավելին՝ հատուկ չէ պլանային տնտեսությանը։ Բանն այն է, որ տարերային միգրացիայի հետևանքով աշխատանքային ռեսուրսները հաճախ չեն օգտագործվում այնտեղ, ուր նրանց կարիքն ավելի շատ է զգացվում։ Բացի այդ, այլ հանրապետություններ միգրացվող բանուժը աշխատում է ժամանակավորապես, մի քանի ամիս։ Սեզոնի ավարտից հետո նրանք վերադառնում են հանրապետություն և վաստակածը սպառում մինչև հաջորդ սեզոնը։ Եվ, վերջապես, տարերային միգրացիան, անկախ այն բանից, միջհանրապետական է, թե ներհանրապետական, հանգեցնում է բնակության վայրի չարդարացվող փոփոխության, մեծ քաղաքների անհարկի աճի։

Գյուղական բնակչության միգրացիան բացատրվում է նաև աշխատանքի հեռանկարի գնահատման գործում երիտասարդության մոտ առկա չափանիշներով։ Գաղտնիք չէ, որ երիտասարդությունը (մասնավորապես միջնակարգ կրթություն ունեցողները) ձգտում են հիմնականում աշխատանքի տեղավորվել գիտատեխնիկական առաջընթացի նյութական հիմքը կազմող առաջատար ճյուղերում։ Նման ձգտումը բացատրվում է ոչ միայն աշխատանքների մեքենայացման բարձր մակարդակով, այլև խոստումնալից հեռանկարներով։ Մինչդեռ ստեղծվել է որոշակի անհամապատասխանություն պատանիների ու աղջիկների հանրակրթական գիտելիքների մակարդակի և դրանք գյուղական վայրերում արտադրության մեջ կիրառելու սահմանափակ հնարավորությունների միջև։ Մասամբ այս պատճառով լրիվ միջնակարգ կրթություն ունեցող գյուղական երիտասարդության մի զգալի մասն ընտրում է ոչ գյուղատնտեսական մասնագիտություն։ Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմով նախատեսված միջոցառումների իրականացումը, անշուշտ, կնպաստի այս հարցերի, ինչպես նաև որակյալ աշխատուժի վերարտադրության հետ կապված բազմաթիվ խնդիրների լուծմանը։

Անհամապատասխանություն գոյություն ունի մի կողմից՝ հասարակական արտադրության շատ օղակներում տեխնիկական բազայի ավելի բարձր մակարդակի և կյանք մտնող երիտասարդության մի զգալի մասի մասնագիտական կրթության բացակայության միջև, մյուս կողմից՝ արտադրություն մուտք գործող պատանիների ու աղջիկների ստացած հանրակրթական գիտելիքների մակարդակի և այդ արտադրության որոշ օղակների դեռևս ցածր տեխնիկական հագեցվածության միջև։ Հայտնի է, որ միջնակարգ կրթություն ունեցողների մեծ մասը իր աշխատանքային գործունեությունն սկսում է՝ չտիրապետելով որևէ մասնագիտության։ Դրա հետ մեկտեղ արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման պայմաններում դեռևս պահպանվում է ձեռքի աշխատանքը։

Արդի գիտատեխնիկական առաջընթացը, լուծելով հասարակական արտադրության բոլոր օղակների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման խնդիրները, նոր պահանջներ է առաջադրում արտադրություն մուտք գործող կադրերի ինչպես մասնագիտական կողմնորոշման, այնպես էլ մասնագիտական ուսուցման նկատմամբ։ Ռեֆորմը, որը բխում է դպրոցի և կյանքի առջև ծառացած այսօրվա պահանջներից, նպատակ ունի համակողմանիորեն լուծելու այնպիսի խնդիրներ, որոնք կապահովեն երիտասարդության աշխատանքի հեռանկարը հասարակական արտադրության բոլոր բնագավառներում։

Գյուղից քաղաք կատարվող բնակչության տեղաշարժերի հարցում պլանայնության դերի բարձրացման հետ մեկտեղ կարևորված է արտադրաուժերի տեղաբաշխման բարելավումը։ Նկատի է առնվում գյուղատնտեսությունից ազատվող աշխատանքային ռեսուրսները հենց գյուղական վայրերի ոչ գյուղատնտեսական բնույթի աշխատանքներում ընդգրկելու համար նպաստավոր պայմաններ ստեղծելու խնդիրը։ Այս առումով կարևոր նշանակություն է ստանում գյուղատնտեսական արտադրության մեքենայացման մակարդակի բարձրացման և բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների հետագա բարելավման միջոցների ձեռնարկումը։ Դա, իր հերթին, կընդլայնի աշխատուժի գործադրման շրջանակը ոչ միայն բուն գյուղատնտեսության մեջ և նրան սպասարկող ճյուղերում, այլև ոչ արտադրական ոլորտում։

Եթե խոշոր քաղաքների փոխարեն միջոցների մի մասը ե՛լ ավելի մեծ չափերով հատկացվի փոքր քաղաքներին ու գյուղական շրջաններին, ապա դրանով իսկ հնարավորություն կստեղծվի կրճատելու աշխատավայրի և բնակավայրի միջև հեռավորությունը, բեռնաթափելու խոշոր քաղաքները, բարձրացնելու աշխատուժի օգտագործման արդյունավետությունը և՛ խոշոր, և՛ փոքր քաղաքներում, ինչպես և գյուղական վայրերում։ Ընդսմին անհրաժեշտ է ապահովել փոքր քաղաքների այնպիսի ներդաշնակ զարգացումը, որ ստեղծվի բոլոր պայմանները և՛ կանանց, և՛ տղամարդկանց աշխատուժի արդյունավետ օգտագործման, ինչպես նաև բնակչության պահանջմունքների համակողմանի բարելավման համար։ Այդ իմաստով, նպատակահարմար է շարունակել փոքր քաղաքների զարգացմանը տրամադրվող միջոցներն անընդհատ ավելացնելու՝ վերջին տասնամյակում կիրառվող կուրսը։

Գյուղական շրջաններում աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացման գործում կարևոր է միջտնտեսական կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի դերը։ Դրանք ապահովում են հանրային տնտեսության մեջ գյուղի աշխատավորության զբաղվածությունը, ինչպես և կենսամակարդակի բարձրացումը։ Միջշրջանային կոոպերացման և արդյունաբերական ինտեգրացման հիման վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման հետագա խորացումը հանգեցնում է նաև գյուղի սոցիալական վերափոխման։ Ագրոարդյունաբերական համալիրների ստեղծումը լայն հնարավորություններ է ընձեռում գյուղական բնակչության կենցաղային սպասարկման և գյուղական վայրերի սոցիալ-տնտեսական վերափոխման համար։ Դրա հետ մեկտեղ, ճիշտ կլինի որոշակի համամասնություն ապահովել գյուղատնտեսական արտադրության մեքենայացման և սոցիալ-կուլտուրական նպատակների համար առանձնացվող միջոցների աճի տեմպերի միջև։

Ակնհայտ են հանրապետության գյուղական վայրերում և ավաններում բնակարանային շինարարության ասպարեզում ձեռք բերված նվաճումները։ Մինչդեռ, շատ գյուղեր չեն կառուցվում համապատասխան հատակագծով, որը,

*իր հերթին, դժվարացնում է թարեկարգ գյուղամիջյան ճանապարհների կառուցումը։*

*Ծայրամասային գյուղական շրջանների երիտասարդության արտահոսքը կրճատելու առումով կարևոր է բրիգադային և անհատական կապալի լայն կիրառումը։ Ուշադրության է արժանի նաև անձնական օժանդակ տնտեսություն վարելու համար խթանիչ պայմաններ ստեղծելու հարցը։ Հանրօգուտ աշխատանքի այս ոլորտը նույնպես նպաստում է հասարակական արտադրության արդյունավետության և աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացմանը։*

*Անձնական օժանդակ տնտեսության գոյությունը պայմանավորված է ոչ միայն նրանով, որ այն պարենային ծրագրի լուծման կարևոր գործոն է, քանի որ ներկայումս այստեղ է արտադրվում գյուղատնտեսական մթերքների շուրջ 30 տոկոսը, այլև նրանով, որ այս սեկտորում մեծ մասամբ զբաղված են կանայք։ Նրանք փոքր տարիքի երեխաների խնամքը զուգակցում են անձնական օժանդակ տնտեսությունը վարելու հետ։ Այստեղ լայնորեն գործադրվում է նաև թոշակառուների աշխատուժը։ Իսկ դա չափազանց կարևոր գործոն է գյուղական տարեց բնակչության սոցիալական խնդիրների լուծման առումով։ Վերջապես, անձնական օժանդակ տնտեսությունը ինչպես մտավոր ու ֆիզիկական աշխատանքի զուգակցման, այնպես էլ աճող սերնդի ֆիզիկական ու աշխատանքային դաստիարակության կարևոր ասպարեզ է։ Այն որոշակի պայման է նաև աշխատավորության ազատ ժամանակի օգտագործման համար։*

*Տարակույս չկա, որ հանրապետությունում արտադրաուժերի տեղաբաշխման հետագա կատարելագործումը, ագրոարդյունաբերական համալիրի ըստ ամենայնի զարգացումը, գյուղի ու քաղաքի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների աստիճանական հաղթահարումը, նյութական խթանման ձևերի կատարելագործումը, բնակչության միգրացիոն տեղաշարժերի գործում պլանայնության դերի մեծացումը, կադրերի պատրաստման և տեղաբաշխման գործի լավ կազմակերպումը կհանգեցնեն աշխատուժի օգտագործման արդյունավետության հետագա բարձրացման։*

---



# ՈՒՍԱՆՈՂ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ՝ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ

**Գ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
ՀԿԿ Մյասնիկյանի շրջկոմի առաջին քարտուղար

*ՄԵՐ ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ բոլոր փուլերում կոմունիստական կուսակցությունը մեծապես կարևորել է երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը։ Վ. Ի. Լենինը կոմերիտմիության III համագումարում երիտասարդությանը խորհուրդ էր տալիս՝ կոմունիզմ սովորել, պայքարել սոցիալիստական հայրենիքի բարգավաճման և հզորացման համար, պատրաստ լինել պաշտպանելու Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները։ Եվ սովետական երիտասարդությունը իր հայրենանվեր գործերով, աշխատանքային ու մարտական խիզախումներով ապացուցեց, որ ինքն ունակ է պատվով կատարելու լենինյան պատգամները, կուսակցության բոլոր առաջադրանքները։ Ինչպես նշված է կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Կոմերիտականները, երիտասարդները պատվով են շարունակում ավագ սերունդների գործը, կուսակցության կոչով խանդավառությամբ ձեռնամուխ են լինում երկրի համար առավել կարևոր խնդիրների լուծմանը։ Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ իրենց ամենօրյա առօրյա աշխատանքով նորանոր էջեր են գրում կոմերիտական փառքի տարեգրության մեջ»։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը կոմերիտմիության առջև խնդիր դրեց՝ կազմավորել քաղաքականապես ակտիվ, իր գործն իմացող, աշխատանքը սիրող և աշխատունակ մարդկանց այնպիսի սերունդ, որոնք միշտ պատրաստ լինեն պաշտպանելու իրենց հայրենիքը։ Ընդ որում կուսակցությունը հաշվի է առնում այն իրողությունը, որ այսօրվա 18—25 տարեկան երիտասարդները վաղը կազմելու են մեր հասարակության հիմնախարիսխը։*

*Առաջնորդվելով կուսակցության XXVI համագումարի որոշումներով, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը առաջադրեց ելակետային այն դրույթը, որ մարդը մեզ մոտ պետք է «դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, իրեն բնորոշ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով»* (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, *էջ 20)։*

*Հունիսյան պլենումը կուսկազմակերպություններից պահանջեց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որ կուսակցությունը լուծում է զար-*

կացած սոցիալիստական հասարակարգի կատարելագործման արդի փուլում։ Գործի հաջողությունը պայմանավորված է գաղափարախոսական, կազմակերպական և տնտեսական աշխատանքի միասնության լենինյան սկզբունքի հետևողական կիրառմամբ, քանի որ, ինչպես ուսուցանում է կուսակցությունը, անկարելի է որակական նոր տեղաշարժեր կատարել էկոնոմիկայում, համակողմանիորեն զարգացնել այն առանց անհրաժեշտ սոցիալական և գաղափարախոսական նախադրյալներ ստեղծելու, ինչպես նաև անկարելի է լուծել սոցիալիստական գիտակցության զարգացման հասունացած պրոբլեմները առանց հենվելու տնտեսական ու սոցիալական քաղաքականության ամուր հիմքի վրա։

Երիտասարդության դաստիարակության վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդիրների, մասնավորապես կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման պահանջների առնչությամբ մեծ խնդիրներ են ծառանում հատկապես մեր՝ Մյասնիկյանի շրջանային կազմակերպության առջև։ Դա բացատրվում է նրանով, որ հանրապետության 13 բարձրագույն ուսումնական հաստատություններից 8-ը՝ այն էլ ամենախոշորները (պետական համալսարան, պոլիտեխնիկական, բժշկական, ժողտնտեսության, գյուղատնտեսական, անասնաբուծական-անասնաբուժական, գեղարվեստաթատերական ինստիտուտներ և պետական կոնսերվատորիան) գտնվում են մեր շրջանի տարածքում և ներառնում են ողջ ուսանողության 78, ուսանող կոմունիստների 70 տոկոսից ավելին։

Հաշվի առնելով օբյեկտիվ պատմական պայմանները, միջազգային կյանքում ստեղծված լարվածությունը և բուրժուական հակակոմունիստական պրոպագանդայի ազդեցությունն ի չիք դարձնելու անհրաժեշտությունը՝ կուսակցությունն այսօր նոր խնդիրներ է դնում կուսակցական կոմիտեների ու սկզբնական կուսկազմակերպությունների առջև։ «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ պահանջվում է երիտասարդության մեջ հաստատակամորեն ձևավորել մարքս-լենինյան աշխարհայացք, դասակարգային ինքնագիտակցություն, անհաշտ վերաբերմունք բուրժուական գաղափարախոսության և այն ամենի նկատմամբ, ինչը հակասում է սոցիալական արդարության գաղափարին։ Որոշմամբ խնդիր է դրվում մշտապես տեսադաշտում պահել կոմերիտական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման հարցերը բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների կյանքում, յուրաքանչյուր ուսանողի մեջ ձևավորել մարքս-լենինյան տեսության, կուսակցության քաղաքականության խոր ուսումնասիրման, ընտրած մասնագիտությանը տիրապետելու, հայրենիքին անհրաժեշտ ասպարեզներում աշխատելու պահանջմունք։

Վերջին տարիներս մենք բուհերի կուսակցական ակտիվի ժողովների քննարկմանն ենք ներկայացրել ուսանողության հասարակական-քաղաքական պրակտիկայի, հասարակական մասնագիտությունների ֆակուլտետների, առաջին և հինգերորդ կուրսեցիների ուսումնադաստիարակչական աշխատանքների, ակադեմիական խմբերի շեֆ դասախոսների (կուրատորների) և ուսանողների գիտահետազոտական աշխատանքների բարելավման հարցերը։ Ակտիվի ժողովներն ընդհանրացրել ու տարածել են Միության և շրջանի առաջավոր բուհերի դրական փորձը, ընդունել բուհերի գիտնական-մանկավարժների և շրջկոմի աշխատողների մշակած հանձնարարականները։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո զգալիորեն ուժեղացել է կուսկոմիտեների, ֆակուլտետային կուսկազմակերպությունների ազդեցությունը ուսումնադաստիարակչական բոլոր օղակներում։ Նրանք հոգում են ուսումնական պրոցեսի կատարելագործման, գիտահետազոտական աշխատանքներում ուսանողության ներգրավման, արտադրության հետ սերտ կապերի հաստատման, ուսանողության համակողմանի դաստիարակության մասին։ Այլ խոսքով, ապահովվում է դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման՝



քաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդիրների լուծումը։ Դրա համար գործի ենք դնում գաղափարական ազդեցության բոլոր միջոցները։

Ուսանողների կոմունիստական դաստիարակության նպատակով կուսշրջկոմի և բուհական կուսկազմակերպությունների կիրառած մեթոդները ապահովում են բուհական կրթության՝ ակադեմիական և պրոֆեսիոնալ ուսուցման, հասարակական ու քաղաքական պատրաստության բոլոր բաղադրիչների լավագույն ամբողջացումը։ Մյուս կողմից, դրանք հաշվի են առնում գիտելիքներից՝ համոզմունքների, համոզմունքներից՝ գործողությունների անցման դինամիկան։

Մեր կուսակցության գլխավոր նպատակը բազմակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակումն է, նրա գաղափարաբարոյական ձևավորումը։ Նոր սերնդի ստեղծագործական ուժը մեծապես պայմանավորված է նրա ճիշտ ու խելամիտ կողմնորոշմամբ։ Նոր սերնդի ներկայացուցիչն ունի սոցիալապես օգտակար նպատակ, համոզված է դրա ճշմարտացիության և անհրաժեշտության մեջ, նա գիտի այդ նպատակի իրականացման ձևերն ու ուղիները և պատրաստ է իրեն նվիրաբերելու դրան։ Ուսանողների դաստիարակության արդյունավետության բարձրացման առումով ուսանելի փորձ են կուտակել Երևանի պետական համալսարանի կուսկոմիտեն ու ռեկտորատը, որոնք ուսանողության գաղափարական դաստիարակության աշխատանքը իրականացնում են ուսումնառության բոլոր տարիների համար մշակած կոմպլեքսային պլաններին համապատասխան։ Անցյալ տարի շրջկոմի բյուրոյում գործարար մթնոլորտում քննարկեցինք պետհամալսարանի կուսկոմիտեի հաշվետվությունը ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո ուսանողության շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպման մասին։ Քննարկումը ցույց տվեց, որ կուսկոմիտեն և ռեկտորատը հաջողությամբ են իրագործում ուսանողության կոմունիստական դաստիարակության նպատակով իրենց մշակած երկարաժամկետ կոմպլեքսային միջոցառումների պլանը։ Այդ աշխատանքին հատկապես նոր լիցք է հաղորդել 1982 թ. դեկտեմբերի վերջին տեղի ունեցած համալսարանի կուսակցական ակտիվի ժողովը։ Կուսկոմիտեն տարբեր առումներով քանիցս անդրադարձել է ուսանողության և կոլեկտիվի գաղափարական կոփման, քաղաքական դաստիարակության հարցերին, այդ առնչությամբ քննարկել մի քանի ֆակուլտետների կուսբյուրոների և առանձին կոմունիստների հաշվետվություններ, կազմակերպել բազմաթիվ գիտագործնական սեմինարներ և կոնֆերանսներ։

Ուսանող երիտասարդության կրթության ու կոմունիստական դաստիարակության ասպարեզում պետական համալսարանի կուսկոմիտեի և ռեկտորատի ծավալած արգասավոր գործունեության արժանի գնահատման վավերացումը ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշն էր, որ մեր մայր կրթօջախը անցյալ տարի վեցերորդ անգամ շահեց անընդմեջ՝ հանրապետական սոցմրցությունում հաղթող ճանաչվելու համար։ Նույն տարում նա արժանացավ նաև ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Այս ամենը վկայում է, որ Երևանի պետական համալսարանը, իրոք, դարձել է երկրի առաջատար բուհերից մեկը։

Բուհերի կուսկոմիտեները, կուսբյուրոները և ռեկտորատները, ֆակուլտետային կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները և հասարակագիտական ամբիոնները կարևոր տեղ են հատկացնում դաստիարակության այնպիսի ձևերին, ինչպիսիք են լենինյան ստուգարքը, երիտասարդ դասախոսի դպրոցը, հասարակագիտական մասնագիտությունների ֆակուլտետը, հասարակական-քաղաքական պրակտիկան, ստեղծագործական հաշվետվությունները, շեֆական համերգները, ուսանողական ֆիլհարմոնիան, գեղարվեստական ստեղծագործությունների ցուցահանդեսները։ Դրանք, անտարակույս, մեծապես նպաստում են ուսանողների գաղափարական, բարոյական ու աշխատանքային

դաստիարակության ուժեղացմանը, նրանց մոտ քաղաքական-մասսայական և կազմակերպչական աշխատանք կատարելու հմտությունների զարգացմանը։ Այդ ամենի շնորհիվ մեծացել է ուսանողների հետաքրքրասիրությունը մարքս-լենինյան տեսության, կուսակցության որոշումների, մեր երկրի արտաքին ու ներքին քաղաքականության ուսումնասիրության նկատմամբ, ավելացել է «գերազանց» ու «լավ» գնահատականներով սովորողների թիվը։

Ուսանող երիտասարդության կոմունիստական համակողմանի դաստիարակության նպատակով տարվող աշխատանքում առանձնահատուկ տեղ ունեն հասարակագիտական առարկաները։ ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հիմունքների խոր ուսումնասիրությունը վճռական դեր է խաղում սովորողների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման և գաղափարական կոփման գործում, կազմում ընդհանուր գիտական պատրաստվածության անքակտելի մասը։ Հասարակական գիտությունների դասավանդումը շրջանի բուհերում իրականացվում է լենինյան հարուստ տեսական ժառանգության խոր ուսումնասիրման նշանաբանով, մի հանգամանք, որին կուսակցությունը հսկայական կարևորություն է տալիս։

Մեր պրակտիկայում լայնորեն կիրառվում են ոչ միայն գաղափարախոսական աշխատանքին նվիրված հարցերի, այլև հասարակագիտական առարկաների ամբիոնների և դասախոսների հաշվետվությունների գործարար քննարկումները շրջկոմի բյուրոյի նիստերում։ Այս առնչությամբ ուսանելի էր պետհամալսարանի ՍՄԿԿ պատմության ամբիոնի վարիչ Ս. Ամիրյանի հաշվետվության քննարկումը։ Այն բխում էր ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների բուն ոգուց։ Մենք ուշադրությունը սևեռեցինք այն հրատապ խնդրի վրա, թե ամբիոնն ինչպես է ապահովում ժողովրդական տնտեսության համար պատրաստվող մասնագետների գաղափարատեսական բարձր մակարդակը, նպաստում նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, դասավանդվող հասարակագիտական առարկաներից ուսանողների բարձր առաջադիմությանը։ Այդ քննարկման առնչությամբ ընդունված համապատասխան որոշումն էական նշանակություն ունեցավ նաև մյուս բուհերում հասարակագիտական առարկաների դասավանդումը բարելավելու համար։

Լայնորեն օգտագործելով կուսակցության ծրագրային փաստաթղթերը, ժամանակակից գիտության և հասարակական պրակտիկայի նվաճումները՝ մեր բուհերի դասախոսները հեղափոխական տեսությունը շարադրում են զարգացած սոցիալիզմի դարաշրջանին բնորոշ՝ կյանքի սոցիալական տեղաշարժերի հետ սերտորեն կապակցված։ Դրան մեծ չափով նպաստում են կուսշրջկոմի մշտական աշխատանքը հասարակական գիտությունների ամբիոնների հետ և այն արդյունավետ միջոցառումները, որոնք իրականացնում ենք բուհերի կուսկոմիտեների հետ միասին։ Այստեղ մենք հետամտում ենք մեկ միասնական նպատակ՝ բարձրացնել հասարակական գիտությունների դասավանդման գաղափարատեսական մակարդակը և արմատապես բարելավել ուսանողների գաղափարական դաստիարակությունը։

Երիտասարդության կոմունիստական համակողմանի դաստիարակության բարելավման համար հարկավոր է ուժեղացնել նրա այսօրվա կողմնորոշումը հասարակական գործունեության ընդլայնման միջոցով։ Այդ նպատակով բուհերի կուսկազմակերպություններն սկսել են ուսանողներին ավելի լայնորեն ներգրավել արտաուսումնական աշխատանքում։ Շինարարական ջոկատները, օրինակ, ոչ միայն ուսանողների աշխատանքային և ինտերնացիոնալ դաստիարակության միջոցներ են, այլև երկրի հասարակական-տնտեսական կյանքում նրանց ներգրավելու արդյունավետ մեթոդ։ Կոմունիստական շինարարության անմիջական մասնակիցը լինելու նկատմամբ նրանց պատրաստակամության վկայությունը տարեցտարի շինարարական ջոկատների քանակի և նրանցում ընդգրկված ուսանողների թվի ավելացումն է։ Շրջանի ուսանողները 1983 թ. մասնակցել են համամիութենական տարբեր կառույցների շինարարությանը և կատարել 14,6 միլիոն ռուբլու աշխատանք։

Ժողովրդական տնտեսությանը ուսանողների անմիջական մասնակցության



ապահովման մյուս կարևոր միջոցը արտադրության հետ սերտ կապն է։ Բուհերի կուսկազմակերպությունները մշակել են այդ կապերի ընդլայնման ու բարելավման արդյունավետ միջոցառումներ։ Այսպես, ուսանողներն ակտիվորեն մասնակցում են տնտեսական պայմանագրային և պետբյուջետային թեմաների մշակմանը, տեխնիկական և այլ կարգի մշակումների արմատավորմանը, ներգրավվում են նախագծային-կոնստրուկտորական և տեխնոլոգիական բյուրոներում, նրանց դիպլոմային աշխատանքների շատ մտահղացումներ ներդրվում են արտադրության մեջ։

Աշխատանքային դաստիարակության գործուն միջոց է ուսանողների մասնակցությունը մայրաքաղաքի բարեկարգմանն ու կանաչապատմանը։ Լենինյան, համաքաղաքային և շրջանային շաբաթօրյակների ընթացքում մեր շրջանի ուսանողությունը չտեսնված ոգևորությամբ է ներգրավվում կանաչ գոտիներ ստեղծելու, ծառեր և թփեր տնկելու գործին։ Նա հատկապես մեծ ներդրում ունի մայրաքաղաքի օղակաձև զբոսայգու բոլոր հատվածների բարեկարգման ու կանաչապատման, մայրաքաղաքը երիզող կանաչ գոտիների (Էրեբունի, Երիտասարդական պալատի շրջակայքը, ալյումինի գործարանի մերձակա ձորալանջերը) ստեղծման գործում, նրա համառ ջանքերի արգասիքն են Կոմերիտմիության 60-ամյակի և մեծ Հայրենականի 30-ամյակի անվան զբոսայգիները Նորքում։ Այս տարի պոլիտեխնիկական ինստիտուտի կոմերիտականները հանդես եկան «Յուրաքանչյուր կոմերիտական՝ մեկ ծառ» նախաձեռնությամբ։ Այն արժանացավ կոմերիտմիության և կուսակցության շրջկոմների ջերմ հավանությանը, ԼԿԵՄ շրջկոմը այդ նախաձեռնության հիման վրա կոչ ուղղեց շրջանի բոլոր պատանիներին ու աղջիկներին՝ ակտիվ կերպով մասնակցել շրջանի կանաչապատման աշխատանքներին, այն օրինակելի կանաչապատված շրջան դարձնելու շարժմանը։ Այդ նախաձեռնությունն ու կոչը լայն պաշտպանություն գտան հատկապես բուհական կոմերիտական կազմակերպություններում. տնկվեց ավելի քան 60 հազար ծառ և թուփ։

Հասուն սոցիալիզմի ընդհանուր նվաճումներին համընթաց ընդլայնվել է բարձրագույն կրթության համակարգը։ Դա իր արտահայտությունն է գտել ոչ այնքան բուհերի քանակական աճի, որքան ուսանողների ու նոր մասնագիտությունների թվի ավելացման մեջ։ Նման փոփոխություններ են կատարվել նաև մեր շրջանում։ Տարեցտարի հարստանում է նրանց նյութական բազան, բացվում են նոր ֆակուլտետներ, կազմավորվում նոր ամբիոններ ու մասնագիտական բաժիններ։ Միայն ընթացիկ հնգամյակի անցած երեք տարում մեր շրջանի բուհերի ընդլայնման նպատակին հատկացվել է 14 մլն ռուբլի։ Այդ միջոցներով կառուցվել ու գործարկվել են ուսումնական, մշակութային և արտադրական նոր համալիրներ ու շենքեր։ Այսօր բուհերն ապահովված են պրոֆեսորադասախոսական բարձրորակ կադրերով։ Եվ, բնականաբար, այդ փոփոխությունները որոշակի հետք են թողնում մեր բուհերի կյանքում։ Ընդհանուր բուհական մասշտաբով կազմակերպվող խոշոր քաղաքական միջոցառումներից բացի, միջոցներ են ձեռնարկվել գաղափարախոսական աշխատանքի ծանրության կենտրոնը կուրս և խումբ տեղափոխելու, կուրսերի ու ֆակուլտետների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով։ Այսպիսով, կուրսը դարձել է ուսումնադաստիարակչական աշխատանքի ոչ միայն վերահսկիչ օղակը, այլև կազմակերպիչը։ Կուսկազմակերպությունները դաստիարակչական գործունեությունը հիմնականում ծավալում են այդ օղակներում և միջոցառումներն իրականացնում փորձառու կոմունիստ դասախոսների ղեկավարությամբ։ Կուրսղեկները, կոմունիստ դասախոսները, մասնավորապես քաղինֆորմատորներն օգնում են կուրսերում ու անմիջականորեն ուսումնական խմբերում ուսումնադաստիարակչական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմանը։ Դա առաջին հերթին հանգեցրել է ուսանողների և դասախոսների ամենօրյա կապերի ամրապնդմանը, հատկապես հասարակական գիտությունների ամբիոնների դերի բարձրացմանը։

Այսօր մեր շրջանի բուհական իրականության մեջ առավել հատկանշական երևույթներից մեկը ամբիոնների գործունեությանն ուսանողների ակտիվ

մասնակցությունն է։ Դա առանձնապես նկատելի է հասարակագիտական ամբիոններում և բացատրվում է նրանով, որ ուսանողների մեջ աճել է հետաքրքրասիրությունը հասարակագիտության նկատմամբ։ Բարձրացել են ուսման առաջադիմությունը և որակը հասարակագիտական առարկաներից։ Ներկայումս առաջադիմությունը կազմում է 97—98 տոկոս, որը չի զիջում Միության առաջավոր բուհերի նույն ցուցանիշը։ Պատահական չէ, որ վերջին տարիներս կտրուկ աճել է այն ուսանողների թիվը, որոնք մասնակցում են հասարակական գիտությունների հանրապետական և համամիութենական մրցույթներին։

Մեր ուսանողների կողմնորոշման մեջ առկա են բուհական կրթության պրոֆեսիոնալ և ակադեմիական կողմերի գնահատման որոշակի փոփոխություններ։ Նկատվում է պրոֆեսիոնալիզմով միակողմանի տարվածության միտում՝ ի վնաս ակադեմիզմի։ Տուրք տալով նեղ մասնագիտացմանը՝ ուսանողների մի մասը ձգտում է յուրացնել ուսումնական ծրագրի այն մասը, որը նա համարում է անհրաժեշտ՝ ապագայում իր մասնագիտական ֆունկցիաները կատարելու համար։ Բայց դա հանգեցնում է հիմնականում միջակ գիտելիքների տեր մասնագետների պատրաստմանը։ Հետևաբար, մենք բուհերի կուսկազմակերպությունների առջև խնդիր ենք դրել միջոցներ գտնել՝ հաղթահարելու նեղ մասնագիտացումը, ապահովելու ակադեմիզմի և պրոֆեսիոնալիզմի ներդաշնակ միասնությունը։ Այս խնդրի առնչությամբ անցկացրինք սոցիոլոգիական հետազոտություններ, կատարեցինք ուսումնասիրություններ, որոնց արդյունքները, ինչպես և շրջկոմի պլենումների կոնկրետ հանձնարարականները քննարկվել են բուհերի սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Դրանց հիման վրա մշակվել են կոնկրետ միջոցառումներ, որոնք այսօր բավական դրական արդյունքներ են տալիս։

Մեր միջոցառումների ընդհանուր համակարգում առանձնահատուկ ուշադրություն ենք նվիրում ուսանողական գիտական ընկերություններին, որոնք կոչված են մեծ դեր խաղալու ոչ միայն ուսանողների մեջ գիտական աշխատանքի ճաշակ զարգացնելու գործում, այլև նրանց կոմունիստական դաստիարակության ասպարեզում։ Ուսանողական գիտական ընկերությունները կարող են հաջողությամբ նպաստել պրոֆեսիոնալիզմի և ակադեմիզմի ճիշտ զուգորդմանը։ Չպետք է աչքաթող անել այն փաստը, որ ժամանակակից մասնագետի ֆունկցիաներում, կիրառական կողմի հետ մեկտեղ, կարևոր նշանակություն ունի ակադեմիզմը։ Չէ՞ որ սովետական մասնագետը պետք է հետաքրքրությունների լայն շրջանակ ունենա։ Դեռևս ՀԿԿ XXVI համագումարում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը առաջադրեց բուհ-արտադրություն-գիտահետազոտական ինստիտուտ համալիրի ստեղծման ու դրա զարգացման անհրաժեշտությունը։ Այդ պահանջի կատարման նպատակով արդեն զգալի աշխատանք է կատարվել շրջանի բուհերում։ Բուհերի կուսկազմակերպությունները վերջին տարիներս ուսանողական գիտական ընկերությունների աշխատանքում ներգրավել են մոտավորապես երկու հազար պրոֆեսորների ու դասախոսների, բարձրացրել ուսանողների գիտական աշխատանքի մակարդակը։ Բազմաթիվ ուսանողներ ներկայացրել են մի քանի ռեֆերատներ, որոնք արտացոլում են հեղինակների սեփական ընդհանրացումները, նրանց աշխարհայեցողական բարձր մակարդակը։

Վերջին ժամանակներս որոշակի տեղաշարժեր են կատարվել ուսանողների հասարակական-քաղաքական պրակտիկայի կազմակերպման գործում, որն ավելի ու ավելի է մոտենում մասնագետի ապագա պրոֆեսիոնալ գործունեության պայմաններին։ Դրան մեծապես նպաստում է ուսանողների արտադրական պրակտիկայի ճիշտ կազմակերպումը։ Այս առումով գործերը հաջող են հատկապես պետական համալսարանում, պոլիտեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական և անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտներում։ Այդ ուսումնական հաստատությունների պրակտիկանտները ծանոթանում են ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների պատմությանն ու ավանդույթներին, մասնակցում հասարակական աշխատանքներին, կոմե-



րիտական ժողովներին, «Կոմերիտական լուսարձակի» ստուգայցերին, անցկացնում մարզական միջոցառումներ, հանդես գալիս զեկուցումներով, օգնում կոմերիտական պրոպագանդիստներին։ Հետաքրքրական է, որ նրանց արտադրական օրագրերում լրացուցիչ տեղեկություններ են գրանցվում կոլտնտեսություններում կատարած հանրօգուտ աշխատանքի մասին և դրան համապատասխան գնահատական է տրվում։

Բարձր գնահատելով կոմերիտմիության դերն ու նշանակությունը մեր երկրի տնտեսական, հասարակական, քաղաքական կյանքում, կուսակցությունը խնդիր է դնում իր կազմակերպությունների առջև՝ արմատապես բարելավել կոմերիտական շարժման ղեկավարումը, կոմերիտմիությանը ցույց տրվող օգնությունն ու աջակցությունը հատկապես երիտասարդության ռազմահայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության գործում։

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում և Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում ըստ ամենայնի արծարծվել են ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության խնդիրները։ ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. մարտյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների պարտքը համարեց զարգացնել երիտասարդության սոցիալիստական գիտակցականությունը, նրան դաստիարակել կոմունիզմի, պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության իդեալներին անսահման նվիրվածության, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ եղբայրական բարեկամության ոգով։ Այդ ասպարեզում արգասավոր աշխատանք են կատարում պետհամալսարանի, պոլիտեխնիկական, գեղարվեստաթատերական ինստիտուտները, պետկոնսերվատորիայի և շրջանի մյուս բուհերի ինտերնացիոնալ բարեկամության ակումբները, գրական խմբակները և հասարակական համալսարանները։ Նրանք բարեկամական սերտ կապեր են հաստատել արտասահմանյան 60 երկրների առաջադիմական երիտասարդական կազմակերպությունների հետ։ Շրջանի բուհերում ավանդական են դարձել եղբայրական հանրապետությունների ու հերոս քաղաքների օրերը, որոնց մասնակցում են Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Թբիլիսիի, Բաքվի, Ռիգայի, Տալլինի պատվիրակները, միութենական մյուս հանրապետությունների ներկայացուցիչները։ Ընդլայնվել են մեր բուհերի և Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Հունգարիայի և սոցիալիստական մյուս երկրների բարձրագույն դպրոցների ստեղծագործական կապերը։ Փորձի փոխանակություն է կատարվում պրոֆեսորների ու ուսանողների միջև։ Արտասահմանյան բուհերի ներկայացուցիչները մասնակցում են մեր շրջանում անցկացվող փառատոներին։ Շրջանի բուհերում սովորող 700-ից ավելի արտասահմանյան ուսանողներ սերտ կապեր են հաստատել մեր երիտասարդական կազմակերպությունների հետ։ Մեր մասնագետների օգնությամբ նրանք ստեղծել են թատերական, երաժշտական և գեղարվեստական ինքնագործունեության այլ խմբեր և ելույթներ են ունենում հանրապետության աշխատավորական կոլեկտիվների առջև։

Ռազմահայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում հարուստ փորձ է կուտակել Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի կուսակցական կազմակերպությունը։ Այդ առնչությամբ անցած տարի շրջկոմի բյուրոյում քննարկեցինք ինստիտուտի կուսկոմիտեի հաշվետվությունը։ Ինչպես ուսումնասիրությունից, այնպես էլ քննարկումից պարզվեց, որ կուսկոմիտեն և ֆակուլտետային կուսբյուրոները մեծ կարևորություն են տալիս ուսանող երիտասարդությանը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով դաստիարակելու գործին։

Ամեն տարի ինստիտուտն ավարտում են 2.700 մասնագետներ, որոնք աշխատանքի են գործուղվում մեր բոլոր 15 հանրապետությունների ավելի քան 200 քաղաքներ։ Մասնագետներ են պատրաստվում նաև արտասահմանյան մի շարք երկրների համար։ Ներկայումս տարբեր ֆակուլտետներում սովորում են

142 արտասահմանցի երիտասարդներ։ Այժմ ինստիտուտի տարբեր օղակներում գործում են ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, ռազմահայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ակումբներ, պատերազմի վետերանների խորհուրդներ։

Արգասավոր գործունեություն է ծավալում ինտերնացիոնալ բարեկամության ակումբը։ Այն սերտ կապերի մեջ է Միության 74 և սոցիալիստական երկրների մի շարք բուհերի ուսանողության հետ։ Աշխուժացել է ինստիտուտի արտասահմանցի ուսանողների հետ տարվող աշխատանքը, ամրապնդվել շրջանավարտների հետ հաստատված կապերը։ Տոնական օրերին վերջիններիս հեռագրեր են ուղարկվում։ Նրանք հրավիրվում են վերապատրաստման դասընթացների, մասնակցում ինստիտուտի միջոցառումներին, պարբերաբար իրենց մասին տեղեկություններ հաղորդում ռեկտորատին ու դեկանատներին։

Դաստիարակչական միջոցառումների համակարգում առանձնահատուկ տեղ են գրավում «Ուսանողական գարուն», «Քաղաքական երգ» ամենամյա փառատոները, որտեղ ինքնատիպ ձևով ընդհանրացվում են բուհական կազմակերպությունների ամենամյա նվաճումները։ Տոնական գարնան ամեն մի երեկոն նվիրվում է մի որոշակի թեմատիկայի։ Այդ փառատոները մասսայականություն են վայելում ուսանողների շրջանում, նպաստում բարեկամական կապերի հաստատմանը երկրի տարբեր հանրապետությունների, քաղաքների և սոցիալիստական համագործակցության երկրների ներկայացուցիչների միջև, օգնում ի հայտ բերելու մեր երիտասարդության ստեղծագործական հնարավորությունները։

Ապագա մասնագետների մեջ գաղափարաբարոյական վեհ հատկանիշների դաստիարակումը բարդ և բազմակողմանի պրոցես է, որը պահանջում է յուրաքանչյուր բուհի պրոֆեսորադասախոսական կազմի, կոլեկտիվի, կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների համատեղ ջանքերը և համաձայնեցված աշխատանքը։ Հարկավոր է ավելի շատ ջանքեր գործադրել՝ ուսանողների մեջ իրենց ուսումնական պարտականությունների կատարման համար պատասխանատվության զգացում դաստիարակելու նպատակով, նրանց ներգրավել հասարակական-քաղաքական կյանքի մեջ։ Չէ՞ որ ակտիվորեն մասնակցելով նոր կյանքի հաստատմանը և կոմունիստական հարաբերությունների ձևավորմանը՝ ուսանողները վերափոխում են իրենց հոգևոր, բարոյական և հոգեբանական նկարագիրը։ Այսօր բուհերի կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է հետևողականորեն կենսագործել ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումները, ուժեղացնել ուսանող երիտասարդության գաղափարաբարոյական ու աշխատանքային դաստիարակությունը, կատարելագործել այդ ասպարեզում տարվող կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այդ իսկ նպատակն է հետապնդում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները կենսագործելու նպատակով կուսշրջկոմի մշակած միջոցառումների պլանը։ Այն ներառում է շրջանի կուսկազմակերպություններում մինչև 1986 թվականը կատարվելիք գաղափարադաստիարակչական ու քաղաքական-մասսայական ողջ աշխատանքը։ Պլանի մի շարք բաժիններ վերաբերում են ուսանող-երիտասարդության գաղափարական, բարոյական և աշխատանքային դաստիարակության բազմաբնույթ խնդիրներին։ Մեր նպատակն է նախատեսված միջոցառումների անցկացմամբ էապես նպաստել կուսկազմակերպությունների գաղափարադաստիարակչական գործունեության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացմանը, աշխատավորների, հատկապես սովորող երիտասարդության մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, ապահովել գաղափարախոսական, կազմակերպական և տնտեսական աշխատանքի սերտ միասնությունն ու դրանց ճիշտ փոխազդեցությունը, ամեն ինչ անել, որ այսօրվա երիտասարդ ուսանողը վաղը կյանք մտնի գաղափարական ամուր կոփվածքով, քաղաքական հստակ ուղղվածությամբ, մասնագիտական գիտելիքների ամուր պաշարով։

# ԵՐԿԱՐԱԺԱՄԿԵՏ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԾՐԱԳԻՐ

**Նինա ՕՀԱՆՋԱՆՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ և սովետական ժողովուրդը լարված պայքար են ծավալել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները հետևողականորեն իրականացնելու համար։ Այդ ստեղծարար աշխատանքին նոր լիցք են հաղորդել ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումները։

Լենինականի կոմունիստները, աշխատավորական կոլեկտիվները միահամուռ հավանությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի, ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի նստաշրջանի որոշումները, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ծրագրային ճառում բովանդակվող դրույթներն ու հետևությունները և մոբիլիզացնում են իրենց ողջ ուժերն ու հնարավորությունները՝ դրանք անշեղորեն կենսագործելու համար։ Արտադրության մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը էապես նպաստում է կուսակցական կազմակերպությունների ծավալած գաղափարախոսական, մասսայական-քաղաքական նպատակադրված ու արդյունավետ աշխատանքը, որի էությունն ու բովանդակությունը բխում են ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումներից։ Պլենումը համակողմանիորեն վերլուծեց գործերի իրավիճակը կոմունիստական շինարարության կարևոր տեղամասերից մեկում՝ նոր մարդու դաստիարակության բնագավառում, նշեց գաղափարախոսական աշխատանքի բովանդակության հարստացման, դրա ձևերի ու մեթոդների կատարելագործման, կոմունիստական պրոպագանդայի արդյունավետության բարձրացման ուղիները։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից անցել է մեկ տարի։ Այդ ժամանակաշրջանում քաղաքում քիչ գործ չի կատարվել նրա որոշումների կենսագործման ասպարեզում։ Պլենումի պահանջների իրականացման կարևոր ուղիներն ու մեթոդները համակողմանիորեն քննարկվել են կուսակցության քաղկոմի պլենումում։

Հաշվի առնելով, որ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները նախանշված են երկարատև և սիստեմատիկ գործունեության համար, քաղկոմը մշակել է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ծավալման պլան։ Դրան համապատասխան 1984—1985 թթ. ընթացքում քաղաքային կոմիտեում կքննարկվեն պլենումի պահանջներից բխող մի շարք պրոբլեմային հարցեր, կիրականացվեն բազմաբնույթ միջոցառումներ։ Այսպես, քաղկոմի ընթացիկ տարվա մարտ ամսին կայացած պլենումում քննարկվեց «Գուլպա-նասկեղենի արտադրամիավորման կուսկոմիտեի հաշվետվությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների իրականացման նպատակով տարվող աշխատանքի մասին» հարցը։ Միավորման կուսկազմակերպությունը, Կենտկոմի պլենումի որոշումներին համապատասխան, մշակել և իրականացնում է մի շարք միջոցառումներ՝ ուղղված պլանների և սոցպարտավորությունների կատարման գաղափարական ապահովմամբ։ Դրան

է նպաստում կուսակցական ուսուցման, աշխատավորների տնտեսագիտական կրթության, ագիտացիոն-մասսայական աշխատանքի ողջ համակարգը։

Քաղկոմի պլենումում, կուսակցական ժողովներում քաղաքի կոմունիստները բարձր պահանջկոտության դիրքերից վերլուծել են գաղափարադաստիարակչական և մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակը, օբյեկտիվորեն գնահատել, ստուգել դրա դրական և թերի կողմերը, խստորեն քննադատել խոսքի ու գործի տարբերության կոնկրետ արտահայտությունները, նախանշել գործունեության բովանդակալից և կոնկրետ պլաններ։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումն անչափ կարևորեց բանավոր պրոպագանդայի դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում և խնդիր դրեց արմատապես բարելավել այն։ Քաղաքի կուսկազմակերպությունը պլանավորված աշխատանք է ծավալել պրոպագանդայի այդ ձևը զարգացնելու, դրա միջոցով պլենումի որոշումներն ու նյութերը ըստ ամենայնի մասսայականացնելու համար։ Այսպես, անցած մեկ տարում քաղկոմի դասախոսների և զեկուցողների, գաղափարախոսական հանձնաժողովի և «Գիտելիք» ընկերության քաղաքային կազմակերպության ուժերով հունիսյան պլենումի նյութերի վերաբերյալ աշխատավորական բոլոր կոլեկտիվներում և ուսումնական հաստատություններում կարդացվել են տասնյակ դասախոսություններ ու զեկուցումներ։ Հունիսյան պլենումի նյութերն ու որոշումները հանգամանորեն ուսումնասիրվել են կուսակցական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության բոլոր օղակներում։ Քաղաքի կուսակցական-տնտեսական ակտիվի համար ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների և նյութերի վերաբերյալ հանգամանալից զեկուցումով հանդես է եկել ՀԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. Լ. Դալլաքյանը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի կարևոր պահանջներից մեկը մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների կուսակցական ղեկավարման մակարդակի ըստ ամենայնի բարձրացումն է։ Ուստի և քաղկոմը մշտական հոգատարություն է ցուցաբերում դրանց մարտունակության և հեղինակության բարձրացման, մամուլի ղեկավարման ձևերի ու մեթոդների կատարելագործման նկատմամբ։ Գաղափարախոսական հիմնարկությունների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների սերտ համագործակցության ապահովման նպատակով 1983 թ. հուլիս ամսին անցկացրինք քաղաքային «Բանվոր» թերթի, «Լենինականյան կյանք» ռադիոհաղորդումների և բազմատպաքանակ թերթերի խմբագրությունների աշխատողների խորհրդակցություն՝ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերի բազմակողմանի պրոպագանդման, քաղաքային թերթի և ռադիոյի մոբիլիզացնող դերի, նրանց նյութերի արդյունավետության և ներգործունության բարձրացման վերաբերյալ։

Քաղկոմն իր գաղափարախոսական գործունեության մեջ կարևոր տեղ է հատկացնում ըստ բնակության վայրի տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքին։ Մեր օգնությամբ միկրոշրջանների քաղաքային խորհուրդը ըստ բնակության վայրի՝ կուլտուրայի պալատներում և տներում, ակումբներում, գրադարաններում և ագիտհրապարակներում հունիսյան պլենումի նյութերի պրոպագանդման ու մասսայականացման նպատակով կազմակերպել է դասախոսությունների, զեկուցումների և զրույցների ցիկլ։ Գաղափարախոսական աշխատանքում տարբերակված մոտեցում ապահովելու, յուրաքանչյուրի խնդիրը կոնկրետ ձևով պարզաբանելու նպատակով, 1983 թ. հուլիս—օգոստոս ամիսներին կազմակերպեցինք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ճյուղային սեմինարներ ըստ ժողտնտեսության տարբեր բնագավառների։ Յուրաքանչյուր սեմինարում մասնակիցներին տրվեցին նաև գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերի վերաբերյալ կոնկրետ հանձնարարականներ։

Քաղկոմը էկոնոմիկայի բնագավառում իր առաջնահերթ խնդիրն է համարում աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացումը, տնտեսական, սոցիալական, կազմակերպական և դաստիարակչական խնդիրների սերտ միասնության ապահովումը, աշխատանքային և արտադրական կարգա-



պահության ըստ ամենայնի ամրապնդումը, քաղաքի արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի ինտենսիվ զարգացման ապահովումը։ Դրա շնորհիվ քաղաքի աշխատավորական կոլեկտիվները բարձր ցուցանիշներով փակեցին 1983 թվականը, հաղթող դուրս եկան հանրապետական սոցմրցությունում և արժանացան ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Ընթացիկ տարում ևս գործերը հաջող են. առաջավորների շարքերը խտացել են, լայնորեն արմատավորվում են նորն ու առաջավորը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջներին համապատասխան՝ քաղկոմը մեծ ուշադրություն է նվիրում հատկապես աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային ձևի ներդրմանը։ Այսօր նոր մեթոդով գործող 1.126 բրիգադներում ընդգրկված է 16.713 բանվոր։ Բրիգադային մեթոդի ներդրման գաղափարական ապահովումը մեր առաջնահերթ գործն է։ Դրան են նվիրվել մի շարք սեմինար խորհրդակցություններ, առաջավոր փորձի փոխանակման և այլ միջոցառումներ։

Պետական պլանների և ստանձնած սոցպարտավորությունների կատարման, արտադրանքի որակի բարձրացման, արտադրական հզորությունների, հումքի, էներգիայի, աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման, կազմակերպվածության և կարգ ու կանոնի ամրապնդման համար աշխատավորների դաստիարակության կարևոր միջոցներից են դրական օրինակի ուժը, առաջավոր փորձի արմատավորումը, կոնկրետ գործոնների ցուցադրումը։ Դրանց հաշվին էլ ձեռք են բերվել տնտեսական հաջողություններ։

Մասսաների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքում քաղկոմը կարևորում է կուսակցական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության արդյունավետության բարձրացումը։ Չէ՞ որ քաղուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, ծառայում է գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի՝ մարդկանց կոմունիստական դաստիարակության հիմքի ձևավորմանը։ Այդ գործի հաջողության գլխավոր պայմանը պրոպագանդիստական կադրերի որակական կազմի արմատական բարելավումն է։ Այդ նպատակով 1983—84 ուստարվա սկզբին վերանայեցինք ու համալրեցինք նրանց կազմը, ստեղծեցինք քաղուսուցման 14 նոր դպրոցներ՝ 182 ունկնդիրներով։

Ունկնդիրների մեջ սերմանելով մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների, քաղաքական և տնտեսագիտական գրականության հետ աշխատելու ունակություններ՝ ուսուցման բոլոր օղակների ղեկավարները ոչ միայն ապահովում են նրանց կողմից տեսության խոր յուրացումը, համակողմանի լուսաբանում կոմունիստական կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, այլ նաև օգնում են նրանց՝ խորությամբ ըմբռնելու հասարակության զարգացման պրոցեսներն ու երևույթները։ Պրակտիկան ցույց է տալիս, որ նման ձևով հնարավոր է լինում ապահովել անցումը պարզունակ իրազեկությունից դեպի քաղաքական կուլտուրայի հիմունքները, խոր գիտակցականությունն ու համոզվածությունը։ Նրանք անհատին հնարավորություն են տալիս իր քաղաքական կուլտուրան իրականացնելու կոնկրետ գործերում։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործին մեծ օգնություն է ցույց տալիս քաղկոմի գաղափարական հանձնաժողովը, որի կազմում գործում են չորս սեկցիաներ՝ երիտասարդության, հայրենադարձների, ըստ բնակության վայրի տարվող, մասսայական-քաղաքական և կուլտուրդաստիարակչական աշխատանքի և սոցիոլոգիական հետազոտությունների խումբ։ Անհրաժեշտ ուշադրություն նվիրելով հանձնաժողովի և սեկցիաների կազմում ընդգրկված մարդկանց պատրաստվածությանը՝ նրանց առջև դրել ենք կոնկրետ խնդիրներ, որոնց իրականացումը հնարավորություն կընձեռի կատարելագործելու գաղափարադաստիարակչական աշխատանքը, այդ գործի նկատմամբ ցուցաբերելու կոմպլեքսային մոտեցում։ Կուսքաղկոմը սկզբնական կուսկազմակերպությունների, ՀԼԿԵՄ քաղկոմի հետ համատեղ, սիստեմատիկորեն

պրոպագանդում է լենինյան պատգամները, կուսակցության որոշումները, ՍՍՀՄ սահմանադրության պահանջները և պետական խորհրդանիշները։ Աշխատանքի ձևերը տարբեր են՝ թեմատիկ երեկոներ՝ կուսակցության, պատերազմի և աշխատանքի վետերանների մասնակցությամբ, զորակոչիկների հանդիսավոր ճանապարհում սովետական բանակ և այլն։ Օրինակ, 1983 թ. նոյեմբերին, ի պատիվ Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար զոհված հերոսների հիշատակի, անցկացրինք համաքաղաքային «Հեղափոխական ավանդույթների օր»։

Իրենց գործունեությունը նկատելիորեն ակտիվացրել են ձեռնարկությունների, ուսումնական հաստատությունների, հանրակացարանների և կուլտուրայի օջախների աշխատանքային փառքի թանգարաններն ու լենինյան սենյակները։

Մեր գործունեությունը կոորդինացնելով վետերանների քաղաքային խորհրդի հետ՝ հասել ենք այն բանին, որ այսօր քաղաքի ավելի քան 550 առաջավոր բանվորներ՝ վարպետ-դաստիարակներ, աշխատանքի լավագույն ավանդույթների ոգով են դաստիարակում շուրջ երկու հազար երիտասարդների։ Հատուկ ուշադրություն է նվիրվում անչափահասների հետ տարվող աշխատանքին։ Անցած տարվա սեպտեմբերին քաղկոմում ընդհանրացվեց երեխաների և անչափահասների հետ տարվող աշխատանքի կազմակերպման փորձը։ Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց դպրոցներում և դպրոցից դուրս դաստիարակչական աշխատանքների միասնության ապահովմանը, այդ ասպարեզում միկրոշրջանների խորհուրդների գործունեությանը, անչափահասների կողմից կատարվող իրավախախտումների նվազեցման տենդենցի կայունացմանը։

Բնավ չժխտելով հին, բայց լավ ավանդույթների դաստիարակիչ դերը՝ հարկավոր է ստեղծել նոր ավանդույթներ, որոնք բխեն աշխատավորների շահերից ու հետաքրքրություններից, ճանապարհ հարթեն իրենց համար։ Այս առնչությամբ դաստիարակչական կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական ծեսերի մշտական նորացումն ու դրանց ներդրման ձևերի ու մեթոդների կատարելագործումը։ Մեծ հետաքրքրություն են հարուցում հատկապես «Շիրակի ձմեռ», «Ոսկե աշուն» միջոցառումները, «Աշխատանքի տոն», «Ծաղկի տոն», «Փողոցի տոն», «Բակի և հրապարակների տոն» մասսայական տոները և այլն։ Այսպես, միայն 1983 թ. անցկացվել են Վ. Կինգիսեպի փողոցի տոնը՝ նվիրված Էստոնական ՍՍՀ-ին, Մ. Ազիզբեկովի փողոցինը՝ Ադրբեջանական ՍՍՀ-ին, Ա. Ջափարիձեի փողոցինը՝ Վրացական ՍՍՀ-ին։ Ավանդույթ է դարձել յուրաքանչյուր տարի «Լենինի հրապարակը քաղաքի սիրտն է» նշանաբանով համաքաղաքային հավաքի կազմակերպումը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը խնդիր դրեց գաղափարախոսական կադրերի համար ստեղծել անհրաժեշտ պայմաններ, հոգ տանել նրանց որակավորումը սիստեմատիկաբար բարձրացնելու մասին, նրանց գործունեության գնահատման չափանիշը համարել մասսաների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության մակարդակը։ Պլենումի այդ պահանջը մեզ համար գործողության ուղեցույց է և ձգտում ենք հետևողականորեն կատարել այն։ Հատկապես լուրջ ուշադրություն ենք նվիրում բոլոր ղեկավար աշխատողների գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը և նրանց բարոյական հատկանիշների կատարելագործմանը, ձգտում ենք, որ նրանք ճիշտ կողմնորոշվեն անձնական հարաբերությունների հարցերում, կարողանան արագ ընկալել դրանցում կատարվող փոփոխությունները, կոլեկտիվներում մշտապես պահպանել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ։ Նկատելիորեն աշխուժացել է կուսակցական-տնտեսական, գաղափարախոսական ակտիվի, երիտասարդ կոմունիստների դպրոցների աշխատանքը։ Դրանցում ընդգրկված են 320 ունկնդիրներ։ Համաձայն հաստատված պլանի՝ գաղափարախոսական ակտիվի տարբեր կատեգորիաների համար ամիսը երկու անգամ կազմակերպում ենք «Ինֆորմացիայի օր»։

Կուսքաղկոմում սկսած 1976 թ. գործում է գաղափարախոսական աշխատանքի առաջավոր փորձի կաբինետ, որտեղ այդ բնագավառի ակտիվը կարող է ծանոթանալ ինչպես Լենինականի, այնպես էլ երկրի մի շարք քաղաքների



կուսկազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի առաջավոր փորձի նյութերին։ Գաղափարախոսական կադրերի կողմից մարդկանց հետ հաղորդակցվելու, նրանց ցանկություններն ու առաջարկությունները իմանալու լավագույն միջոց են նաև միասնական քաղօրերը, որոնց ընթացքում արված քննադատական դիտողությունների ու արժեքավոր առաջարկությունների իրականացումը կուսքաղկոմը համարում է յուրաքանչյուր կազմակերպության գաղափարախոսական, տնտեսական կադրերի առաջնահերթ խնդիրը և ջանում է, որ դրանք անցնեն բարձր մակարդակով ու որոշակի հետք թողնեն կոլեկտիվի կյանքում։ Պրակտիկա է դարձել «Բաց նամակի օրերի» անցկացումը։

Գաղափարախոսական աշխատանքի լավ կազմակերպման և համոզիչ լինելու կարևոր հանգամանքներից մեկը նրա սոցիալ-տնտեսական ապահովումն է, որի կոնկրետ իրագործումը քաղկոմի գործունեության էական կողմերից է։ Դրան է նպատակամղվում նաև սկզբնական կուսկազմակերպությունների և տնտեսական ղեկավարների գործունեությունը։ Եվ երբ քաղկոմը քննարկում է որևէ ձեռնարկության հարց, ապա անպայման ուշադրություն է նվիրում նաև գաղափարախոսական աշխատանքի սոցիալ-տնտեսական ապահովման նպատակով կատարվող աշխատանքին։ Քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններն իրենց սոցիալ-տնտեսական զարգացման պլաններում նախատեսում են նաև կոլեկտիվի անդամների աշխատանքային, բնակարանային, հանգստի և կուլտուրկենցաղային պայմանների բարելավման միջոցառումներ։ Բնորոշ է շինարարական մեքենաների գործարանի օրինակը։ Վերջին ժամանակներս ձեռնարկության երեք արտադրամասերում ստեղծվել են կենցաղի ժամանակակից սենյակներ, ընթացիկ տարում կգործարկվի ևս երկուսը։ Նրա տարածքում կառուցվել են պտուղ-բանջարեղենի և խոհարարական արտադրանքի խանութներ, վարսավիրանոց, բացվել է ատամնաբուժական կետ, շինություններից մեկը վերակառուցվել է որպես հանրակացարան։ Նախատեսվում է կառուցել կենցաղսպասարկման համալիր և բնակելի շենք։ Միջոցներ են ձեռնարկվել աշխատողների տրանսպորտային սպասարկումը բարելավելու համար։ Քաղկոմի բյուրոն ընթացիկ տարվա մայիս ամսին քննարկեց գործարանի դիրեկտորի հաշվետվությունը գաղափարախոսական աշխատանքի սոցիալական և տնտեսական ապահովման նպատակով կատարվող աշխատանքի մասին։ Դրական գործերի հետ միասին բացահայտվեցին նաև տեղ գտած թերությունները և նշվեցին դրանց վերացման ուղիները։ Հարցի քննարկումը, անշուշտ, խորհելու առիթ տվեց նաև մյուս հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին։

Կուսքաղկոմի գաղափարադաստիարակչական գործունեության մեջ պրակտիկա է դարձել գաղափարախոսական աշխատանքի մշտական վերլուծությունը, որը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի կարևոր պահանջներից է։ Այդ նպատակով մեր հրապարակած գրքույկում ամփոփվում են անհրաժեշտ տվյալներ (թվական և այլն) գաղափարախոսական աշխատանքի բոլոր ուղղությունների վերաբերյալ՝ ըստ տարիների։ Այն օգնում է մեզ՝ վերլուծության արդյունքների հիման վրա կողմնորոշվել դեպի առավել ուշադրություն և հետևողականություն պահանջող բնագավառը, ձեռնամուխ լինել անհրաժեշտ աշխատանքի։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը անչափ կարևորեց սոցիոլոգիական հետազոտությունների դերը աշխատավորների շրջանում տարվող գաղափարախոսական աշխատանքը կատարելագործելու առումով։ Պլենումի պահանջին համապատասխան՝ քաղկոմն իր գործունեության մեջ հատուկ տեղ է հատկացնում սոցիոլոգիական հետազոտություններին։ Այդ նպատակով ստեղծել ենք հատուկ խումբ, որը տարեկան կատարում է երկու-երեք հարցում՝ նվիրված բնակչության տարբեր խավերին հուզող խնդիրներին ու պրոբլեմներին։

Մասսաների շրջանում տարվող գաղափարախոսական աշխատանքում էական նշանակություն ունի նպատակային և ներգործուն ցուցադրական ագիտացիան։ Ահա թե ինչու, ժամանակի պահանջին համապատասխան, անընդհատ նորացվում, թարմացվում են քաղաքի ցուցադրական միջոցները։ Դրանց աշխուժացման նկատմամբ մշտական հոգատարություն է դրսևորում ցուցադրական ագիտացիայի քաղաքային խորհուրդը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի հիմնադրույթներից մեկը վերաբերում է հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմին։ Համաժողովրդական, համապետական նշանակություն այս գործի հաջող իրականացումը պահանջում է կազմակերպական, մասսայական-քաղաքական մեծ աշխատանք։ Քաղկոմի պլենումը, ընթացիկ տարվա մայիս ամսին քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի արդյունքները և պլենումի որոշումներից ու պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառից բխող՝ քաղաքի կուսակցական կազմակերպության խնդիրները, մշակել է հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացման համալիր միջոցառումներ։

Ռեֆորմի իրականացումը հնարավորություն կընձեռի արմատապես բարելավել դպրոցականների աշխատանքային դաստիարակությունն ու մասնագիտական կողմնորոշումը։ Տարիներ շարունակ քաղկոմը հատուկ ուշադրություն է նվիրում դպրոց-արտադրություն կապի ամրապնդմանը և հասել է, կարելի է ասել, շոշափելի արդյունքների։ Բոլորովին վերջերս քաղկոմն ուսումնասիրեց այդ ասպարեզում Մ. Նալբանդյանի անվան № 11 դպրոցի և էլեկտրատեխնիկական գործարանի համատեղ աշխատանքի փորձը և խորհուրդ տվեց սկզբնական կուսկազմակերպություններին, հանրակրթական և պրոֆեսիոնալ դըպրոցի ռեֆորմի պահանջների հիման վրա, այն ստեղծագործաբար զարգացնել ու օգտագործել դպրոցականների աշխատանքային դաստիարակության, մասնագիտական կողմնորոշման համար տարվող աշխատանքում։ Դպրոցի 9—10-րդ դասարանցիների արտադրական պրակտիկան կազմակերպվում է անմիջականորեն գործարանի արտադրամասերում։ Աշակերտական են կոչվում ձեռնարկության №№ 2, 3 արտադրամասերը, որտեղ դպրոցականները փորձված վարպետ-դաստիարակների օգնությամբ և ղեկավարությամբ հմտանում են բանվորական մասնագիտությունների մեջ։ Դպրոցի և գործարանի կոլեկտիվների միջև գործարար սոցիալիստական մրցություն է ծավալվել՝ «Հանուն ուսման և աշխատանքի որակի բարձրացման» նշանաբանով։ «Առաջին բանվորական օր, առաջին արտադրանք», «Աշխատանքը փառքի և պատվի գործ է», «Բրիգադի իսկական անդամ» կոչման շնորհմանը նվիրված և այլ համատեղ միջոցառումները նպաստում են դպրոցականների մասնագիտական ճիշտ կողմնորոշմանը, նրանց մեջ բանվորական մասնագիտությունների նկատմամբ վեհ զգացումների ձևավորմանը։ Արդյունավետ է «Դպրոց-արտադրություն» ակումբի գործունեությունը, որտեղ ընդգրկված են 8—10-րդ դասարանների՝ աշխատանքի հակում ունեցող աշակերտները։ Ձեռնարկության արտադրական պլանների հաջող կատարման գործում իրենց համեստ ներդրումն ունեն աշակերտական արտադրական բրիգադներում ընդգրկված 50-ից ավելի բարձրդասարանցիներ։ Ձեռնարկությունն իր հերթին նպաստավոր պայմաններ է ստեղծում դպրոցականների աշխատանքային դաստիարակությունն ամուր հիմքերի վրա դնելու համար, մեծ հոգատարություն է ցուցաբերում դպրոցի նյութատեխնիկական բազայի ամրապնդման նկատմամբ։

Կուսակցությունը մշտապես նոր պահանջներ է ներկայացնում գաղափարախոսական աշխատանքի բարելավմանը, դրա արդյունավետության և ներգործունության բարձրացմանը։ Գաղափարախոսական աշխատանքի կատարելագործումը, բոլոր բնագավառներում դրա ներգործունության ուժեղացումը յուրաքանչյուր կուսկազմակերպության առաջնահերթ գործն է։ Ուղենիշ ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները՝ ՀԿԿ Լենինականի քաղկոմը, հենվելով ձեռք բերված փորձի վրա, ձգտում է ամենօրյա գործունեությամբ նոր աստիճանի բարձրացնել մասսաների շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, այն նպատակաուղղել մեր առջև ծառացած խնդիրների իրականացմանը։ Մենք ելնում ենք այն իրողությունից, որ Կենտկոմի որոշումները կուսակցության գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի երկարաժամկետ ծրագիր են։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ


**Ա. ԲՐՈՒՏՅԱՆ**
Մարալիկի Ձերժինսկու անվան կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար


ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴՐԱԾ տնտեսական ու քաղաքական արմատական խնդիրների իրականացման գործում վճռական դեր է խաղում աշխատավորական մասսաների քաղաքական գիտակցականության և աշխատանքային ակտիվության բարձրացումը։ Հենց դրանով է այսօր չափվում նրանց շրջանում տարվող գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը։ Մեր կյանքում վիթխարի կարևորության իրադարձություն էր ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը, որը քննարկեց կուսակցության գաղափարախոսական, մասսայական, քաղաքական աշխատանքի հետագա բարելավման հարցը։ Պլենումում առանձնակի նշվեց, որ բոլոր աստիճանի կուսակցական կոմիտեները, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է ըմբռնեն, որ բոլոր այլ հարցերի ամբողջ կարևորությամբ հանդերձ, որոնցով նրանց հարկ է լինում զբաղվել (տնտեսական, կազմակերպական և այլ հարցեր), գաղափարախոսական աշխատանքը է՛լ ավելի է մղվում առաջին պլան (տե՛ս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, էջ 6)։

Կուսկազմակերպությունների առջև ներկայումս ծառացած խնդիրների լուծմանն է ուղղված նաև Անիի շրջանի Մարալիկի Ձերժինսկու անվան կոլտնտեսության կուսկազմակերպության և նրա բյուրոյի գործունեությունը։ Հունիսյան պլենումից հետո կուսկազմակերպությունը նոր լիցք հաղորդեց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքին, միջոցներ ձեռնարկեց այն արմատապես բարելավելու և աշխուժացնելու համար։ Գաղափարախոսական աշխատանքի հարցերն այժմ ավելի հաճախ են լուրջ քննարկման առարկա դառնում կուսբյուրոյի նիստերում ու կուսժողովներում, էապես մեծացել է կոմունիստների պատասխանատվությունն իրենց քաղաքական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Բնականաբար, աճել է պահանջկոտությունը նաև կուսակցական ու կոմերիտական քաղուսուցման, տընտեսագիտական կրթության համակարգի պրոպագանդիստների, քաղինֆորմատորների և ագիտատորների հանդեպ, վերանայվել է նրանց կազմը, մշակվել են պարապմունքների վարման, քաղինֆորմացիաների և ագիտացիոն զրույցների արդյունավետության բարձրացման միջոցառումներ։ Գաղափարախոսական բնագավառի կադրերի առջև խնդիր է դրվել՝ տեսական նյութերի հաղորդումը, կուսակցության որոշումների, մեր երկրի արտաքին ու ներքին քաղաքականության հարցերի պարզաբանումը սերտորեն շաղկապել կոլտնտեսության և շրջանի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրների հետ, մոբիլիզացնել աշխատավորության, կոմունիստների ուժերը դրանց անթերի լուծման համար։ Նկատելիորեն բարելավվել է նաև սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման, ցուցադրական-դիտողական ագիտացիայի գործը։ Մի խոսքով, գաղափարախոսական աշխատանքի ողջ զինանոցը ի սպաս

Դրա նախագծային արժեքը կազմում էր ութ միլիոն ռուբլի։ Եվ ահա ագիտացիոն զրույցների, քաղինֆորմացիաների, կուսակցական ու կոմերիտական քաղուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության դպրոցների պարապմունքների ժամանակ կոնկրետ թվերով և օրինակներով մեր մարդկանց բացատրվեց դրա տնտեսական շահավետությունը։

Արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսականների ընդհանուր ժողովի մասնակիցները միահամուռ քվեարկեցին հօգուտ այդ մեծ ծավալի կառույցը սկսելու և պետական վարկի ու տնտեսության եկամուտների հաշվին անասնահամալիրի ծախսերը ֆինանսավորելու օգտին։ Եվ այժմ նախկին Զորաշեն գյուղի տարածքում 800 գլուխ կովի, խոշոր եղջերավոր անասունների 900 գլուխ տոհմային մատղաշի աճեցման համար նախատեսված համալիրը կառուցվում է արագ թափով, իսկ դրա 5.000 գլուխ ոչխարի աճեցման սեկտորն արդեն գործարկման նախօրեին է։ Համալիրի գործարկմամբ երեք անգամ կավելանա կաթի, երկու անգամ՝ մսի, մեկուկես անգամ՝ բրդի արտադրությունը։ Տնտեսությունը նկատելի ավանդ կներդնի պարենային ծրագրի կատարման գործում։ Այդ ամենի շնորհիվ զգալիորեն կավելանան տնտեսության եկամուտները, որոնք կնպատակամղվեն կոլտնտեսության անդամների սոցիալ-կուլտուրական պայմանների բարելավմանը, եկամուտների ավելացմանը։

Ո՞րն է կարևորն ու գնահատելին։ Ես կասեի, առաջին հերթին, մեր մարդկանց բարձր գիտակցականությունը, նրանց պետական մտածողությունը, քաղաքական և աշխատանքային մեծ ակտիվությունը, լավագույն մտահղացումները կյանքի կոչելու պատրաստակամությունը։ Ահա բնորոշ մի օրինակ։ Մի խումբ կոլտնտեսականներ, կտավատի մշակությունը մեղանում վերականգնելու նախաձեռնություն-առաջարկությամբ դիմեցին կոլտնտեսության վարչությանն ու կուսբյուրոյին։ Եվ մենք, կոլտնտեսության վարչության հետ համատեղ, քննարկեցինք այդ առաջարկությունը։ Ծանր ու թեթև անելով տնտեսության հնարավորությունները՝ որոշեցինք, ի հաշիվ միջին բերքատվության ավելացման, հացահատիկի համար օգտագործվող հողատարածությունից 25—30 հեկտար հատկացնել կտավատի ցանքին։ Առաջին արդյունքը տնտեսապես օգտավետ եղավ. տնտեսության զուտ եկամուտն ավելացավ 27 հազար ռուբլով։ Հարցի կարևորությունը ոչ միայն կտավատի մշակման օգտավետությունն է, այլև այն, որ կոլտնտեսականները շահագրգռություն են հանդես բերում պարենային ծրագրի կատարման գործում, գիտակցական վերաբերմունք դրսևորում հողի մշակման արդյունավետության բարձրացման հարցերում։

Քաղաքական-գաղափարախոսական աշխատանքի բարձր արդյունավետության արդյունք է և այն, որ տնտեսությունում մի տեսակ պաշտամունք է ստեղծվել հողի նկատմամբ։ Կոլտնտեսության հողատարածությունները բնականից այնքան էլ հարուստ ու մեքենահարմար չեն եղել։ Այդպիսին դարձել են աշխատանքի և միջոցների խելամիտ ներդրման, մեր մարդկանց համառ ջանքերի ու նվիրումի շնորհիվ։ Տարիներ շարունակ կուսկազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը հետևողականորեն զբաղվել են հողատարածությունների բարելավման, մելիորացման, հարթեցման հարցերով։ Միջնակների վերացման ու քարակույտերի հեռացման միջոցով փոքրիկ հողակտորներից զանգվածային վարելահողեր են ստեղծվել։ Հիշում եմ, տարիներ առաջ մեխանիզատորները դժգոհում էին. «Դաշտը քարքարոտ է, էլ կանգնակ չմնաց, մի քանի ակոսից հետո գութանի կանգնակները ջարդվում են»։ Նրանց դժգոհությունը տեղին էր։ Իրոք, հողահանդակները խիստ քարքարոտ էին։ Բայց եթե արորով կամ եզան գութանով վարելիս հեշտ էր շրջանցել դաշտի կենտրոնում եղած քարակույտերը, և խոփը չէր հասնում ընդգետնյա քարերին, ապա ժամանակակից հզոր տրակտորային գութանով մշակելիս ընդգետնյա քարերն ու վերգետնյա քարակույտերը, փոքրիկ հողակտորները մեծ դժվարություններ էին առաջացնում։

Կուսկազմակերպությունը մեծ աշխատանք ծավալեց հողի բարելավման նպատակով։ Այդ խնդրին առնչվող հարցերը քննարկվեցին կուսժողովներում ու



բյուրոյի նիստերում։ Դրան քանիցս անդրադարձավ նաև կոլտնտեսության վարչությունը։ Մեր համատեղ ջանքերի շնորհիվ տնտեսությունում ծավալվեց հայրենասիրական շարժում՝ «Հողի ուժը նրա տիրոջ վերաբերմունքի մեջ է» նշանաբանով։ «Գյուղտեխնիկայի» մելիորացիոն ջոկատի աշխատանքներին զուգընթաց՝ կոլտնտեսականները ևս ձեռնամուխ եղան սեփական ուժերով դաշտերը քարերից մաքրելու գործին։ Այն կատարվում էր հողամշակման միջսեզոնային ժամանակամիջոցում, դաշտային աշխատանքների համար քիչ բարենպաստ օրերին։ Այսօր էլ մարալիկցիները շարունակում են իրենց հայրենանվեր գործը։

Մեր կոլտնտեսությունն այսօր ունի հզոր մեքենայական պարկ. ավելի քան 30 տրակտոր, մոտ 40 միավոր տարբեր նշանակության ավտոմեքենա, գյուղատնտեսական բազմաբնույթ և բազմատեսակ տեխնիկա։ Տարեկան ծախսվում է 220—230 տոննա բենզին, այդքան էլ դիզելային վառելանյութ։ Պատահում են դեպքեր, երբ խափանումներ են լինում վառելանյութերի մատակարարման գործում, բենզին չլինելու պատճառով առանձին օրեր ավտոմեքենաներն անգործության են մատնվում։ Այդպիսի դեպքերից մեկի ժամանակ տնտեսության բազմափորձ վարորդ Ա. Ասլանյանն իր գործընկերներին ասաց. «Շատ ու միշտ ունենալու համար պետք է խնայել»։ Այդ խորիմաստ խոսքը առիթ դարձավ պայքար ծավալելու վառելանյութի խնայողության համար։ Վարորդներն սկսեցին աշխատել, որքան հնարավոր է, երկկողմանի բեռնվածությամբ։

Կուսբյուրոն ակտիվ աշխատանք ծավալեց խնայողությունը բոլոր տեղամասերում արմատավորելու համար. բարձրացվեց այդ գործին առնչվող աշխատողների պատասխանատվությունը, բարելավվեց հաշվառումը, խնայողություն ապահովողները խրախուսվեցին, ավելի սրտացավ վերաբերմունք արմատավորվեց հանրային ունեցվածքի նկատմամբ։

Կոլտնտեսականների շրջանում ծավալված գաղափարաքաղաքական գործունեությունը մենք ուղղում ենք նրանց մոտ աշխատանքի նկատմամբ ճիշտ վերաբերմունքի դաստիարակմանը։ Հիշեմ այսպիսի մի դեպք։ Ֆերմայի վարիչը դժգոհեց, թե՝ «Մարտինն էսօր էլի խմած էր, հորթերի առաջ մի քիչ կեր գցեց ու գնաց տուն»։

Մարտինի հետ ունեցած զրույցի ժամանակ նրան հիշեցրինք, որ անբավարար խնամքի պատճառով հորթերից ցածր քաշաճ կստանա, հետևաբար և՝ քիչ եկամուտ։ Նա էլ թե՝ «Եղածն էլ ինձ հերիք է, ինչի՞ս է պետք»։ Հարկ եղավ ինչպես Մարտինի, այնպես էլ նրա նման խմիչքին տուրք տվող մի քանի այլ կոլտնտեսականների հետ սիստեմատիկ աշխատանք տանել։ Նրանց բացատրում էինք, որ իրենց հանձնարարված աշխատանքի արդյունքում պետք է տեսնել ոչ միայն սեփական եկամուտը, այլև գիտենալ, որ անհատական ջանքերի պտուղները սոսկ իր՝ տվյալ աշխատողի, համար չեն։ Այդ ջանքերից է գոյանում և հանրային ունեցվածքը։

Ձեռնարկված միջոցները զգալի տեղաշարժ առաջ բերեցին տնտեսությունում թափթփվածությունը, աշխատանքային պարտականությունների նկատմամբ առանձին կոլտնտեսականների անպատասխանատու վերաբերմունքը հաղթահարելու ճանապարհին։ Այժմ թե՛ Մարտինը, թե՛ նրա գործընկերները, որոնք զբաղված են մատղաշի նպատակային խնամքով, նորմայից ավելի քաշաճ են ապահովում և տարեկան 12—12,5 տոննա միս հանձնում։

Հողից առավելագույնը ստանալու, ավելի շատ և բարձրորակ անասնապահական մթերքներ արտադրելու ձգտումը, պետական պլանների կատարումը մեր կոլտնտեսականների համար դարձել են մի տեսակ ներքին պահանջ։ Նրանց նման աշխատանքի է մղում ոչ միայն այն բանի գիտակցումը, որ առաջադրանքների գերակատարումը հավելյալ վաստակ է բերում, այլև այն, որ մեղանում փառք ու պատիվը ըստ ներդրած ջանքերի են տրվում, որ նվիրված աշխատանքը, լավագույն նախաձեռնությունը միշտ էլ ղեկավար մարմինների և ողջ կոլեկտիվի ուշադրության կենտրոնում են, խրախուսվում են ըստ ամենայնի։

Կոլտնտեսությունում այժմ շատ շատերն են գործին մոտենում պարտքի ողջ գիտակցությամբ, անմնացորդ նվիրումով։ Սկզբունքային կոմունիստ ղեկավարի լավ օրինակ է կոլտնտեսության հմուտ և փորձառու նախագահ Ս. Նազարյանը, որին շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում։ Իրենց բարեխիղճ աշխատանքով տնտեսությունում ու շրջանում լայն ճանաչում են գտել տրակտորիստ-մեքենավարներ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ս. Առաքելյանը, «Պատվո նշան» շքանշանի ասպետներ Ն. Սաֆարյանը, Վ. Ուռումյանը, Մ. Իսպիրյանը, Հ. Մկրտչյանը, կթվորուհիներ, Լենինի շքանշանակիր Լուսիկ Փիլոյանը, «Պատվո նշան»-ի շքանշանակիրներ Մանիկ Բրուտյանը, Անթելինա Հայրապետյանը, Ֆենյա Կարապետյանը, շքանշանակիր հովիվներ Ծ. Հայրապետյանը, Լ. Սարգսյանը և շատ ուրիշներ։ Նրանք իրենց օրինակով խանդավառում են մյուսներին, աշխատանքի նկատմամբ սեր ու նվիրվածություն դաստիարակում երիտասարդ կոլտնտեսականների մոտ։

Կոլտնտեսությունում լայն տարածում է գտնում անկարգագիր, բրիգադային մեթոդով աշխատանքի կազմակերպումը։ Կոլտնտեսության ջերմատան աշխատողները և մատղաշի խնամքով ու աճեցմամբ զբաղվող անասնապահներն արդեն անցել են կապալային եղանակի կիրառմանը։ Նման ձևով կաշխատեն նաև շարահերկ կուլտուրաների մշակությամբ զբաղվող դաշտավարները։

Ճիշտ է ասված, թե գաղափարախոսական արդյունավետ գործունեության չափանիշը մասսաների քաղաքական գիտակցականության և աշխատանքային ակտիվության բարձր մակարդակն է։ Մեր կոլտնտեսության մարդիկ իրենց գործերով, հանրային արտադրության և ունեցվածքի հանդեպ իրենց դրսևորած ազնիվ ու գիտակցական վերաբերմունքով այդ իրողության ցայտուն օրինակ են տալիս։ Մենք ամեն ինչ անում ենք աշխատավորներին գաղափարապես զինելու և նրանց ակտիվությունը ըստ ամենայնի բարձրացնելու համար։

---



# ԻՆՔՆԱԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ԱԶԴԱԿ

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ բնորոշ հատկանիշներից են նրա հումանիստական էությունը, սովետական մարդկանց բարեկեցության, նյութական ու հոգևոր պահանջմունքների հարաճուն բարձրացումը։ Նոր մարդու կերպավորման պրոբլեմները եղել ու մնում են կոմունիստական շինարարության ոչ միայն կարևորագույն նպատակը, այլև պարտադիր նախապայմանը։ Այս հիմնադրույթն առանձնապես կարևորվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում, որտեղ կուսակցությունն առաջադրեց երկարաժամկետ նշանակության գաղափարախոսական գործունեության ծրագիր։ «Պլենումի որոշումները հուժկու ազդակ հանդիսացան գաղափարադաստիարակչական, մասսայական-քաղաքական աշխատանքը բոլոր բնագավառներում կատարելագործելու համար»,— նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն Մոսկվայի մետալուրգների հետ ունեցած հանդիպման ժամանակ։ Մեր առաջընթացի արդի փուլը կուսակցությունը բնութագրում է որպես զարգացած սոցիալիզմի պլանաչափ ու բազմակողմանի կատարելագործում։ Կուսակցության առաջադրած բարդ և ծավալուն խնդիրները հնարավոր չէ լուծել, իհարկե, առանց բուն մարդու՝ նոր հասարակության ակտիվ, համոզված կառուցողի, հայրենասերի և ինտերնացիոնալիստի կատարելագործման։ Հետևողականորեն աճում են պահանջները սովետական մարդու, նրա քաղաքական ու բարոյական դաստիարակվածության, աշխատանքի որակի, հասարակական ակտիվության նկատմամբ։

Մեզանում ամեն մի գիտակից մարդ հասկանում է, որ ինչքան շատ է ինքը ստանում հասարակությունից, այնքան շատ պետք է տա հասարակությանը, ավելի լավ աշխատի, բազմապատկի համաժողովրդական սեփականությունը։

Նոր կյանքի կառուցումը յուրաքանչյուր մարդուց պահանջում է բոլոր ուժերի և ունակությունների ակտիվացում։ Ինքնադաստիարակմամբ անհատը բազմապատկում է իր հնարավորությունները, հասնում առավելագույնս հասարակությանը հատույց տալու կարողության։ Ինքնադաստիարակությունն ունի և անձնական նշանակություն։ Այն նպաստում է պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործմանը, որն առնչվում է անհատի նյութական ու հոգևոր շահագրգռությունների հետ։

Հայտնի է, որ մարդու էությունը ոչ թե նրա կենսաբանական կառուցվածքն է, այլ սոցիալական առնչությունների, հոգևոր նկարագիրը։ Կ. Մարքսը նկատել է, որ անհատի էությունը «կազմում է ոչ թե միրուքը, արյունը, նրա աբստրակտ ֆիզիկական բնությունը, այլ նրա սոցիալական որակը...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 242)։ Ինչպես նյութական ու հոգևոր արժեքներ արտադրելիս, այնպես և սոցիալական պրոբլեմներ լուծելիս, մտնելով տարբեր մարդկանց հետ բազմապիսի հարաբերությունների մեջ, ձե-

վավորվում են անհատի քաղաքացիական հատկանիշները: Մարդն իր էությամբ ոչ այլ ինչ է,— ասել է Կ. Մարքսը,— քան բոլոր հասարակական հարաբերությունների միագումարը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 3):

Անհատը կերպավորվում է սոցիալ-տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական ու հոգեբանական հարաբերությունների համակարգում: Այդ կապակցություններում նա ոչ միայն օբյեկտ է, այլև սուբյեկտ: Աշխատանքի պրոցեսում, հասարակական գործունեության ու հանգստի ժամին հաղորդակցվելիս նա արտացոլում է ստեղծված հարաբերությունները և ակտիվ ներազդում դրանց վրա:

Իբրև հասարակական էակ անհատը զուգակցում է կատարողի ու նախաձեռնողի հատկանիշներ, որոնք արտահայտում են նրա ինքնուրույնությունը, ստեղծագործական հնարավորությունները: Վերջիններիս փոխհարաբերակցումը կարող է տարբեր լինել, որը և պայմանավորում է անհատի սոցիալական դերը: Ինքնահաստատվելու համար անհատը պետք է հաշվի առնի հասարակության պահանջները, կանոնակարգը: Սոցիալական զարգացման բարձր մակարդակում ևս նա պետք է ինքնուրույնություն և նախաձեռնություն ցուցաբերի, ակտիվորեն ներազդի կյանքի պարագաների վրա, նպաստի իր և ուրիշների կենսապայմանների բարելավմանը: Այս առնչությամբ միանգամայն անհիմն են մարդու մասին բուրժուական ըմբռնումները, երբ մի դեպքում նա համարվում է իբրև սոսկ կատարածու կամ չափազանցվում նրա ինդիվիդուալիզմը, անտեսվում ընդհանուրը, հասարակականը:

Սոցիալիստական հասարակարգում բարոյական նորմ է անհատի կատարողականության ու ինքնուրույնության, նախաձեռնության, ստեղծագործության զարգացումը: Նման իրողությունը սոցիալապես առավել արժեքավոր է: Ամեն մի անհատ հասարակության մեջ կատարում է որոշակի դեր. հայր, մայր, զավակ, վարպետ, բրիգադիր և այլն: Դերը թելադրում է որոշակի պատրաստականություն, գիտելիքների, կարողությունների ու հակումների գումար, որն անհատը ձեռք է բերում ուսուցման պրոցեսում կամ ինքնակրթությամբ: Դերերի կատարումը պայմանավորված է նաև անձի կենսադիրքորոշմամբ, այսինքն սեփական պարտականությունների նկատմամբ նրա վերաբերմունքով, արժութային կողմնորոշմամբ, պահանջմունքներով ու շահագրգրգռություններով, որոնք բնորոշում են նրա նպատակաուղղվածությունը:

Իր դերի, պարտականությունների կատարմամբ է պայմանավորված անձի ակտիվության ու արդյունավետության աստիճանը: Եթե մարդն ըստ ընդունակությունների է մասնագիտություն ընտրում, դրանից շահում են թե՛ ինքը, թե՛ հասարակությունը: Պատահական չէ, որ այս պրոբլեմը պատշաճ հիմնավորում գտավ դպրոցական ռեֆորմում:

Մարդու հոգեկան աշխարհը բարդ է ու բազմազան: Իրողություն է, որ երբեմն մարդն ինքն իրեն չի ճանաչում ու միայն հատուկ պարագաներում է բացահայտվում նրա բուն էությունը: Հատկապես մարդկանց ճանաչում են նեղ օրերին, ճակատագրական պահերին, այդ ժամանակ է դրսևորվում անձի ներաշխարհը: Անձնավորության առանձնահատկությունները պայմանավորվում են նրա հոգեկան կերտվածքով, որը ձևավորվում է կյանքի ընթացքում դաստիարակության, կրթության, ինքնադաստիարակության ու ինքնակրթության, ուրիշների հետ հաղորդակցման ժամանակ: Անհատի հոգեկան կերտվածքում հատկապես կարևորվում է նրա հակումը, ձգտումը: Անհատի գործունեության ու վարքագծի, ինքնակառավարման համակարգի կատարելագործման բնույթը մեծապես պայմանավորվում են նրա պահանջմունքներով ու շահագրգռություններով: Ցավոք, կան մարդիկ, որոնք սոսկ ապրում են ուտելու և խմելու, իրենց կրքերին հագուրդ տալու համար, մարդիկ էլ կան, որոնց կյանքի իմաստը բարձր սոցիալական ձգտումներն են: Դրական մղումները ակտիվացնում են անհատին, աշխատանքը դարձնում հաճելի ու արդյունավետ: Բացասական ազդակները մարդուն ետ են պահում կոլեկտիվի սոցիալական պրոբլեմների լուծմանը մասնակցելուց, չեզոքացնում հոգևոր պահանջմունքները, որոնք ի վերջո հանգեցնում են անհատի դեգրադացման:



Մինչ որևէ բան ձեռնարկելը, մարդ ամեն ինչ կշռադատում է. որդեգրած նպատակին հասնելու իր հնարավորությունները, գործողությունների ու արարքների հետևանքները, դրանց անձնական ու հասարակական նշանակությունը: Նման մոտեցման հիմքը մարդու բարոյաքաղաքական համոզումներն են ու դիրքորոշումը: Գաղափարապես դաստիարակվածը միայն ընտրում է բարոյապես ընդունելի ուղիներ: Գաղափարային մարդն ունակ է հասարակական նշանակալի նպատակների իրականացման պայքարում հաղթահարել ցանկացած դժվարություններ: Գաղափարազուրկը պատրաստ է ամեն վատի, նա հանուն շահադիտական նպատակների կարող է կատարել ոչ միայն անբարոյական արարքներ, այլև հանցավոր գործողություններ: Մարդը գաղափարապես ձևավորվում է պրակտիկ գործունեության ու իմացության պրոցեսում: Ինքնին հասկանալի է, որ բարոյական սկզբունքները լոկ անգիր անելով անհատի մոտ չի մշակվի գիտական աշխարհայացք: Երբ մարդ ձգտում է հասկանալ կյանքը, իմաստավորել այն, այդ դեպքում պրակտիկ փորձը և տեսական գիտելիքները ծառայում են գիտական աշխարհայացքի ձևավորմանը:

Մարդու ունակությունները ձևավորվում և դրսևորվում են աշխատանքում, ուսման պրոցեսում: Հարկավոր է, որ ամեն մարդ իմանա իր ունակությունները և կարողանա դրանք խելամտորեն օգտագործել: Դրա համար անհրաժեշտ է փորձել սեփական կարողությունները գործունեության տարբեր ոլորտներում: Ոչ միշտ են ունակությունները նկատելի կամ էլ անհատն ի վիճակի է որոշել, թե ինքն ինչի է ունակ: Հարկ է նաև հաշվի առնել, թե մարդ ինչ կարծիքի է սեփական անձի մասին: Եթե նա թերագնահատում է իրեն, չի հավատում իր ուժերին ու հնարավորություններին, ապա ունակությունները ոչ պատշաճ չափով են դրսևորվում: Եվ ընդհակառակը, հավատն իր սեփական ուժերի հանդեպ հնարավորություն է ընձեռում առավելագույնս օգտագործել ունակությունները:

Մարդու գործունեության վրա բացասաբար են ազդում գերինքնավստահությունը, ինքնահիացումը, որոնք հանգեցնում են պարտականությունների նկատմամբ անձնավորության անփութաջան, թեթևամիտ վերաբերմունքին, ծուլության: Անձի ճանաչողական ու պրակտիկ գործունեության հնարավորությունների վրա ներազդում է իրավիճակը, որը փոփոխական է: Վերջինս պայմանավորվում է կյանքի օբյեկտիվ պայմաններով, մարդկային հարաբերություններով: Օրինակ, անձնավորության, նրա գործունեության գնահատումը ղեկավարների կամ կոլեկտիվի կողմից: Այդ պայմանների փոփոխումը ազդում է նաև մարդու հոգեկան վիճակի վրա: Բարձր ակտիվության ժամանակ (կենսուրախ աշխարհազգացողություն, ոգեշնչվածություն) մարդ համեմատաբար հեշտ է ընկալում, յուրացնում գիտելիքները, զբաղվում ստեղծարար գործունեությամբ: Ակտիվության նվազեցման դեպքում (դեպրեսիա, վիշտ, հիասթափություն, սեփական ուժերի նկատմամբ հավատի կորուստ, հուսահատություն, ամոթ և այլն), անձնավորությունը դժվարությամբ է տիրապետում գիտելիքներին, անկարող է լինում հաղթահարել դժվարությունները, ստեղծագործել: Այստեղ կարևոր են մարդու սուբյեկտիվ հատկանիշները:

Ոմանք կարող են այն աստիճան լարվել, որ անկարող են դառնում բանական գործունեության համար: Կան նաև այնպիսիք, որոնք ի վիճակի են նույնիսկ դժբախտության դեպքում պահպանել իրենց հավասարակշռությունը: Ուրեմն ստեղծված իրավիճակները կառավարելի են:

Մարդու հոգևոր կյանքն իրենից ներկայացնում է մի ամբողջական խառնվածք, որն արտացոլում է ինչպես անձի կյանքի ու դաստիարակության պատմությունը, այնպես և ներկա ապրելակերպը: Մտածելակերպը արտացոլում է մարդու ապրելակերպը: Մյուս կողմից՝ հոգեբանությունն ազդում է ապրելակերպի, մարդու ընտրության, այլոց ու աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի և այլնի վրա: Այնպես որ, հոգեկան վիճակը և ապրելակերպը կազմում են մեկ դիալեկտիկական միասնություն, նրանք մշտապես փոխգործողության մեջ են:

Իմաստասերները բազմիցս են ասել, որ դժվարին խնդիր է ոչ թե շրջա-

պատող բնության ճանաչումն ու օգտագործումը, այլ սեփական մեխանիզմների իմացությունը և դրանք կառավարել սովորելը։ Մինչ ուրիշներին կառավարելը, անհրաժեշտ է սովորել կառավարել սեփական անձը— զսպել հույզերը, ուշադրությունը կենտրոնացնել կարևորագույն օբյեկտի վրա, դժվարությունների ու արգելքների հանդիպելիս դրսևորել կամք, լինել կարգապահ ու կազմակերպված, սովորել ռացիոնալ մտածել, ընկալել պրոբլեմները և դրանք լուծել ստեղծագործաբար։

Մարդը որպես բանական էակ արտաքին ազդակներից մղվելով գործում է ոչ թե ինքնաբերաբար, այլ նպատակասլաց։ Նա կառավարում է իր ճանաչողական, ինչպես և պրակտիկ գործունեությունը։ Ինքնակառավարման շնորհիվ մարդու՝ որպես բանականորեն գործող էակի վարքագիծն ընդհանրապես համապատասխանում է հասարակական բարոյականությանը։ Տոկունությունը, սեփական համոզումները կիրառելու ունակությունը և խորթ ազդեցություններին հակադրվելը, հատուկ են զարգացած ինքնակառավարմամբ օժտված մարդուն։ Նրանք, ովքեր զուրկ են սեփական գործողությունները կառավարելու կարողությունից, ընկնում են տարբեր ազդեցությունների տակ, անորոշ վարքագիծ են դրսևորում։ Ինքնակառավարման շնորհիվ մարդը կարող է հաղթահարել վախը, դրսևորել արիություն, համարձակորեն հանդես գալ վտանգի դեմ, խելացիորեն գործել բարդ պայմաններում։ Ինքնագիտակցության մեջ առանձնանում են երեք կողմ. սեփական անձի ճանաչում, այլոց վերաբերմունքը սեփական անձի նկատմամբ, ինքնակառավարում։

Անհատի ձևավորման գործում հատկապես մեծ նշանակություն ունի աշխատանքը։ Աշխատանքում կերպավորվում ու կատարելագործվում են մարդու ոչ միայն մասնագիտական կարողություններն ու հակումները, այլև ունակությունները։ Աշխատանքը պահանջում է կարգապահություն, կազմակերպվածություն, ինքնակառավարման կարողություն ոչ միայն մեքենաների, այլև ինքն իր նկատմամբ։ Ով ձգտում է ինքնակատարելագործման, նա պետք է աշխատի նվիրումով, ստեղծագործաբար։ Լավ է ասել Վ. Բելինսկին. «Ով առաջ չի գնում, նա ետ է գնում, կանգնած վիճակ չկա»։

Անհատի ինքնադաստիարակության համար մեծ նշանակություն ունի հասարակական աշխատանքը, որը զարգացնում է մարդկանց հետ հաղորդակցվելու կարողությունը, օժտում կազմակերպչական ունակություններով, նպաստում քաղաքական հասունության կազմավորմանը։ Պրակտիկան վկայում է, որ ովքեր անցել են հասարակական աշխատանքի գպրոցը, որպես կանոն, հասարակական հարցերի լուծման ժամանակ դրսևորում են մեծ ակտիվություն, ինքնուրույնություն, համարձակություն։ Ինքնադաստիարակությունը բարդ գործունեություն է։ Այն ենթադրում է որոշակի նպատակների ու կոնկրետ խնդիրների առաջադրում, աշխատանքի ծրագրավորում, ինքնադաստիարակության ընթացքի հաշվառում ու հսկում։ Վ. Ի. Լենինը գրել է. «Դետերմինիզմի գաղափարը, սահմանելով մարդկային արարքների անհրաժեշտությունը, ժխտելով կամքի ազատության վերաբերյալ անմիտ հեքիաթը, ամենևին չի ոչընչացնում մարդու ո՛չ բանականությունը, ո՛չ խիղճը, ոչ էլ նրա գործողությունների գնահատությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 186)։ Ուստի և չի կարելի ամեն ինչ բարդել կյանքի պարագաների վրա։

Իրականում ինքնադաստիարակությունը դետերմինացվում է հասարակության կողմից և ծառայում է որոշակի հասարակական շահերի։ «...Իմ սեփական կեցությունը հասարակական գործունեություն է,— գրել է Կ. Մարքսը,— իսկ դրա համար և այն, ինչ ես անում եմ... ինձ գիտակցելով իբրև հասարակական էակ» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 590)։ Մարդը ոչ միայն հարմարվում է արտաքին հասարակական պայմաններին, այլև ակտիվորեն ներազդում է դրանց վրա, հանդես գալիս որպես հասարակական զարգացման սուբյեկտ։ Անհատի առավել արդյունավետ ինքնուրույն ակտիվ գործունեություն հնարավոր է գիտելիքների, հմտությունների, բարոյաքաղաքական, հուզական, կամային ու ինտելեկտուալ հասունության որոշակի մակարդակում։ Հենվելով նախորդների ու ժամանակակիցների փորձի վրա, անհատը ձգտում է առավելագույնս զարգացնել այդ անհրաժեշտ հատկանիշները։ Այսպիսով, ինքնադաստիարակությունը, ինչպես և առհասարակ դաստիարակությունը, անհատի կերպավորման գործում կատարում են հասարակական ֆունկցիա։



Ինքնադաստիարակության պահանջ առաջանում է այն ժամանակ, երբ մարդ սկսում է իրեն գիտակցել որպես անհատականություն, դրսևորելով որոշակի ինքնուրույնություն պրակտիկ կյանքում, հասնում գիտակցության ու ինքնագիտակցության կենսափորձի որոշակի մակարդակի։

Ինքնադաստիարակությունն առնչվում է մարդու կենսական իդեալի առանձնահատկությունների, նրա ցանկության և այն բանի հետ, թե նա ինչն է իր համար առավել նշանակալի համարում։ Եթե պատանին ցանկանում է մարտիկ դառնալ, նա առանձնապես զարգացնում է ֆիզիկական ուժերը։ Գիտության ուղին բռնած դեռահասը հետամուտ է լինում զարգացնելու մտավոր կարողությունները, ուշադրություն սևեռելով ինքնակրթությանը։

Ինքնադաստիարակության ելակետը պայմանավորվում է նաև այն դժվարությունների փոտակցումով, որոնց հետ մարդ բախվում է կյանքում։ Դժվարությունները կարող են լինել օբյեկտիվ և սուբյեկտիվ։ Առաջին դեպքում շեշտվում են կոլեկտիվի կողմից անհատին հարուցվող բարձր պահանջները, որոնց կատարման համար մարդ դեռևս պատշաճ փորձ չունի։ Երկրորդ դեպքում դժվարությունները բացատրվում են անձնական բնույթի հանգամանքներով։ Արծարծվող խնդրի ստեղծագործական լուծմանը կարող են խանգարել անձնավորության ավելորդ ամոթխածության առկայությունը, ինքնուրույնության պակասը։ Նման հատկանիշները չեն նպաստում կոլեկտիվում անձնավորության հեղինակություն ձեռք բերելուն։ Իսկ հեղինակությունն առաջնակարգ նշանակություն ունի անհատի նկատմամբ դրական վերաբերմունքի հաստատման համար։ Այսպիսով, ինքնադաստիարակությունը կոչված է մարդու մոտ արժույթավորելու դրական հատկանիշները և հաղթահարելու բացասականները։ Ուրեմն այն մի շարք դեպքերում ինքնավերադաստիարակության պրոցես է։

Ինքնադաստիարակության խնդիրները անձնավորության զարգացման հետ փոխվում են, դառնալով ավելի իրական ու կենսական։ Մարդը շարունակում է իր վրա աշխատել անգամ, երբ տարիքն առնում է։ Հաճախ այդպիսի աշխատանքը տվյալ ժամանակամիջոցում իրականացվում է ավելի ինտենսիվ ու արդյունավետ։ Դա հասկանալի է, քանզի չափահաս մարդն ունի ավելի շատ գիտելիքներ ու կենսափորձ, առավել պատասխանատվությամբ է վերաբերվում հասարակական պահանջներին ու սեփական պարտականություններին։ Բացի այդ, նա օժտված է զարգացած բանականությամբ ու կամքով, իր վրա աշխատելու անհրաժեշտ սուբյեկտիվ նախադրյալներով։

Պատահում է, որ առանձնապես աչքի չընկնող մարդը որոշակի կացության մեջ դրսևորում է բացառիկ կամք ու կարողություն։ Հիշենք Բ. Պոլևոյի Պատմվածք իսկական մարդու մասին վեպի հերոս Մերեսևին։ Ստեղծագործական աշխատանքի արդյունավետությունը մեծապես պայմանավորված է մարդու լինելիությամբ, որտեղ իրենց ուրույն տեղն ունեն անձնավորության վրա ներազդող արտաքին պարագաները, իրադարձությունները։

Գործունեության արդյունավետությունը պայմանավորված է նաև գործի նկատմամբ մարդու վերաբերմունքով։ Ով սիրում է իր աշխատանքը, դրսևորում է ստեղծագործական ակնբախ ունակություններ։ Տաղանդավոր մարդը սովորական մահկանացուից առաջին հերթին տարբերվում է նրանով, որ հազար անհաջող փորձերից հետո կատարում է հազար մեկերորդը, այսինքն՝ տարբերվում է բացառիկ աշխատասիրությամբ, նպատակին հասնելու համառությամբ։ Ուսուցչի խնդիրն է դաստիարակել այնպիսի մարդկանց, որոնք ընդունակ լինեն ինքնուրույն բարձրացնելու իրենց կրթական մակարդակը, զարգանան ամբողջ կյանքի ընթացքում։ Այդ առումով նրան չպետք է հետապնդի վախը, թե տակավին աշակերտներին լիովին չի հաղորդել ուսումնական ծրագրով նախատեսված նյութը։ Նրա խնդիրը պետք է լինի ոչ այնքան սովորողներին կրթելն ու դաստիարակելը, որքան նրանց մեջ ինքնակրթության ու ինքնադաստիարակության ունակությունների արմատավորումը։

Ինքնադաստիարակությունը բովանդակում է հասարակական արժույթներ՝ բարոյական նորմեր, հանրության, կոլեկտիվի կողմից ճանաչման հավանություն, մրցություն, պատասխանատվության գիտակցում, իդեալ։ Ինքնադաստիարակության կարևոր պայման է կոմունիստական բարոյականության սկզբունքների խոր գիտակցումը, որոնք արտահայտվում են կոլեկտիվի կողմից անհատին ներկայացվող պահանջներում։ Մարդու բարոյահոգեբանական հատկանիշները կատարելագործվում են աստիճանաբար։ Անձի ինքնակատարելագործումը շարունակվում է ողջ կյանքի ընթացքում, հասարակության բարոյական պահանջների ավելի խոր գիտակցման պրոցեսում։

Ամեն մի մարդ, իբրև սոցիալական էակ, խոր բավականություն է զգում իր գործունեությունից, հատկապես, երբ նրա գործելակերպն ու ապրելակերպն արժանանում են հասարակական ճանաչման ու հավանության։ Անձի մոտ հեղինակության նվաճման ձգտումը ինքնադաստիարակության էական դրդապատճառներից է։ Վ. Ի. Լենինը կոչ էր անում չվախենալ հրապարակային քննադատությունից, որն աշխատողին մղում է ինքնադաստիարակության։ Նույն նպատակն է հետապնդում նաև ինքնաքննադատությունը։ Այս դեպքում մարդն ինքն է վերլուծում գործունեության պրոցեսն ու արդյունքները, թերություններ գտնում իր վարքագծում, գիտակցելով դրանց բացասական ազդեցությունը, միաժամանակ ցուցաբերելով անհաշտ վերաբերմունք։ Այսպիսով, ինքնաքննադատության ու ինքնադաստիարակության միջև գոյություն ունի ներքին օրգանական կապ, դիալեկտիկական միասնություն։

Միայն կոլեկտիվում է անձը հնարավորություն ստանում համակողմանիորեն զարգացնելու իր ունակությունները, և, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատություն։ Հիրավի, մարքսիստական այս դասական դրույթը սկզբունքային նշանակություն ունի կոլեկտիվի ու անհատի փոխհարաբերության դիալեկտիկայի գիտական ըմբռնման համար։ Սոցիալիստական հասարակությունում կոլեկտիվն ամեն մի անձնավորության կենսապայմանն է, ուր բարգավաճում է նոր մարդը՝ կոլեկտիվիստը։ Սոցիալիստական կոլեկտիվը հիմնվում է նրա անդամների գաղափարական միասնության, շահերի ու նպատակների ընդհանրության, ընկերական համագործակցության ու փոխօգնության հարաբերությունների վրա, որոնք բխում են արտադրության միջոցների հասարակական սեփականությունից։ Նրան բնորոշ է սոցիալիստական դեմոկրատիզմը կառավարման ու ինքնակառավարման ոլորտում, որտեղ ամեն մի մարդ կարող է ազատ քննարկել կոլեկտիվի գործերը և մասնակցել դրանց լուծմանը։ Այդ պայմաններում զարգանում է աշխատողի նախաձեռնությունը, ձևավորվում իր և ընկերների աշխատանքի ու վարքագծի նկատմամբ պատասխանատվության զգացում։

Մարդիկ, որոնց հետ առնչվում է անհատը, արտահայտում են իրենց վերաբերմունքը կենսապայմանների, իրենց աշխատանքի, կյանքի տարբեր իրադարձությունների մասին։ Դա նույնպես ազդում է անձի կարծիքի, նրա տրամադրության վրա։ Շփումը կոլեկտիվում ունի էական նշանակություն՝ բնորոշելու նրա անդամների շահագրգռությունները, իմաստավորելու այս կամ այն գործունեության միտումը, ապրելակերպի ու վարքագծի հեղինակությունը, ինքնադաստիարակության ընտրության ուղին։ Կոլեկտիվի ազդեցությունը պայմանավորվում է նաև անձնավորության բարոյահոգեբանական առանձնահատկություններով։ Կան մարդիկ, որոնք ոչ ոքի ասածը չեն ընդունում։ Մյուսները տարբերվում են գործընկերների արված դիտողությունների ու արտահայտությունների հանդեպ քննադատական վերաբերմունքով, եթե դրանք գտնում են ճիշտ, ղեկավարվում են դրանցով, եթե ոչ՝ մերժում են։ Պատահում են և այնպիսիները, որոնք ամեն ինչի հավատում են, ամեն ինչի հետ համաձայնվում։

Անձի ինքնադաստիարակության ամենաբարենպաստ պայմանը կոլեկտիվի կյանքում հարգանքի ու փոխադարձ պահանջկոտության հարաբերության առկայությունն է, դրա մշտական զարգացումը, յուրաքանչյուրի հանդեպ պահանջկոտության մեծացումը։ Այսպիսով, շփումը կոլեկտիվում վճռական դեր է խաղում կոլեկտիվիզմի ոգով անձի ինքնադաստիարակության գործում։ Շփ-



ման պրոցեսում բացի մարդկանց միմյանց հանդեպ տարերային ազդեցությունից հատուկ նշանակություն ունեն սոցիալական նորմերը, որոնք կոլեկտիվում կարգավորում են մարդկանց աշխատանքային վարքագիծը։ Այդ համակեցության նորմերն ամրապնդվում են իբրև կոլեկտիվի ավանդույթներ։ Կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ վաղ թե ուշ պետք է յուրացնի հաստատված սոցիալական նորմերը և հետևի դրանց։ Հատկապես դա անհրաժեշտ է կոլեկտիվի նոր անդամներին, որոնցից պահանջվում է, ելնելով նոր պարագաներից, զբաղվելու իրենց դաստիարակությամբ կամ վերադաստիարակությամբ։ Լինում են, ցավոք, կոլեկտիվներ, ուր սոցիալական նորմերը ցածր են, նոր ընդունված անձը կամ հետադիմում է, կամ պայքար է մղում համակեցության պատշաճ նորմերի համար, պատահում են և այնպիսիք, որ չհաշտվելով նման իրադրության հետ, հեռանում են։

Անձի ինքնադաստիարակության, հասարակական ակտիվության բարձրացման գործում խիստ կարևոր է ղեկավարի դերը, նրա գործելակերպն ու վարքագիծը։ Ղեկավարի համար բարոյական նորմ է արդարացի ու օբյեկտիվ վերաբերմունքը առանց բացառության բոլորի նկատմամբ։ Ղեկավարի պահանջներն ինքնադաստիարակության խթաններ են, որոնք բարերար են ազդում անհատի զարգացման, կատարելագործման վրա։ Կոլեկտիվի ղեկավարը պետք է օժտված լինի անձնական առաքինություններով. կազմակերպչական ու մանկավարժական ունակություններ, պրակտիկ խելք, ուժեղ ու ճկուն կամք, բարոյական անաղարտ վարքագիծ և այլն։ Ղեկավար չեն ծնվում, այլ դառնում են։ Ղեկավարի կատարելագործման համար վճռական նշանակություն ունեն աշխատանքի անձնական փորձը, սիստեմատիկ ինքնակրթությունը, կոլեկտիվի կառավարման տեսության ու պրակտիկայի յուրացումը, ինքնադաստիարակությունը։

Մարդը սեփական ես-ը ճանաչող ու գիտակցող էակ է, ունակ ուղղելու ու կատարելագործելու իրեն։ Ն. Գ. Չեռնիշևսկին նկատել է, որ նա, ով իր մեջ չի ուսումնասիրել մարդուն, երբեք չի հասնի մարդկանց խոր իմացության։ Սեփական ես-ի ճանաչումը կատարվում է և սեփական գործունեության արդյունքների վերլուծությամբ, և միջնորդավորված։ Վերլուծելով ու գնահատելով աշխատանքային նվաճումները որոշակի մարդում, հաշվի առնելով ծախսված ժամանակն ու ջանքերը, կարելի է որոշել սեփական ունակությունների զարգացման մակարդակը։ Գնահատելով իր վարքագիծը հասարակության մեջ, մարդը ճանաչում է սեփական անձի բարոյահոգեբանական առանձնահատկությունները։

Ոչ պակաս կարևոր են անձի միջնորդավորված ճանաչումը, շրջապատի մարդկանց վերաբերմունքի ուսումնասիրումն իր ես-ի նկատմամբ։ Օբյեկտիվ գնահատումներն օգնում են խոր ճանաչելու սեփական անձը։ Կարևոր է համեմատել անձնական հատկանիշների ինքնագնահատումն ուրիշների տված գնահատումների հետ։ Դա հնարավորություն է ընձեռում պարզաբանելու ինքնագիտակցման մակարդակը, սեփական անձի գերագնահատման կամ թերագնահատման աստիճանը։ Որքան լայն է մարդու հաղորդակցման շառավիղը, այնքան անձի մոտ մեծ է հնարավորությունը համեմատելու ու ճանաչելու սեփական ես-ի դրական ու բացասական հատկանիշները։ Մարդ կարող է իրեն համեմատել նաև գեղարվեստական կերպարների, մարդ-իդեալի հետ, ընդ որում նշելով ինչ չկա իր մոտ և ինչ պետք է ձևավորել։ Սակայն ամենաստույգ ինքնաճանաչումը տեղի է ունենում գործունեության պրոցեսում, մարդկանց հետ փոխհարաբերություններում։

Ինքնաճանաչման արդյունավետությունը պայմանավորված է անձի ընդհանուր կենսադիրքորոշմամբ, հատկապես սեփական անձի նկատմամբ պահանջկոտությամբ։ Մարդ, որ գերագնահատում է իրեն և միաժամանակ պահանջկոտ չէ իր նկատմամբ, հակված չէ վերլուծելու իր իրական վիճակը, հնարավորությունները և դրանք համադրել հասարակության մեջ իր կատարած գործունեության և վարքագծի արդյունքների հետ, իրենից գոհ է, չի աշխատում իր վրա։ Անձը սեփական դաստիարակվածության մեկնակետից է գնահատում

իր կամ ուրիշների այս կամ այն արարքը։ Գինեմոլը հաճախ յուրայինների շրջանում պարծենում է, թե նախօրյակին շատ է կոնծել, պարկեշտ մարդը, ընդհակառակը, հպարտանում է նրանով, որ չի գայթակղվել։ Ինքնաճանաչումը կատարվում է ոչ այնքան պասիվ ինքնահայեցմամբ, որքան ակտիվ գործունեության պրոցեսում։ Ինքնաճանաչումը ինքնանպատակ չէ, այլ ինքնադաստիարակության պայման։ Կարևոր է նաև պարզաբանել, թե ինչն է բոլորից շատ մարդուն հուզմունք, մտատանջություն պատճառում։ Հարկ է ուշադրություն դարձնել նաև անձնավորության բնավորության բարոյական կողմի վրա։ Հատկապես բարության, ժլատության, բարյացակամության, նախանձի, ազնվության, ճշմարտացիության կամ կեղծավորության դրսևորումների վրա։ Անհատին բնութագրում են նաև նրա վարքագծում կամ գործունեության մեջ կրկնվող արարքներն ու գործողությունները։ Եզակի դրսևորումները, որոնք ստեղծված պարագաների կամ հոգեկանի առանձնահատուկ կացության հետևանք են, անձին գնահատելիս հարկ չկա հաշվի առնել։

Ինքնադաստիարակության հզոր խթան են արվեստն ու գրականությունը, որտեղ արտացոլված են մարդկանց կյանքը՝ դրսևորումների բազմապիսության մեջ։ Արվեստի ու գրականության կենդանի կերպարները վառ պատկերավորման շնորհիվ առավել են ներգործում ընթերցողի, հանդիսատեսի կամ ունկնդրի գիտակցության վրա, քան գիտական աշխատությունները։ Նրանք տալիս են ոչ միայն գիտելիքներ, այլև արթնացնում են խոհեր ու զգացումներ, խթանում երևակայությունը, լիցքավորում կամքը։ Սովետական մարդկանց դաստիարակության ու ինքնադաստիարակության գլխավոր նպատակը անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացումն է։

Շատ բան իմանալն ու կարողանալը մարդու բնական ցանկությունն է։ Այստեղ առանձնապես կարևորվում են անձի քաղաքական կուլտուրայի, հասարակական երևույթների նկատմամբ դասակարգային վերաբերմունքի դաստիարակումը, քաղաքական հայացքների ու դիրքորոշումների մշակումը, որոնք ապահովում են անհատի ակտիվ մասնակցությունը հասարակական կյանքին։ Քաղաքականապես դաստիարակված մարդն ունակ է հեռուն տեսնել, օժտված է քաղաքացիական բարձր գիտակցականությամբ, ակտիվ մասնակցում է նոր կյանքի կառուցմանը, ինտերնացիոնալիստ է ու հայրենասեր։

Բարոյական ինքնադաստիարակության նպատակն է անհատի մոտ մշակել պատկերացումներ ու հասկացություններ կոմունիստական բարոյականության մասին, արմատավորել բարոյական համոզմունքներ ու սովորույթներ, վարքագծի նորմեր, մարդկային հարաբերությունները կարգավորելու սկզբունքներ։

Աշխատանքային ինքնադաստիարակությունը գործի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորում է, որն ըստ էության անձնավորության բարոյական դաստիարակության չափանիշ է։ Աշխատանքային ինքնադաստիարակությունը բովանդակում է աշխատանքի հասարակական ու անձնական կարևորության գիտակցում ու պահանջմունք, հանուն ընդհանուր նպատակի գործընկերների հետ համերաշխ աշխատելու, կոլեկտիվի առջև դրված առաջադրանքներն անթերի կատարելու պատրաստակամություն։ Աշխատանքային ինքնադաստիարակությունը ներառնում է նաև անհատի պրոֆեսիոնալ պատրաստվածության, մասնագիտական գիտելիքների, կարողությունների ու հմտությունների տիրապետում, բարձր որակավորման արտադրողական աշխատանք։

Ինքնադաստիարակությունը ենթադրում է նաև անհատի մտավոր կարողությունների զարգացում, որն ապահովում է գիտելիքների ինքնուրույն ճանաչում և յուրացում, հասարակական ու բնական երևույթների վերլուծության ունակություն, տեսական ու պրակտիկ խնդիրների ստեղծագործական լուծում։ Խելքը ոչ այլ ինչ է,— գրել է Կ. Դ. Ուշինսկին,— քան գիտելիքների լավ կազմակերպված համակարգ։ Իրոք, իմաստուն են անվանում այն մարդուն, որ շատ գիտե և կարող է գիտեցածը կիրառել առաջադրված խնդրի լուծման համար։



Անձի ինքնադաստիարակությունը դժվար է պատկերացնել առանց պոլիտեխնիկական ինքնաուսուցման, որն ապահովում է արտադրության գիտական հիմունքների ուսումնասիրում և աշխատանքի գործիքների հետ վերաբերվելու հմտություն։Պոլիտեխնիկական զարգացումը, որպես կանոն, նպաստում է անհատի ստեղծարար գործունեությանը։ Գյուտարարությունը, նորարարությունը պահանջում են տարբեր արտադրությունների իմացություն, որի շնորհիվ առաջանում են ստեղծագործման համար անհրաժեշտ նոր ասոցիացիաներ։ Պոլիտեխնիկական ինքնադաստիարակությունը սոցիալիզմի օրոք, գրել է Ֆ. Էնգելսը, «երիտասարդ մարդկանց հնարավորություն կընձեռի գործնականում արագ յուրացնելու արտադրության ողջ սիստեմը... հաջորդաբար արտադրության մի ճյուղից փոխվելու մեկ ուրիշի՝ ելնելով հասարակության պահանջներից կամ նրանց սեփական հակումներից» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 336)։ Այդ մտահղացումն արդեն տեղ է գտել մեր հասարակության կյանքում, շատ ձեռնարկություններում բանվորները համատեղում են մի շարք մասնագիտություններ։

Էսթետիկական ինքնադաստիարակությունը գեղագիտական պահանջմունքների ու շահագրգռությունների, հայացքների ու ճաշակների և, վերջապես, գեղարվեստական ունակությունների ձևավորում է։ Գեղագիտորեն դաստիարակված անձն ունակ է տեսնել, հասկանալ ու վերապրել գեղեցիկը կյանքում, արվեստում, ձգտում է ապրել գեղեցկի օրենքներով։ Էսթետիկական կուլտուրան ենթադրում է նաև ֆիզիկական ինքնադաստիարակություն, ֆիզիկապես առողջ ու ուժեղ մարդու կերպավորում, որն ունակ է աշխատել մինչև խոր ծերություն, պաշտպանել հայրենիքը, այսինքն լինել կատարյալ ներդաշնակ զարգացած անհատ։

Անհատի ներդաշնակ զարգացումը ներառնում է նաև կամքի ամրակայումը, իբրև նրա գործունակության կազմավորման նախապայման։ Կան խելոք մարդիկ, որոնք, սակայն, դժվարության առջև ընկրկում են, արգելքների հանդիպելիս նահանջում կամ պարզապես անկարող են երկար ժամանակ լարել ուժերը՝ գործը մինչև վերջ հասցնելու համար։ Զարգացած մտքի և ուժեղ կամքի միավորման դեպքում կազմավորվում է ստեղծագործական ու միևնույն ժամանակ ձեռներեց անհատը։

Ինքնադաստիարակության պրոցեսում դրսևորվում են մարդկային զգացումների ողջ երանգապնակը, բարոյագեղագիտական, մտավոր ու գործնական մղումները։ Անհատը ճաշակում է իմացության, գիտելիքի ընկալման բերկրանքը, տոգորվում վստահությամբ սեփական ուժերի նկատմամբ, մասնակից դառնում մերձավորի ու օտարի վշտին և ուրախությանը։ Անհատի ներդաշնակ հոգևոր զարգացումը առավել գնահատելի է, երբ տոգորված է սոցիալական բարձր արժույթներով, ներթափանցված խոր մարդասիրությամբ։ Հանրությանը պիտանի լինելու գիտակցումը գերագույն երջանկություն է։

Ինքնադաստիարակությունը անհնար է առանց ինքնակարգապահության, որը նույնպես ինքնադաստիարակության արդյունք է։ Ինքնակարգապահությունը ամրապնդվում է ինքնահսկմամբ։

Ինքնադաստիարակությունը միակերպ պրոցես չէ, այն դրսևորվում է տարբեր եղանակներով, հոգեբանական նրբին երանգներով։ Բանական անձը մշտապես ինքն իր հետ վիճաբանում է, մերթ հաստատում, մերթ բացասում մտքում ծագող խոհերն ու գաղափարները։ Այստեղ կարևորվում է ինքնահամոզումը, որը մտքի տառապանքի արդյունք է, երկար խորհրդածությունների արգասիք։ Ինքնահամոզման ժամանակ հաստատվում է ճշմարտությունը, որը դառնում է ուղենիշ գաղափար՝ սեփական արարքներն ու գործողությունները կարգավորելու համար։ Մարդու հոգեկան ծալքերում իրենց ուրույն տեղն ունեն ինքնաարդարացումը և ինքնաներշնչումը, որոնք հաճախ հանդես են գալիս հուզական տատանումների ժամանակ։ Այս առնչությամբ է ասվում, որ մարդու ներաշխարհն անընդգրկելի տիեզերք է։

Ինքնակրթությունը, որը միաժամանակ ինքնադաստիարակություն է, անհատի սիստեմատիկ ինքնուրույն ուսուցումն է, որն ընթանում է անձի ողջ

կյանքի ընթացքում։ Գիտելիքներն իրենց բովանդակությամբ բազմազան են։
Որոշ գիտելիքներ ընդլայնում են անհատի մտահորիզոնը, նպաստում աշխար-
հայացքի ձևավորմանը, բնորոշում անձի վերաբերմունքը իրականության, սե-
փական գործունեության նկատմամբ։ Անձի կիրառական գիտելիքները դրսևոր-
վում են աշխատանքում, մարմնավորվում նրա ստեղծած նյութական ու հոգե-
վոր արժեքներում։

Այսպիսով, ինքնուրույնաբար գիտելիք ձեռք բերելու պրոցեսը ակտիվացնում է մտավոր գործունեությունը, մոբիլիզացնում այնպիսի կամային հատկանիշներ, ինչպիսին են կազմակերպվածությունը, համառությունը, հաստատակամությունը։ Նրանք, ովքեր ինտենսիվ են զբաղվում ինքնակրթությամբ, ոչ միայն գիտակ են, այլև աշխատասեր, կամային։ Հիրավի, ինքնակրթությունը առնչվում է մարդու հոգեկան աշխարհի շատ ոլորտների հետ, նպաստում նրանց զարգացմանը։

Ինքնադաստիարակությունը հատկապես բարդ է ու ծանր, երբ պետք է հաղթահարել բացասական սովորությունները։ Սեփական ես-ի վրա աշխատելը պահանջում է որոշակի պատրաստականություն, համառություն, սիստեմատիկ ջանքեր, երբեմն նաև ինչ-որ բանում ինքնասահմանափակում, որն անհրաժեշտ է ինքնաձևավորման բնագավառում հաջողության հասնելու համար։ Ով որոշել է իր վրա աշխատել կամ ով զբաղվում է ինքնադաստիարակությամբ, նախ պետք է իրեն ուսումնասիրի ինքնավերլուծության միջոցով։ Զննելով սեփական անձը, անհրաժեշտ է պարզել ու զարգացնել առկա դրականը և հետևողականորեն հրաժարվել բացասական սովորություններից ու հակումներից։ Ինքնաճանաչման պրոցեսում կարևոր է հաշվի առնել շրջապատի գնահատականը։ Նույնիսկ ամենախիստ ինքնաքննադատության ժամանակ չպետք է կորցնել հավատն իր, ինքնահաստատման մեծ հնարավորությունների նկատմամբ։

Ինքնադաստիարակությունը պահանջում է սիստեմատիկ, ծրագրավորված աշխատանք, որը պետք է բովանդակի անհատի համակողմանի զարգացման ինչպես հեռավոր, այնպես և մոտալուտ, առաջնահերթ նպատակներ։ Հարկ է նկատել, որ մարդը փոխվում, կատարելագործվում է ոչ միայն բարի մտադրությունների շնորհիվ, այլև, հատկապես, գործով։ Գործերը ոչ միայն անհատի գնահատման չափանիշ են, այլև ներազդման նախապայման։

Կենսափորձը վկայում է, որ կատարելով դրական արարք, մարդ ինքն է առաջինի դառնում, իսկ վատ քայլի դեպքում, եթե այն նույնիսկ ոչ ոքի կողմից չի դատապարտվում, նվաստացնում է անհատին։ Ինքնադաստիարակության մեջ մեծ նշանակություն ունեն գործունեությունը, աշխատանքը. նա, ով մի կերպ է բանում, երբեք գործին պատասխանատվությամբ չի վերաբերվում, չի համակվի աշխատասիրությամբ։ Մարդ, որի մոտ սովորություն է դարձել որակով արտադրել, իր էությամբ գեղեցիկ է։ Հիրավի, արգասաբեր, ստեղծագործական աշխատանքը մարդու վերակերտման փորձված միջոցն է։ Ինչպես ասվեց, մարդու կամքը, բնավորությունը ձևավորվում են ակտիվ արտադրական ու հասարակական գործունեության ոլորտում։ Աշխատանքային կոլեկտիվը, հասարակական կազմակերպությունները նպաստում են անհատի ինքնադաստիարակությանը։ Բնականաբար, շատ բան պայմանավորված է բուն անհատով, նրա ինքնահսկման ու գիտակցության աստիճանով, մշտապես ինքնակատարելագործվելու պատրաստակամությամբ։ Իրեն կառավարելու ունակությունը կարևոր փուլ է անհատի սոցիալական լինելության գործում։ Այն ենթադրում է մարդու ինքնագնահատման, ինքնատիրապետման, ինքնահսկման մղումների բացահայտում։ Ամեն դեպքում մարդ որոշում է ու գործում ստեղծված իրավիճակի սեփական գնահատմամբ։

Կյանքի հրամայական թելադրանքն է մասսաների աշխատանքային և հասարակական ակտիվության, նրանց ստեղծագործական ուժերի հետագա դրսևորումը, նոր մարդու դաստիարակությունն ու ինքնադաստիարակությունը։

---

Գաղափարախոսական պայքարի

ճակատներում

# ՍՐՎՈՒՄ Է ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ԵԹԵՐՈՒՄ

**Ս. ՊՈՂՈՍՅԱՆ**
ՀՍՍՀ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների
պետական կոմիտեի նախագահ

ԾԱՆՐ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ հոգեվարք է ապրում ժամանակակից կապիտալիստական աշխարհը։ Նրա ջատագովներն ու պարագլուխները դիմում են ամեն միջոցի՝ գաղափարական ներազդման տարբեր եղանակներով ապակողմնորոշելու աշխատավոր զանգվածներին, շեղելու նրանց ուշադրությունը հասարակական անբուժելի արատներից ու խորացող հակասություններից։ Հին աշխարհի պաշտպաններն ապարդյուն ճգնում են իր դարն ապրած հասարակարգի ճգնաժամային իրավիճակի պատճառը համարել սոցիալիստական սիստեմի առկայությունը, որի հետևանք է և իմպերիալիզմի հայտարարած խաչակրաց արշավանքը սոցիալիզմի երկրներին։ Այդ պայքարի զինանոցում մեծ տեղ է հատկացվում գաղափարախոսական դիվերսիային։ Կապիտալիստական պետությունների կառավարող շրջանները, մասնավորապես Ռեյգանի վարչակազմը ԱՄՆ-ում, բազմապլան միջոցառումներ են իրականացրել և այժմ էլ իրականացնում են պրոպագանդայի ու մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեությունը վերակառուցելու, դրանց ներգործությունն ու նպատակասլացությունը ուժեղացնելու համար։ Արտասահմանյան 35 ռադիոկայաններ Սովետական Միության 22 լեզուներով օրվա ընթացքում ավելի քան 230 ժամ շարունակ (դրանից 93-ը բաժին է ընկնում ամերիկյան ռադիոկայաններին) մեր երկրի մասին տարածում են սուտ ու կեղծիք։ 1979 թ. համեմատությամբ, այդ հաղորդումների ծավալը աճել է մեկ երրորդով։

Սպիտակ տան գաղափարախոսական դիվերսիայի ներկա փուլի նպատակն է մի կողմից՝ երկրի ներսում ստեղծել պաշարողական վիճակ, բորբոքել ռազմական հիստերիա, փորձել հաստատել ամերիկյան հասարակության քաղաքական կայունությունը, ներարկել մակարթիզմի ոգի և թույլ չտալ, որ տնտեսական ճգնաժամը հարուցի քաղաքական ու սոցիալական բարդություններ, իսկ մյուս կողմից՝ օգտագործել «սովետական վտանգը»՝ ահաբեկելու Արևմտյան Եվրոպային ու Ճապոնիային և ԱՄՆ-ի գերիշխանության ներքո ստեղծելու ընդհանուր ռազմաքաղաքական բլոկ՝ Վաշինգտոնից մինչև Տոկիո։

1982 թվականին վերակառուցվեց ԱՄՆ-ի կառավարության՝ միջազգային կապերի վարչությունը (ՅՈՒՍԻԱ), որի առաջ Ռեյգանը խնդիր դրեց ապահովել արտաքին քաղաքական պրոպագանդայի «այնպիսի նոր որակ, որ նրան դնի Արևմուտքի անվտանգությունն ապահովող ռազմական խնդիրների մակարդակի վրա»։

Պրեզիդենտն անձամբ է մասնակցում դիվերսիոն մարմինների վերակառուցման աշխատանքներին։ Նրա յուրաքանչյուր ելույթ օրինակ է ծառայում հակակոմունիստական պրոպագանդա ծավալելու համար։ Կապիտալիստական խոշորագույն պետության ղեկավարը հայտարարում է նույնիսկ, թե կոմունիզմի դեմ պայքարը «Սուրբ գրքի և Հիսուս Քրիստոսի կտակն է»։

ԱՄՆ-ում հակասովետական պրոպագանդան պետական քաղաքականության կարևորագույն ասպարեզներից մեկն է, և այդ նպատակի համար տարեկան ծախսվում է 2,5 միլիարդ դոլլար։ Միայն Պենտագոնում 4,5 հազար ծառայող զբաղված են հասարակական կարծիքի մշակմամբ։

ՍՍՀՄ-ի, սոցիալիստական մյուս երկրների, ինչպես նաև զարգացող և ազգային ազատագրության ուղին բռնած երկրների դեմ «հոգեբանական պատերազմ» է ծավալում կենտրոնական հետախուզական վարչությունը (ԿՀՎ)։ «Հոգեբանական պատերազմի» կազմակերպման վրա ծախսվում է ԿՀՎ-ի բյուջեի 90 տոկոսը։ ԱՄՆ-ը նպատակ է հետապնդում ԿՀՎ-ի միջոցով յուրովի վերաձևելու աշխարհը, հողագնդի վրա հաստատելու Վաշինգտոնին հարմար կարգեր։

ՅՈՒՍԻԱ գործակալությունն աշխարհի 124 երկրներում ունի 202 բաժանմունք, որոնց գլխավոր խնդիրն է պրոպագանդել ամերիկյան ապրելակերպը։ Օգտագործելով բոլոր միջոցները, չխորշելով փաստերի խեղաթյուրումից, կեղծիքից, զրպարտությունից՝ նրանք ջանում են ժողովրդին համոզել, թե մարդու համար, որ երկրում էլ նա ապրելիս լինի, ամենաօգտակարը և ամենաառաջադիմականը ամերիկյան ապրելակերպն է, թե կապիտալի աշխարհը պետք է միավորվի ՍՍՀՄ-ի քաղաքականության ու մարքսիստական գաղափարախոսության դեմ։

ԱՄՆ-ի մոնոպոլիաները, միջազգային կորպորացիաները ձգտում են իրենց ձեռքում պահել ոչ միայն ԱՄՆ-ի, այլև մյուս երկրների մասսայական ինֆորմացիայի միջոցներն ու միջազգային կոմունիկացիաները։ Աշխարհի խոշորագույն հեռուստատրանսլյացիոն կորպորացիան (Ինտելսատը) ձևականորեն համարվում է մասնավոր կամպանիա, բայց համաշխարհային ընդգրկում ունեցող կորպորացիա է։ Այն վիթխարի շահույթներ է բերում ամերիկյան բիզնեսին, ծառայում է ԱՄՆ-ի իմպերիալիստական քաղաքականությանը։

Ներկա ժամանակաշրջանում ամբողջ աշխարհն է ներքաշված իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիայի շրջանակների մեջ։ Իմպերիալիզմի ծավալած «հոգեբանական պատերազմում» հարվածային ուժը ռադիոպրոպագանդան է, որը մեր օրերում վերածվել է իսկական ռադիոպատերազմի։

Սովետական Միության և սոցիալիստական երկրների ժողովուրդների լեզուներով հաղորդումներ են տալիս արտասահմանյան 40 ռադիոկայաններ։ Գաղափարախոսական դիվերսիայի համակարգում առանձնահատուկ տեղ ու դեր ունի «Ամերիկայի ձայն» ռադիոկայանը, որը շաբաթվա ընթացքում աշխարհի ժողովուրդների 41 լեզուներով տալիս է ավելի քան 1.000 ժամ ռադիոհաղորդում։

«Ամերիկայի ձայնի» հաղորդումների մոտ 25 տոկոսը տրվում է Սովետական Միության ժողովուրդների տարբեր լեզուներով։ ԱՄՆ-ի աշխարհակալական ձգտումների մեծացման հետ միասին աճում է այս ռադիոկայանի հաղորդումների ընդգրկման աշխարհագրությունը։ Հատկապես վերջին երկու-երեք տարիներին ուժեղացել է այդ ռադիոկայանի հաղորդումների պրովոկացիոն բնույթը։ ԱՄՆ-ի այս պետական ռադիոկայանից զատ ստեղծվել են «Ազատություն» և «Ազատ Եվրոպա» ռադիոկայանները, որոնք պետական չեն համարվում, բայց գործում են ԱՄՆ-ի կառավարության հատկացրած միջոցներով և ենթարկվում են միջազգային կապերի վարչությանը։ Ձևականորեն այս կայանների հաղորդումների գաղափարաքաղաքական բովանդակության վերահսկողությունն իրականացնելու պարտականությունը դրված է պետական դեպարտամենտի վրա, բայց իրականում այն կատարում է կենտրոնական հետախուզական վարչությունը։

«Ազատություն» և «Ազատ Եվրոպա» ռադիոկայանները շաբաթվա ընթացքում 22 լեզուներով տալիս են 1.010 ժամ հաղորդում, որի մոտ կեսը՝ 462 ժամը, տրվում է Սովետական Միության ժողովուրդների 16 լեզուներով։ Տարեցտարի աճում է այդ ռադիոկայանների բյուջեն, նորացվում է հաղորդիչ տեխնիկան, վերակառուցվում են ռադիոհաղորդիչ կայանները, ստեղծվում են նոր հզոր կայաններ։ Ռադիոկայանների հզորությունների, հաղորդաժամերի ու դրանց ընդգրկման աշխարհագրության մեծացման հետ միասին վերակա-



ռուցվում են ռադիոծրագրերը։ Կապիտալի աշխարհի գաղափարական պայքարի միջոցներն օգտագործվում են ո՛չ միայն իմպերիալիստական քաղաքականության պրոպագանդան, այլև սոցիալիստական երկրների դեմ քայքայիչ գործունեության կազմակերպման, հակահեղափոխական ուժերի ղեկավարման ու նրանց հրահանգավորման համար։

Իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիայի միջոցների շարքում ավելի ու ավելի առաջատար է դառնում հեռուստատեսությունը։ ԱՄՆ-ի իմպերիալիզմը, քողարկվելով «ինֆորմացիայի ազատ հոսք» լոզունգի տակ, տարեցտարի ուժեղացնում է իր հեռուստատեսային ներթափանցումը դեպի ուրիշ երկրներ։

60-ական թվականներին ԱՄՆ-ը երկու անգամ ավելի շատ հեռուստատեսային ծրագրեր էր արտահանել, քան մյուս բոլոր երկրները միասին վերցրած։ ԱՄՆ-ում 150 ընկերություններ մասնագիտացել են հեռուստածրագրերի արտադրության բնագավառում, որոնք արտահանվում են աշխարհի 130 երկրներ։ Արտասահման հաղորդվող ամերիկյան ծրագրերն ունեն բացահայտ պրոպագանդիստական բնույթ։ Նույնիսկ անգլերեն լեզվի հեռակա դասերն այնպես են կազմված, որպեսզի արտասահմանցին համոզվի, որ ԱՄՆ-ը «համընդհանուր բարեկեցության» երկիր է։

Արևմտյան պետությունները գերադասում են ոչ թե գնել ինֆորմացիա, այլ վաճառել։ ԱՄՆ-ի գաղափարախոսական էքսպանսիան միահյուսվում է նրա տնտեսական էքսպանսիայի հետ։ Ստեղծվել են գերհզոր կոնսորցիումներ, որոնց ձեռքում է ո՛չ միայն հեռուստասարքավորումների, հեռուստացույցերի, այլև զանազան ապրանքների ու դրանց ռեկլամների արտադրության ու վաճառքի մենաշնորհը։

Աշխարհի տարբեր ծայրերից ավելի ու ավելի հաճախ են հնչում բողոքի ձայներն այն մասին, որ ամերիկյան հեռուստածրագրերը լցված են «բռնության անվերջանալի տեսարաններով, որոնք ընդհատվում են կոկա-կոլայի, ծխախոտների, օճառի, թմրեցնող դեղամիջոցների, մազերի ամրացման և չքրտնելու միջոցների ռեկլամներով։ Որոշ երկրների կառավարություններ օրենսդրական քայլերի են դիմել ամերիկյան հեռուստածրագրերի ցուցադրումների ծավալը փոքրացնելու նպատակով։ Բայց այդ միջոցները ցանկալի արդյունք չեն տալիս, և հեռուստածրագրերի միջազգային շուկայում ԱՄՆ-ի բաժինը տարեցտարի ավելանում է՝ հասնելով տարեկան 150—200 հազար ժամի։

Միջազգային ասպարեզում «հեռուստատեսային մթնոլորտը» վերջին տարիներս խոր և արագ փոփոխության է ենթարկվում կապի տիեզերական միջոցների շնորհիվ։ Արդեն իրողություն է երկու մայրցամաքները միացնող «հեռուստակամուրջը»։ ԱՄՆ-ի պետական և մոնոպոլիստական շրջանները մեծ ակտիվություն են դրսևորում գիտության այդ նվաճումը իմպերիալիզմի տնտեսական, քաղաքական և գաղափարախոսական նպատակներին ծառայեցնելու համար։ Այսպես՝ միջազգային տիեզերական կապի Ինտելսատ կոնսորցիումն իրականացնում է միջմայրցամաքային կանոնավոր հեռուստակապ, որն այսօր ընդգրկում է ողջ երկրագունդը։ Հատկանշական է, որ դրա մեջ մտնող երկրների մեծ մասն ունեն միայն ընդունող կայաններ։ Ինտելսատի հաղորդած հեռուստածրագրերի 90 տոկոսն ստեղծվում է ԱՄՆ-ում, մասամբ նաև կապիտալիստական մյուս խոշոր երկրներում։

ԱՄՆ-ը բոլոր միջոցներին դիմում է Ինտելսատի ծրագրերի համար ճանապարհ հարթելու նաև դեպի սոցիալիստական երկրներ։ Ինչպես հայտնի է, արտասահմանյան մի քանի հեռուստատեսություններ հաղորդումներ են հասցեագրում Սովետական Միության մի քանի հանրապետություններին։ Առայժմ տեխնիկական միջոցները սահմանափակում են նման հաղորդումների շառավղի մեծացումը։ Բայց տեխնիկական առաջընթացն արդեն ստեղծում է հնարավորություն անմիջական հեռուստահաղորդում կազմակերպելու, ինչպես ասում են, «ուղղակի դուրս գալու հեռուստաէկրան աշխարհի բոլոր ծայրերում»։ Հաշված է, որ բավական է, երեք տիեզերական արբանյակ՝ ամբողջ երկրագունդը ԱՄՆ-ի հեռուստահաղորդումների ոլորտը ներառնելու համար։

Սովետական Միությունն ու սոցիալիստական երկրներն այս հարցի մա-

սին ունեն հստակ և միանգամայն հիմնավոր տեսակետ։ Նրանք գտնում են, որ անկախ տեխնիկական միջոցների ընձեռած հնարավորություններից, այս կամ այն երկրի վրա արտասահմանից հեռուստահաղորդում կազմակերպելը՝ առանց տվյալ երկրի համաձայնության, անթույլատրելի է և նշանակում է տվյալ երկրի սուվերեն իրավունքների խախտում։ Սովետական Միությունը վճռականապես դեմ է, որպեսզի տիեզերական տարածությունը վերածվի գաղափարախոսական դիվերսիայի ու քայքայիչ պրոպագանդայի ասպարեզի։ Այս առթիվ ՄԱԿ-ին Սովետական Միության ներկայացրած կոնվենցիայի նախագիծը քննարկվեց նրա գլխավոր ասամբլեայի 27-րդ նստաշրջանում և հավանության արժանացավ։

Իրական սոցիալիզմի դեմ «խաչակրաց արշավանքի» ելած պրոպագանդայի իմպերիալիստական միջոցների գործունեության մեջ ամենամեծ բաժինը պատկանում է «սովետական ռազմական սպառնալիքին», «Սովետական Միության ռազմական գերազանցությանը», «ուրիշ երկրների ներքին գործերին ՍՍՀՄ-ի միջամտությանը» վերաբերող նյութերին։

Մասսայական ինֆորմացիայի արտասահմանյան միջոցների գործունեության մեջ մեծ տեղ է գրավում նաև ազգային հարցը։ Նրանք ամեն կերպ աշխատում են խաղալ ՍՍՀՄ-ի կազմի մեջ մտնող ժողովուրդների ազգային զգացմունքների հետ։ Արևմուտքի պրոպագանդիստական կենտրոններում թխբկահարվող այսպես կոչված «ռուսիֆիկացման վտանգը», փոքր ժողովուրդների «իրավունքների ոտնահարումը», «նրանց ինքնատիպ մշակույթի ոչնչացումը» ծառայում են այդ նենգ նպատակին։ Նույն նպատակին է ծառայում ՍՍՀՄ-ում հավատի և կրոնի խնդիրների նկատմամբ այդ ռադիոկայանների դրսևորած արտակարգ հետաքրքրությունը։

Վերջին 3—4 տարիներին նկատելի փոփոխությունների ենթարկվեցին արտասահմանյան ռադիոկայանների հակասովետական հաղորդումների աղբյուրները։ Եթե նախկինում այդ նյութերը տրվում էին հիմնականում «սովետական այլախոհների» անունից և կամ վկայակոչելով նրանց, ապա այժմ շեշտակիորեն ավելացել է այն նյութերի քանակը, որոնք հեղինակել են սովետական կյանքի արտասահմանյան «մասնագետները»։ Մարդիկ, որոնք այդ դերի համար պատրաստվել են ամերիկյան խոշոր համալսարաններում, անցել քաղաքական, իսկ ոմանք՝ նաև լրտեսական աշխատանքի դպրոց և ունեն մի խնդիր՝ վարկաբեկել սովետական ապրելակերպը, սովետական պետության, մեր կուսակցության քաղաքականությունը։

Բուրժուական պրոպագանդայի գաղափարական ներազդման միջոցների ծրագրերում հատուկ տեղ են գրավում սոցիալիստական երկրների աճող սերնդին հասցեագրված հաղորդումները։ Երիտասարդ մարդուն իրենց ազդեցության տակ գցելու համար օգտագործվում են ամենաբազմազան և ամենաբազմաբնույթ միջոցներ՝ սկսած պրոպագանդիստական ճակատային հաղորդումներից մինչև վայրագ երաժշտությունը, անասնական բարքերի ու բարոյական սանձարձակությունների ռեկլամը։ Նպատակը մեկն է՝ ձգտել սոցիալիստական երկրների աճող սերնդին հեռացնել հայրերի ճանապարհից, քաղքենիության թեթև լարերի վրա խաղալ քաղաքական լուրջ հետևանքներ ունեցող խաղ։

Միայն ԱՄՆ-ում դրանով զբաղվում են գաղափարախոսական և հակասովետական պրոպագանդայի 460 կենտրոններ, որոնց մեծ մասի ուսումնասիրության օբյեկտը Սովետական Միության աճող սերունդն է։ Արևմուտքի ռադիոկայանները իրենց ստրատեգիական խնդիրն են համարում բոլոր միջոցներով Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ժողովրդական զանգվածների աչքում վարկաբեկել սոցիալիստական հասարակարգը և մարքս-լենինյան աշխարհայացքը։

Արևմուտքի իշխող դասակարգերն օգտագործում են մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները բուրժուական մշակույթի ու հոգեբանության, «մասսայական կուլտուրայի» տարածման համար։ Խոսքը նյութական ու հոգևոր մշակույթի պարզունակ, կաղապարված արտադրանքը մարդուն հասցնելու մասին է՝ ոչ թե լիարժեք անհատ ձևավորելու, այլ նրան խըրտ-



վիլակ, ռոբոտ, կամակատար դարձնելու մասին։ Այդ «կուլտուրան» աշխատավորությանը մեկուսացնում է իսկական մշակութային արժեքներից, նրանց հետաքրքրասիրությունները սահմանափակում նեղ անձնական, ընտանեկան շրջանակներով, մարդու մեջ ներարկում վախ և անվստահություն «մեծ աշխարհի» նկատմամբ։

«Մասսայական կուլտուրա» արտադրող ինդուստրիայի գլխավոր ու հարվածային ուժը իմպերիալիստական խոշոր երկրների և, առաջին հերթին, ԱՄՆ-ի հեռուստատեսությունն է։ Այն «տանը գամված» մարդկանց առատորեն մատակարարում է այսպես կոչված «օճառե օպերաներ», վեստերններ, դեդեկտիվներ, զվարճալի շոուներ, ինտելեկտուալ տարրերից գրեթե զուրկ վիկտորինաներ, կինոնկար-սարսափներ, ավտովթարներ, մոդայիկ երգիչներ և, իհարկե՝ ռեկլամներ։ Արևմտագերմանական սոցիոլոգ Հ. Կնիլը գտնում է, որ ԳՖՀ-ի հեռուստակենտրոնները զվարճությունների անվան տակ պրոպագանդում են ռասիզմ, ֆաշիզմ և հակակոմունիզմ։ «Սերիական կինոնկարները,— գրում է նա,— այլ բան չեն, եթե ոչ հեռուստատեսության բուլվարային գրականություն»։

Իհարկե, սովետական մարդիկ լավ գիտեն իմպերիալիստական հեռուստակենտրոնների և ռադիոկայանների խոսքի արժեքը, նրանց հետապնդած նպատակները, բայց և այնպես սխալ կլինի բացառել այդ կայանների հաղորդումների վտանգավորությունն ու առանձին անձանց վրա դրանց ազդեցությունը։

Հարկ է ուշադրություն դարձնել սկզբունքային կարևոր նշանակություն ունեցող ևս մեկ գործոնի։ Կապիտալիստական երկրների ռադիոկայանները հասարակական կացությունների արժեքավորման հարցում օգտագործում են բոլոր միջոցները՝ ապացուցելու կապիտալիզմի առավելությունները սոցիալիզմի նկատմամբ։ Դրանով է բացատրվում ռադիոհաղորդումներում «ամերիկյան ապրելակերպի»՝ ԱՄՆ-ում «հավասար հնարավորությունների» թըմբկահարումը։

Մեր հանրապետությունում լսելի են իմպերիալիստական ռադիոկայանների ո՛չ միայն հայերեն, այլև սովետական և արտասահմանյան մի շարք լեզուներով տրվող հաղորդումները։ Այժմ արդեն հայերեն հաղորդումներ են տալիս արտասահմանյան մեկ տասնյակից ավելի ռադիոկայաններ, դրանց թվում «Ամերիկայի ձայնը», «Բի-բի-սին», «Ազատությունը»։ Հայերեն հաղորդումների բնույթն ու միտումը, գրեթե նույնն են, ինչ սովետական մյուս ժողովուրդների լեզուներով տրվող հաղորդումներինը։ Այստեղ կա մի էական առանձնահատկություն, հայերեն հաղորդումներում զգալի տեղ է հատկացվում սփյուռքին, խոսվում է տարբեր երկրներում ձևավորված հայկական գաղթօջախների մասին, հաճախակի նյութեր են տրվում սփյուռքի մշակութային կյանքի մասին։ Քիչ չեն ազգայնական տրամադրություններ բորբոքող հաղորդումները։

Միջոցների մեջ խտրություն չդնելով՝ ստվերարկվում, խեղաթյուրվում են մեր իրականությունը, սովետական ապրելակերպն ու սոցիալիստական դեմոկրատիան՝ զրպարտելով եղբայրացած ազգերի լենինյան դաշնադրությունը։ Նպատակը մեկն է. սովետական մարդկանց հոգում սերմանել ազգայնական, հակակոմունիստական գաղափարներ ու տրամադրություններ։ Միայն մարդկային դեմքը, պատիվն ու խիղճը կորցրած, հայրենիքին ու ժողովրդին դավաճանած մարդիկ կարող են ամեն օր եթերը աղտոտել մեր իրականության, մեր երկրի մասին ամեն տեսակ հերյուրանքներով։

Այս առումով հարկ է անդրադառնալ նաև դաշնակցություն կուսակցությանը։ 1981 թ. վերջին Արևմտյան Գերմանիայում տեղի ունեցավ այդ կուսակցության XXII համագումարը, որը ցույց տվեց, որ այժմ ևս դաշնակցությունը հավատարիմ է իրեն և միջազգային իմպերիալիզմին։ Իր ուսերին վերցնելով «ազգային շահերի կրողի» ինքնակոչ տիտղոսը՝ դաշնակցությունը հոխորտում է, պահանջներ ներկայացնում, դատապարտում, գնահատականներ տալիս, կրկնում հազար անգամ ասված, իմպերիալիստական պրոպագանդիստական կենտրոններում թխված հորինվածքներ։

Անդրադառնալով ծշնամի գաղափարախոսությունների և պրոպագանդայի դեմ մղվող պայքարին՝ չի կարելի աչքաթող անել Իրանի և մասնավորապես Թուրքիայի հեռուստատեսությունն ու ռադիոն։

Վերջին տարիներս Թուրքիայի պրոպագանդայի միջոցները համառորեն կեղծում են ո՛չ միայն թուրք, այլև նրա հարևան ժողովուրդների պատմությունը։ Նրանց գործունեության մեջ ավելի ու ավելի մեծ տեղ է գրավում ձգտումը արդարացնելու օսմանյան կայսրության և, մասնավորապես, երիտթուրքերի քաղաքականությունը։ Լայն. պրոպագանդիստական աշխատանք է տարվում՝ ժխտելու հայ ժողովրդի դարավոր պատմությունը, դարերի խորքից եկող նրա մշակույթը... Չնայած թուրքական կառավարության հավաստիացումներին, այսօր էլ այդ երկրում քանդվում ու ոչնչացվում են հայկական հուշարձանները, փակվում են հայկական դպրոցները, իսկ թուրքական դասագրքերում Հայաստան անունը նույնիսկ չի հիշատակվում։ Նպատակը մեկն է՝ թուրք աշխատավոր զանգվածներից թաքցնել պատմական իրողություններն ու փաստերը, նրանց մեջ զարգացնել պանթուրքիզմի ոգին։

Թուրքական ռադիոն մասնավորապես մեծ ջանքեր է թափում Մերձավոր Արևելքի ժողովուրդներին, հատկապես արաբներին թյուրիմացության մեջ գցելու նպատակով։ Անցյալ տարի այդ ռադիոկայանը արաբերեն լեզվով տվեց 26 մասերից բաղկացած մի հաղորդաշար՝ 1915 թ. իրադարձությունների վերաբերյալ։ Դրանց հետևեց երկրորդ հաղորդաշարը՝ «Հայկական թղթապանակ» խորագրով։

Ասում են, թե ժամանակակից պայմաններում գաղափարախոսական հզոր միջոցներ ունենալը նույնքան կարևոր է, որքան ամուր պաշտպանությունը։ Սովետական Միությունը տիրապետում է այդպիսի հզոր միջոցների։ Մեր երկրի արտաքին քաղաքական պրոպագանդայում, իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիայի դեմ ծավալվող պայքարում առանձնահատուկ տեղ և նշանակություն ունեն սովետական ռադիոն և հեռուստատեսությունը։ Ռադիոհեռուստատեսային հաղորդումների ծավալով, այդ հաղորդումների տեխնիկական բազայով ու ընդգրկման տարածքով մենք աշխարհում գրավում ենք առաջնակարգ տեղերից մեկը։ ՍՍՀՄ-ում գործում են 120 հեռուստակենտրոններ, որոնք օրվա ընթացքում պատրաստում և եթեր են արձակում հարյուրավոր ժամ հեռուստահաղորդումներ։ Երկրում հաշվվում է 480 գերհզոր և 4.200 միջին ու փոքր հզորությամբ հաղորդիչ կայաններ, 89 «Օրբիտա» և 2.300 «Էկրան» ու «Մոսկվա» մակնիշի ընդունիչ-հաղորդիչ կայաններ, արհեստական արբանյակներ։ Կապի ռադիոռելեային և կաբելային գծերի երկարությունը հասնում է երեք միլիոն կիլոմետրի։ Երկրում կա 85 միլիոն հեռուստացույց։ Համամիութենական ռադիոն իր ծրագրերով օրվա ընթացքում եթեր է արձակում 180 ժամ ռադիոհաղորդում։ Ռադիոհաղորդումներ են տալիս 175 կոմիտեներ։ Մոսկվայից ու միութենական հանրապետություններից արտասահմանի համար տրվող հաղորդումների օրվա ծավալը 260 ժամ է, որոնք եթեր են տրվում աշխարհի 77 ժողովուրդների լեզուներով։

Սովետական հեռուստատեսությունն ու ռադիոն հարուստ փորձ են կուտակել երկրի բոլոր ազգերի ու ազգությունների նվաճումները համակողմանի լուսաբանելու ու ներկայացնելու ասպարեզում։ Նրանք լուրջ ներդրում են կատարում աշխատավորությանը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ոգով դաստիարակելու գործում, նպաստում են ազգային մշակույթների մերձեցմանն ու փոխհարստացմանը։ Մեծ չափերով աճել են սովետական ռադիոյի ու հեռուստատեսության միջազգային կապերը։ Նրանք համագործակցում են աշխարհի 121 երկրների 141 հեռուստատեսային և 119 ռադիոկազմակերպությունների հետ։

Սովետական հեռուստատեսության և ռադիոյի համակարգի բաղկացուցիչ մասերից են Սովետական Հայաստանի հեռուստատեսությունն ու ռադիոն։ Երևանի հեռուստառադիոկենտրոնը խոշորագույններից մեկն է երկրում. օրվա ընթացքում այն պատրաստում և եթեր է արձակում 38 ժամ ռադիոհաղորդում (որից 8 ժամը արտասահմանի համար) և 13,5 ժամ հեռուստահաղորդում։



Հանրապետությունը լրիվ ռադիոֆիկացված է։ Հայկական ՍՍՀ-ում ընդունվում է հեռուստատեսային 4 ծրագիր։

Գործունեության ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և հաջորդ պլենումների որոշումները և աշխատանքները վերակառուցելով այդ որոշումների ոգով, ՀՍՍՀ հեռուստառադիոհաղորդումների պետական կոմիտեի խմբագրություններն զգալի աշխատանք են կատարում աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության պրոպագանդման ու մասսայականացման բնագավառում։ Հաղորդումներում առանձնահատուկ տեղ են գրավում սովետական ապրելակերպի, զարգացած սոցիալիստական հասարակության նվաճումների պրոպագանդան, խաղաղության համար Սովետական Միության պայքարը։

Իրականացվում է միջոցառումների մի ամբողջ համակարգ, որը նպատակաուղղված է միջազգային, և առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմի պրոպագանդիստական բացահայտ ինտերվենցիայի դեմ հարձակողական, արդյունավետ հակապրոպագանդա ծավալելուն։ Այս իմաստով լուրջ խնդիրներ լուծելու են կոչված «Կապիտալի աշխարհի խորթ բարքերը», «Քո հասակակիցն արտասահմանում» և այլ հաղորդաշարեր ու խորագրեր, որոնք մեծ հետաքրքրություն են առաջացրել հեռուստադիտողների ու ռադիոլսողների շրջանում, իսկ «Իրադարձություններ, երկրներ, պրոբլեմներ» ծրագիրն ու քաղաքական մեկնաբանություններն ամենադիտվող հաղորդումներից են։

Հակապրոպագանդիստական աշխատանքի կարևոր մասն են կազմում նաև հրապարակախոսական զրույցներն ու ակնարկները, որոնցում համոզիչ կերպով բացահայտվում են թե՛ կապիտալիզմի ագրեսիվ քաղաքականության էությունը և թե սովետների երկրի, սոցիալիստական ընկերակցության ակտիվ ու անդուլ գործունեությունը՝ համաշխարհային խաղաղության ու զինաթափման համար մղվող պայքարում։ «Արձագանք» հանդեսը իր ուղղվածությամբ ու միտումով դարձել է նոր խնդիրների հավուր պատշաճի արձագանքողը։

Նպատակամետության առումով ուշագրավ են «Ժողովրդական վերահսկողության էկրան», «Հնգամյակի սոցիալ-տնտեսական պրոբլեմները» և «Հեռուստատեսային պրես-կոնֆերանս» հաղորդաշարերը։

Ինֆորմացիայի գլխավոր խմբագրությունը, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումից հետո, ավելի հաճախ է անդրադառնում հիմնարկ-ձեռնարկություններում, կոլեկտիվ ու պետական տնտեսություններում գործերի վիճակին, գաղափարական-քաղաքական աշխատանքներին։ Հեռուստատեսային ինֆորմացիայի հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի որոշումներից հետո զգալի աշխատանքներ են տարվում երկրի ներքին ու արտաքին իրադարձությունների մասին օպերատիվ ու լիարժեք ինֆորմացիա տալու նպատակով։

Հատկապես երիտասարդության շրջանում պլենումների որոշումները պրոպագանդելու միտումով երիտասարդական հաղորդումների գլխավոր խմբագրությունն ստեղծել է նոր հաղորդաշարեր ու ծրագրեր։ Երիտասարդական ծրագրերում կարևոր տեղ ունեն նաև «Առաջավոր փորձ», «Նախաձեռնել՝ նշանակում է աշխատել ստեղծագործաբար», «Սովորիր վաղվա համար», «Որակին՝ կոմերիտական հոգատարություն» և այլ խորագրեր։

Իրականացվում են մի շարք հաղորդումներ ու հաղորդաշարեր՝ նվիրված աճող սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակությանը։ Հաղորդումներ են պատրաստվում հեռուստադիտողների և ռադիոլսողների նամակների հիման վրա։ Նամակների հեղինակները պատմում են գործարաններում ու ֆաբրիկաներում, շինարարական կազմակերպություններում ու տրանսպորտում, կոլեկտիվ ու պետական տնտեսություններում արտադրության մարդկանց նախաձեռնությունների, նոր գործերի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման նպատակով կատարված աշխատանքների մասին։ Նրանք միաժամանակ բացահայտում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունները, նշում դրանց պատճառներն ու վերացման ուղիները։

Գաղափարախոսական պայքարի առումով կարևոր են արտասահմանի

համար տրվող ռադիոհաղորդումները, որոնք արտասահմանցի ունկնդիրներին հասցնում են ճշմարտությունը Սովետական Միության ու Սովետական Հայաստանի մասին, օգնում նրանց ճիշտ կողմնորոշվելու, չենթարկվելու իմպերիալիստական պրոպագանդայի որոգայթներին, կանգնելու խաղաղության և պրոգրեսի համար պայքարողների շարքերում։

Իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիային հակահարված տալու գործում վիթխարի է հեռուստատեսության և ռադիոյի գեղարվեստական ծրագրերի դերը։ Հայկական հեռուստատեսությամբ ու ռադիոյով հանդես են գալիս ո՛չ միայն հանրապետության, այլև Սովետական Միության և սոցիալիստական երկրների կատարողական լավագույն ուժերը։ Վերջին տարիներին քիչ գործ չի կատարվել սովետական ժողովուրդների երաժշտության, ինչպես նաև հայ ազգագրական երգի, պարի ու արվեստի մյուս ճյուղերի պրոպագանդման ասպարեզում։

Ամեն տարի հեռուստատեսությամբ ու ռադիոյով հաղորդվում է ավելի քան 70 բեմադրություն։ Հեռուստատեսությամբ ցուցադրվում են մոտ 600 գեղարվեստական և 1.000 փաստավավերագրական, գիտահանրամատչելի և երաժշտական կինոնկարներ։ Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում երեխաների ու մանուկների գեղագիտական դաստիարակությանը։ Այդ խնդրին են ծառայում «Գեղեցկի աշխարհում», «Մանկական համերգասրահում», «Աղբյուր», «Երաժշտական հանրագիտարան» և մի քանի այլ հաղորդաշարեր ու հանդեսներ։

Իհարկե, իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիայի դեմ պայքարում վճռական նշանակություն ունեն սոցիալիզմի համաշխարհային պատմական նվաճումների և սովետական ապրելակերպի համոզիչ, վառ և փաստարկված պրոպագանդումը, ինչպես նաև իմպերիալիզմի, նրա հետադիմական բնույթի ու քաղաքականության քննադատությունը։ Ելակետը մեկն է՝ պետք է ոչ թե պաշտպանվել, սեփական ճշմարտությունն ու իրավացիությունն ապացուցել, արդարանալ, այլ, ելնելով իրական սոցիալիզմի ընձեռած հնարավորություններից, ցույց տալ կապիտալիզմի նկատմամբ նրա անհերքելի և վիթխարի առավելությունները։ Առանձնահատուկ նշանակություն ունի իմպերիալիստական պետությունների՝ միջազգային հարաբերությունները սրելու, «սառը պատերազմի» ժամանակներին վերադառնալու և սպառազինությունների մրցավազք սանձազերծելու քաղաքականության հետևողական քննադատությունը։ Այս առումով մեծ է հանրապետության հեռուստատեսությամբ ու ռադիոյով միջազգայնագետների, ժամանակակից կապիտալիստական հասարակարգի ուսումնասիրությամբ զբաղվող սոցիոլոգների, պատմաբանների, տնտեսագետների, իրավաբանների, գիտության ու տեխնիկայի ասպարեզների մասնագետների, քաղաքական մեկնաբանների ելույթների, ինչպես նաև «Կապիտալիզմն առանց դիմակի», «Քո հասակակիցն արտասահմանում» և մի շարք այլ հաղորդումների ու հաղորդաշարերի նշանակությունը։

Հեռուստահաղորդումներում կարևոր տեղ ունեն նաև ինֆորմացիոն ծրագրերը, մասնավորապես միջազգային ինֆորմացիան։ Օրվա ընթացքում հանրապետական հեռուստատեսությամբ ու ռադիոյով եթեր է արձակվում 42 ինֆորմացիոն թողարկում, մոտ 500 ինֆորմացիաներ, որոնց կեսը ներկայացնում են արտասահմանում կատարված իրադարձությունները։ Գործնական միջոցառումներ են իրականացվում աշխարհի տարբեր ծայրերում կատարվող իրադարձություններին անմիջապես, առանց հապաղելու անդրադառնալու նպատակով, քանի որ ուշացումով ինֆորմացիա տալը նշանակում է ազատ տարածություն թողնել ինֆորմացիայի իմպերիալիստական միջոցների համար։ Պատահական չէ, որ Սովետական Միությանն ուղղված արտասահմանյան ռադիոհաղորդումներում վերջին տարիներս կրկնապատկվել է ինֆորմացիայի ծավալը։

Ինֆորմացիոն ծրագրերում հակապրոպագանդիստական բնույթի հաղորդումների մակարդակը բարձրացնելու համար հեռուստատեսությունում և ռադիոյում ստեղծվել են միջազգային ինֆորմացիայի բաժին և միջազգային իրադարձությունների մեկնաբանների բարձրորակ խումբ։



Սակայն արվածը միայն սկիզբն է մասսայական ինֆորմացիայի իմպերիալիստական միջոցների, մասնավորապես բուրժուական հեռուստատեսության և ռադիոյի դիվերսիոն ոտնձգություններին ժամանակին հակահարված տալու, հակապրոպագանդիստական հարձակողական պրոպագանդա ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի առաջադրած խնդիրների կատարման ասպարեզում։

Ո՛չ միայն արտաքին քաղաքական իրադրությունը, այլև ինքը՝ զարգացող, առաջ ընթացող կյանքը, սովետական մարդկանց կրթական ու կուլտուրական մակարդակի անընդհատ աճը, զարգացած սոցիալիստական հասարակության առաջադրած նոր խնդիրները պահանջում են կատարելագործել հեռուստառադիոհաղորդումները, բարձրացնել դրանց գաղափարական-գեղարվեստական մակարդակը։ Հակապրոպագանդիստական բնույթի մի քանի հաղորդաշարեր վերակառուցման կարիք ունեն։

Եթերում ընթանում է գաղափարախոսական անողոք ու անզիջում պայքար։ Ահա ինչու հեռուստատեսությունից ու ռադիոյից պահանջվում է առավել խոր մասնագիտացում, լայնախոհ, սթափ ու ճկուն մտածողություն, ոչ միայն անհանդուրժողականություն թշնամի գաղափարախոսության ու քաղաքականության նկատմամբ, այլև քաջիմացություն ու հետևողականություն դրանց մերկացման, դրանց շուրջը անողոք հասարակական ընդդիմադիր մթնոլորտ ստեղծելու համար։ Սովետական ռադիոյի ու հեռուստատեսության գործունեությունը հիմնված է ինֆորմացիայի միջոցների կուսակցականության, մասսայականության, ժողովրդայնության և ճշմարտացիության սկզբունքների վրա։

Հաղորդումների արդյունավետությունը պայմանավորված է դրանց գաղափարական մակարդակով ու քաղաքական նպատակամետությամբ, մասսայականությամբ, հանրապետության առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների գործնական լուծմանը նպաստելու ունակությամբ, լայն զանգվածների հետ ունեցած կապով։

Այժմ առավել, քան երբեք, պահանջվում է կոմպլեքսային մոտեցում դաստիարակչական աշխատանքի նկատմամբ, և այդ գործում մեծ է նաև մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի տարբեր միջոցների համատեղ աշխատանքի դերը։ Այդ նպատակով իսկ հանրապետության հեռուստատեսությունն ու ռադիոն ձեռնարկել են պրոպագանդայի ու ագիտացիայի մյուս օրգանների հետ համատեղ աշխատանքի հեռանկարային պլանների մշակմանը։ Հետևողական աշխատանք է տարվում ռադիոհեռուստատեսային հաղորդումների պրոֆեսիոնալ ու գեղարվեստական մակարդակի հետագա բարձրացման, դրանց ժանրային միապաղաղության և նկարագրական բնույթի հաղթահարման ու վերլուծականության մակարդակի բարձրացման, նրանց հուզականության, փաստարկվածության և առավել համոզիչ դարձնելու մարզում։

Մեծ է ռադիոյի, հեռուստատեսության, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների դերը հակասովետական պրոպագանդայի դեմ մղվող պայքարում։ «...Իմպերիալիստական հետադեմ ուժերը, ամենից առաջ ԱՄՆ-ի կառավարող վերնախավը,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում,— նյութելով համաշխարհային տիրապետության ղառանցական պլաններ, իրենց ագրեսիվ քաղաքականությամբ մարդկությանը հրում են դեպի միջուկային աղետի եզրը։ Սովետական Միության, սոցիալիզմի երկրների դեմ մղվում է իր մասշտաբներով և լպիրշությամբ աննախադեպ հոգեբանական պատերազմ։ Չխորշելով կեղծիքից ու զրպարտությունից, բուրժուական պրոպագանդան ձգտում է վարկաբեկել սոցիալիստական կարգերը, խարխլել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը։ Ուստի այսօր առանձնահատուկ կարևորություն են ստանում աշխատավորների դասակարգային կոփումը, բուրժուական գաղափարախոսության դեմ անզիջում պայքարը»։

---

# ՊԵՏԱԿԱՆ ՏԵՌՈՐԻԶՄԸ ԱՄՆ-Ի ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՑՔՆ Է

**Ս. ՉՈԲԱՆՅԱՆ**

ՏԵՌՈՐԻԶՄԸ, ՈՐՊԵՍ ԱՐԴԻ իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականություն, նոր երևույթ չէ։ Այն ծագել է իմպերիալիզմի հետ միաժամանակ, ուղեկցել նրան։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում տեռորիզմը դրսևորվում է իբրև միջազգային բնույթի հանցագործություն։ Իմպերիալիզմին հատուկ տեռորիզմը միջազգային քրեական հանցագործություն է։ ԱՄՆ-ի պետականորեն կազմակերպված տեռորիզմը քաղաքական նպատակ է հետապնդում, այն է՝ հասնել իմպերիալիստական տիրապետության, որով և հարվածի տակ են դրվում բոլոր երկրների, պետությունների ու ժողովուրդների շահերը։

Տեռորիզմը և զանգվածային սպանությունները արդի փուլում դարձել են ֆաշիստական և դիկտատորական վարչակարգերի ռեակցիոն ուժերի ամենօրյա քաղաքականությունը։ Պետականորեն կազմակերպված տեռորիզմն ԱՄՆ-ի կառավարական շրջանների ձեռքին դարձավ ներքին ու արտաքին քաղաքականության կարգավորման, ինչպես նաև ագրեսիվ գործողությունների իրականացման ամենագլխավոր զենքերից մեկը։ Արդի պայմաններում իմպերիալիստական շրջաններին միջազգային իրավունքի նորմերի ու սկզբունքների պահպանումը պարտադրելը նշանակում է պաշտպանել մեր մոլորակի խաղաղությունը, ապահովել մարդկանց գոյության համար իրոք մարդկային պայմաններ, նպաստել սոցիալական պրոգրեսին։

Հետպատերազմյան շրջանում ամերիկյան քաղաքականությունը նոր որակական փոփոխություններ կրեց։ «Նյու Յորք Թայմսի» մեկնաբանությամբ խոսքը վերաբերում է «արտաքին քաղաքականությունում ամերիկյան բացարձակ նոր դոկտրինային, որն օրինականացնում է ԱՄՆ-ի ռազմական ակցիաները»։ Այդ դոկտրինան աշխարհի հսկայական շրջաններ «ամերիկյան գոտի է» հռչակում։ Այդ քաղաքականությունը մեկնարկ է վերցրել դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից առաջ՝ 1945 թվականի ապրիլի վերջին։ Անգլիան ու ԱՄՆ-ը ոչ միայն սկսեցին խզել նախկինում ստեղծված կապերը, այլև բացահայտորեն պայքար հռչակեցին սոցիալիզմի դեմ։ Համաշխարհային սոցիալիզմի, միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժման դեմ ուղղված բոլոր ռեակցիոն ուժերի գլուխ կանգնեց ամերիկյան իմպերիալիզմը։

Նման արտաքին քաղաքականության իրականացումը հանգեցրեց սուր առճակատման կապիտալիզմի և սոցիալիզմի աշխարհների միջև։ 1945—1949 թվականներին ԱՄՆ-ը քառասուներեք պետությունների հետ երկկողմյա պաշտպանական համաձայնագրեր կնքեց, որոնց նպատակն էր ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ պայքարի լայն ճակատի ստեղծումը։

Այս բուռն հակակոմունիստական գործունեության արդյունքն այն եղավ, որ ԱՄՆ-ը, պրեզիդենտ Հ. Տրումենի գլխավորությամբ, միջազգային հարաբերությունների ոլորտ ներմուծեց «ուժի դիրքերից» նոր կուրսը, որը փաստորեն ժխտում էր միջազգային իրավունքը, խախտում միջազգային համագործակցությունը, ընթանում հիտլերիզմի ուղիով։



Հիրոսիմայի և Նագասակիի ատոմային ռմբակոծությունը ատոմային շանտաժի դրսևորում էր, որի նպատակը Սովետական Միության ահաբեկումն էր և հետպատերազմյան աշխարհի կարգավորման վրա ազդելու ձգտումը։ Ճապոնիայի վրա ատոմային ռումբեր գցելով՝ ԱՄՆ-ի կառավարողները հույս ունեին իրականացնել իրենց իմպերիալիստական նկրտումները։ Փաստորեն ատոմային ռումբի կիրառումը Միացյալ Նահանգների համար Երկրորդ համաշխարհային պատերազմի ոչ թե վերջին գործողությունն էր, այլ «սառը պատերազմի» առաջին լուրջ ճակատամարտը։

Իր ստեղծման օրվանից ի վեր կենտրոնական հետախուզական վարչությունը (ԿՀՎ) անմիջապես ներգրավվեց ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականության մեջ, հանդիսացավ ուրիշ պետությունների ներքին գործերին խառնվելու գլխավոր նախաձեռնողն ու կազմակերպիչը։ Սկսվեց միջազգային մասշտաբի զանգվածային տեռորը։

Շտաբների պետերի կոմիտեի հրամանով 1948 թ. կեսերին կազմվեց «Չարիոտիր» պլանը։ Պատերազմը պետք է սկսվեր արևմտյան կիսագնդի և Անգլիայի բազաներից կենտրոնացված օդային հարձակումներով՝ ատոմային ռումբի կիրառմամբ, կառավարական, քաղաքական ու վարչական կենտրոնների, արդյունաբերական քաղաքների և նավթաթորման արդյունաբերության ընտրովի ձեռնարկությունների վրա։ Տրումենի խառնախումբը «Չարիոտիր» պլանով նախատեսել էր պատերազմի սկզբնական ժամանակաշրջանում՝ երեսուն օրվա ընթացքում, սովետական 70 քաղաքների վրա գցել 133 ատոմային ռումբ։ Դրանցից 8-ը՝ Մոսկվայի վրա, որով քաղաքի տարածքից պիտի ավերվեր 40 քառակուսի մղոն և 7-ն էլ Լենինգրադի վրա՝ համապատասխանորեն 35 քառակուսի մղոնի ավերածությամբ։ Դրան հաջորդող պատերազմական երկու տարիների ընթացքում նախատեսվում էր գցել ևս 200 ատոմային ռումբ և 250 հազար տոննա սովորական ռումբ։ Ստրատեգիական ավիացիայի հրամանատարությունը ենթադրում էր, որ այդ ռմբակոծությունների ընթացքում կամ դրանցից հետո Սովետական Միությունն իրեն պարտված կճանաչեր։

ՏԱՍՍ-ի 1949 թ. սեպտեմբերի 25-ի այն հաղորդագրությունից հետո ևս, թե Սովետական Միությունը դեռ 1947 թ. տիրապետում է ատոմային զենքի գաղտնիքին, Պենտագոնը չդադարեցրեց իր ագրեսիվ քաղաքականությունը Սովետական Միության դեմ, այլ, ընդհակառակը, դիմեց կոնկրետ քայլի. այս անգամ ծրագրեց և սահմանեց պատերազմ սկսելու օրը՝ 1950 թ. հունվարի 1-ը։ Սակայն շուտով պարզ դարձավ, որ ԱՄՆ-ը բավարար չափով ուժ չունի Սովետական Միությանը պարտության մատնելու համար, ագրեսիան տեղափոխվեց կոալիցիոն պատերազմի նախապատրաստման ոլորտը, որի համար ժամանակ էր պետք։ Իբրև մարտական գործողությունների սկիզբ սահմանվեց 1957 թ. հունվարի 1-ը։

1960 թ. սկզբին ԿՀՎ-ում ստեղծվեց «գաղտնի օպերացիաների» դեպարտամենտ, որի հիմնական խնդիրն էր ակտիվորեն ֆինանսավորել, նախապատրաստել, հանդերձավորել և օգտագործել վարձկանների, տեռորիստների՝ ազգային-ազատագրական, ինչպես նաև երկրի ներսում ու նրանից դուրս ծավալվող հակաիմպերիալիստական շարժումները ճնշելու համար։ Պետականորեն կազմակերպված տեռորիզմը, որպես «սառը պատերազմի» քաղաքականության շարունակություն, ԱՄՆ-ի կառավարող շրջանների ձեռքին դարձել է երկրի ներքին ու արտաքին քաղաքականության կարգավորման գլխավոր միջոցներից մեկը։ Նույն տարում ԿՀՎ-ի գործակալները Հավանայի ծովածոցում պայթեցրին «Կուբրե» շոգենավը, որի հետևանքով եղան բազմաթիվ սպանվածներ ու վիրավորներ։ Միաժամանակ ԱՄՆ-ի օդանավերը ռմբակոծեցին երկրի տարբեր շրջանները։ Իսկ ամերիկյան ռազմանավերը մտան Նիկարագուայի նավահանգիստները՝ ժողովրդական շարժման դեմ Սոմոսայի վարչակարգի բռնություններին աջակցելու նպատակով։ 1961 թ. ԿՀՎ-ի վարձկանները ներխուժեցին Կուբա, բայց կործանիչ պարտություն կրեցին։ 1965 թ. ԱՄՆ-ի ավելի քան 40 հազար ծովային հետևակներ ներխուժեցին Դոմինիկյան Հանրապետություն, ճնշեցին Ֆ. Կաամանյուի գլխավորած հեղափոխությունը, իսկ երկիրն օկուպացրին։ ԿՀՎ-ն ծախսեց 70—80 մլն դոլլար և ֆաշիստական հե-

ղաշրջում կազմակերպեց Չիլիում, որի հետևանքով սպանվեց պրեզիդենտ Ալիենդեն։

Սակայն «սառը պատերազմի» քաղաքականությունը, որպես ճնշման և ահաբեկման միջոց, լիովին չարդարացրեց իմպերիալիստական աշխարհի հույսերը։ Պատահական չէ, որ վերջին տարիներս ԱՄՆ-ը եռանդուն ճիգեր է գործադրում սպառազինությունների մրցավազքի տեմպերն ուժգնացնելու համար։ Քանակապես մեծացվում, որակապես կատարելագործվում են միջուկային և սովորական զենքերը, մշակվում են նոր, առավել կործանարար զենքի տեսակներ։ Հուժկու թափով աշխատանք է ծավալվում տիեզերքի ռազմականացման նպատակով։

Երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումը իմպերիալիզմի գաղութային համակարգի քայքայման սկիզբը դրեց։ Իրականացնելով իր նպատակադրումները, ԱՄՆ-ի կառավարությունը ձգտում էր արգելակել պրոգրեսիվ պատմական ընթացքը Մերձավոր ու Միջին Արևելքում, պահպանել իր ռազմաստրատեգիական ու տնտեսական դիրքերն այդ շրջանում, մասնավորապես Իսրայելն օգտագործելով որպես արաբ ժողովուրդների հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական շարժումը ճնշելու, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, սոցիալական պրոգրեսի և խաղաղության բոլոր ուժերի դեմ պայքարելու գործիք։ Իսրայելի ագրեսիայի հետևանքով Պաղեստինի ժողովուրդը զրկված է իր պետություն ստեղծելու իրավունքի իրականացման հնարավորությունից։

Միացյալ Նահանգների կողմից ագրեսոր պետությանը հսկայական գումարներ և զենք տրամադրելը վերջինիս դարձրել է արաբական երկրների դեմ պայքարի, շանտաժի ու տեռորի գործիք, Մերձավոր Արևելքում ամերիկյան ամրակետ։

Պատերազմի ամերիկա-իսրայելական հրձիգների ավազակային ծրագիրը ենթադրում է ամերիկյան համաշխարհային կայսրության ստեղծում։ Ռազմական շանտաժի, տեռորի և բռնության միջոցով ԱՄՆ-ը ձգտում է նախ և առաջ Մերձավոր Արևելքը վերածել ամերիկյան իմպերիալիստների ռազմական հենակետի։ Այս արկածախնդրական ծրագրում կրկնվում են նույն հետադիմական ռասանգական մտահղացումները, որոնցով ժամանակին տարված էին Եվրոպան «գերմանականացնելու» հիտլեր-գյորինգյան ֆաշիստ մոլագարները և Ասիան ճապոնականացնելու Տանակա—Տոձիո ավազակախմբի անդամները։ Իրենց իսկ հովանավորողներից է Իսրայելը փոխառել մյուս ազգերի նկատմամբ հրեական ազգի «գերազանցության» ֆաշիստական գաղափարախոսության դրույթը։

ԱՄՆ-ի և նրա կամակատարների ագրեսիվ քաղաքականությունը, պետականորեն կազմակերպված տեռորիզմը ոչնչով չի տարբերվում ֆաշիստական Գերմանիայի ագրեսիվ քաղաքականությունից և զանգվածային տեռորից։ Միայն ամերիկյան Բրուկինգսի ինստիտուտի տվյալներով 1946—1975 թվականների ընթացքում ԱՄՆ-ը 215 անգամ ուղղակի կամ անուղղակի կերպով դիմել է զինված ուժ գործադրելուն կամ այլ երկրների սպառնացել ռազմական միջամտությամբ։ Վաշինգտոնում 19 անգամ օրակարգում դրվել է միջուկային զենք կիրառելու հարցը, այդ թվում 4 անգամ սպառնալիքն անմիջականորեն ուղղված է եղել ՍՍՀՄ-ի դեմ։ ԱՄՆ-ը 1945 թ. հետո եղած ռազմական կոնֆլիկտների նախաձեռնողը կամ մասնակիցն է եղել։ Այդ կոնֆլիկտներում սպանվել է ավելի քան 10 միլիոն մարդ։

Փաստերը մի անգամ ևս ապացուցում են, որ ինչպես մինչև երկրորդ համաշխարհային պատերազմի սկիզբը երրորդ ռայխի պարագլուխներն էին բազմիցս խախտում միջազգային պայմանագրերը, համաձայնություններն ու համաձայնագրերը, այնպես էլ Վաշինգտոնը պատերազմի ավարտից հետո սկսեց անտեսել ու խախտել միջազգային զինվորական տրիբունալի ստատուսի 6-րդ հոդվածը, որում նշված է. «Ներքոհիշյալ գործողությունները կամ դրանցից ցանկացածը հանցագործություններ են, որոնք ընդդատյա են Տրիբունալին և որոնց կհետևի անձնական պատասխանատվություն.

ա) հանցագործությունն ընդդեմ խաղաղության, այն է՝ ի խախտումն միջազգային պայմանագրերի, համաձայնագրերի և հավաստիացումների, ագրեսիվ պատերազմ ծրագրելը, նախապատրաստելը, սանձազերծելը կամ վարելը, կամ վերոհիշյալ գործողություններից ցանկացածի իրականացման նպատակով ընդհանուր դավադրությանը մասնակցելը»։



ԱՄՆ-ի սերտ ռազմական համագործակցությունն Իսրայելի հետ շարունակում է ծավալվել նաև 80-ական թվականներին։ ԱՄՆ-ի կոնգրեսի ներկայացուցիչների պալատը օրինագիծ է ընդունել, որով 1983 թ. Իսրայելին ցույց տրվեց շուրջ 2,2 միլիարդ դոլլարի տնտեսական ու ռազմական օգնություն։ Ի դեպ, Թել Ավիվում դժգոհ մնացին այդ գումարից և խնդրեցին այն ավելացնել առնվազն ևս մեկ միլիարդով։

Սպիտակ տունը լավ է յուրացրել հիտլերիզմի խայտառակ քաղաքականությունը։ Իրենց գաղափարախոսության հիմքում ԱՄՆ-ի կառավարող շրջանները դրել են ֆաշիստական «գեոպոլիտիկայի» ռասանգական հակագիտական դրույթները և դրանցով զինել իրենց խոսափողները։ Պատահական չէ, որ Պիտսբուրգի համալսարանի պրոֆեսոր Վեյգերտը ֆաշիստական ոգով գրում է, թե ողջ աշխարհը պետք է դառնա ԱՄՆ-ի տարածքը, իսկ բոլոր այն ժողովուրդները, որոնք խանգարում են ԱՄՆ-ին, պետք է «վերացվեն»։ Այդ քաղաքականությունում ԱՄՆ-ի կառավարող շրջաններն ակտիվ կերպով օգտագործում են ԿՀՎ-ն՝ լրտեսության, դիվերսիայի, տեռորի, արյունալի պատժիչ օպերացիաների կենտրոնը։ ԿՀՎ-ի առավել խոշոր, այսպես կոչված, «հատուկ» օպերացիաների հետևանք են. 1967 թ. դավադրությունը, որը հանգեցրեց լատինաամերիկյան ականավոր հեղափոխական Չե Գևարայի սպանությանը, 1974 թ. և 1976 թ. սպանվեցին Ալիենդեի կաբինետի նախկին մինիստրներ Կ. Պրատսը և Օ. Լետելյերը, 1960—1981 թթ. բազմիցս ձեռնարկվեցին Կուբայի ղեկավար Ֆ. Կաստրոյի սպանության փորձեր, 1981 թ. կազմակերպված օդային աղետի հետևանքով զոհվեց Պանամայի գվարդիայի գլխավոր հրամանատար, գեներալ Տորրիխոսը։

1978—1981 թթ. Արգենտինայում քաղաքական շարժառիթներով սպանվել է 8.000 մարդ, առևանգվել՝ 20.000, բանտերում տառապում են 10.000 քաղբանտարկյալներ, 3.700 մարդ ձերբակալվել են միմիայն կասկածի հիման վրա, Երկիրը լքել է 700 հազար բնակիչ։ Ուրուգվայի բանտերում են գտնվում 6.000 քաղբանտարկյալներ, Չիլիում 200.000 մարդ «անցել են» Պինոչետի համակենտրոնացման ճամբարներով ու զնդաններով, 2.500-ը «անհայտ կորել են»։ Գվատեմալայում վերջին 25 տարիների ընթացքում սպանվել է 70.000 մարդ, 30.000-ը «անհայտ կորել են»։ Հազարավոր հայրենասերներ սպանվել են կամ տառապում են Պարագվայի, Սալվադորի, Բրազիլիայի, Հոնդուրասի զնդաններում։

ԱՄՆ-ը 1979 թ. Լատինական Ամերիկայի երկրներին իբրև ռազմական «օգնություն» տրամադրել է 32,1 մլն դոլար, իսկ 1980 թվականին՝ 38,7 միլիոն։ Այս միտումը հատկապես վերընթաց գծով է զարգանում Ռ. Ռեյգանի վարչակազմի օրոք։ ԿՀՎ-ի գծով ծախսերը կազմում են ավելի քան մեկ միլիարդ դոլլար։ ԱՄՆ-ի այդ կենտրոնացված հետախուզական որջը, ի խախտումն գործող միջազգային նորմերի և միջազգային իրավունքի, բիրտ կերպով միջամտում է շատ երկրների ներքին գործերին։

Պատահական չէ, որ ԿՀՎ-ի «գաղտնի օպերացիաների» դեպարտամենտը 1983 թ. ԱՄՆ-ի մինչև ատամները զինված ծովային հետևակազորն ուղարկեց Գրենադայի կղզիները և զենքի ու զանգվածային տեռորի միջոցով օկուպացրեց փոքրիկ ազատասեր պետությունը։ ԱՄՆ-ն այդ ագրեսիան կատարեց ԱՄՆ-ի, այսպես կոչված, «եռնաբակի» պաշտպանության և արևմտյան կիսագնդում «կոմունիստական ներկայությունը» թույլ չտալու պատրվակով, դրանով «հիմնավորելով» իմպերիալիստական ավազակությունը։ Կանադական «Տորոնտո ստար» թերթն այդ կապակցությամբ գրել է. «ԱՄՆ-ի պրեզիդենտը և նրա գլխավորած վարչակազմը իրենց սկսել են պահել որպես միջազգային ավազակների մի խումբ— տեռորի են ենթարկում փոքր երկրներին, խաբում են իրենց դաշնակիցներին և թյուրիմացության մեջ են գցում սեփական երկրի հասարակայնությանը։ Սովերեն Գրենադա ներխուժելուց հետո Ռեյգանի վար-

չակազմը ևս մի քայլ առաջացավ իր «հրետանավակների դիվանագիտությունում»։

Գրենադայի նկատմամբ ԱՄՆ-ի ագրեսիան զայրույթ ու բողոքներ հարուցեց ամերիկյան երկրների կազմակերպությունում (ԱԵԿ) և աշխարհի խաղաղասեր երկրներում։ Ագրեսիան դատապարտեցին Մեքսիկայի, Կոլումբիայի, Կոստա Ռիկայի, Պանամայի, Պերուի, Նիկարագուայի և Վենեսուելայի ներկայացուցիչները։ ԱԵԿ-ի մշտական խորհրդում Բոլիվիայի ներկայացուցիչ Ֆերնանդո Սալասարը հայտարարեց, որ ագրեսիայի զոհն «այսօր Գրենադան է, իսկ վաղը կարող է լինել ցանկացած մեկ այլ երկիր»։ ԱՄՆ-ի կոնգրեսի ներկայացուցիչների պալատի անդամ, Կալիֆոռնիայի նահանգից դեմոկրատ Ռ. Դելլեմսը «Վաշինգտոն պոստ» թերթում Ռեյգանի վարչակազմի արարքը գնահատեց որպես տեռորիստական ակտ ընդդեմ Գրենադայի։

ԿՀՎ-ի գործակալները զինված բանդաներ են հավաքագրում և ուղարկում Նիկարագուա՝ սաբոտաժ և տեռոր կազմակերպելու նպատակով։ Այս տարվա ապրիլին Կարիբյան ավազանում անցկացվեցին ևս մեկ՝ «Օուշն վենչեր—84» անվանմամբ զորախաղեր։ Պենտագոնի աչքի ընկնող ներկայացուցիչները հայտարարել են, թե այդ զորախաղերը կշարունակվեն «մինչև դարի վերջը»։ Նիկարագուայի հյուսիս-արևմտյան ծովափին ակտիվորեն գործում են ամերիկացիների վարժեցրած և զինած սոմոսականների թափթփուկները՝ «կոմանդոսները», նավահանգիստների ականապատմամբ են զբաղված ԿՀՎ-ի փորձագետները, որոնք այդ նպատակով կիրառում են արդիական տեխնիկական միջոցներ, այդ թվում նաև սուզանավեր։ Ականներից պայթել են ճապոնական «Տասիրո-մարու» նավը, Նիկարագուայի «Պեդրո Արաուսո» ձկնորսանավը, որի հետևանքով մարդկային զոհեր են եղել։ Ազատ նավագնացության միջազգային իրավունքի սկզբունքների կոպիտ խախտման հետևանքով տուժեց նաև սովետական «Լուգանսկ» հեղուկանավը։

ԿՀՎ-ն ու Պենտագոնը զանգվածային ներխուժումներ են իրականացնում Նիկարագուա, բռնություն ու տեռոր են կիրառում խաղաղ բնակչության դեմ, քայքայիչ գործողությունների ու շանտաժի դիմում, հավաքագրում են անկայուն տարրերին, այդ ամենն ուղեկցում տնտեսական դիվերսիայով։ Վերջերս ԱՄՆ-ը մեծացրել է ռազմական օգնությունը Սալվադորի ու Գվատեմալայի հետադիմական վարչակարգերին։ ԱՄՆ-ը Գվատեմալան վերածել է իր պլացդարմի, այնտեղ ռազմական բազաներ, օդանավակայաններ է կառուցում՝ Նիկարագուայի և նրա ժողովրդի դեմ նոր պրովոկացիաների նպատակով։ Չեն դադարում զրպարտչական հայտարարություններն ու սպառնալիքներն ընդդեմ Նիկարագուայի և նրա ժողովրդի։ Կոպիտ հարձակումների օբյեկտ են դարձել նաև սոցիալիստական Կուբան, Մեքսիկան, Կոլումբիան և մյուս երկրները։ Այսպիսով ԱՄՆ-ն իրեն իրավունք է վերապահում կոպիտ կերպով միջամտել ուրիշ երկրների գործերին, անպատկառորեն ոտնահարելով նրանց սուվերենությունը, նրանց պարտադրելով իր կարգերը։

ԿՀՎ-ի մշակած «Սյեռա» պլանով նախատեսվում էր սոմոսական թափթփուկների կողմից նվաճել Նիկարագուայի տարածքի մի մասը և հռչակել «ժամանակավոր» կառավարություն։ Սակայն այդ պլանը ևս ձախողվեց։ «Սովորական զորախաղերի» քողի տակ ԱՄՆ-ը Հոնդուրասում կենտրոնացնում է ավիացիա, հրետանի և զորքեր, որոնք ցանկացած րոպեին ի վիճակի են կատարելու զինված ներխուժում։

ԱՄՆ-ի ագրեսիվ տեռորիստական քաղաքականությունն ազդում է ՆԱՏՕ-ի երկրների քաղաքական պրոցեսների և կողմնորոշման վրա։ Մասնավորապես Իտալիայում այդ նպատակներով ծախսված է 30—40 մլն դոլլար։ Աֆրիկայի տեռորիստական կազմակերպություններին աջակցելու նպատակով Սպիտակ տունը տարեկան հատկացնում է ավելի քան քսան մլն դոլլար։

«Գաղտնի օպերացիաների» դեպարտամենտն իր հիմնական ջանքերն ուղղել է նախ և առաջ ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների դեմ։ Արդեն ստեղծվել են մի շարք հակասովետական քայքայիչ կազմակերպություններ։ Դեպարտամենտի ագրեսիվ գործունեության նպատակն է



պաշտպանել «սովետական ռազմական սպառնալիքի» վերաբերյալ Սպիտակ տան առաջադրած պրովոկացիոն-տեռորիստական դրույթները։

Աֆղանստանում հաստատված ժողովրդական կարգերի տապալման նպատակով ԿՀՎ-ն կանոնավորապես ֆինանսավորում, զենք ու զինամթերք է մատակարարում բանդիտական կազմակերպություններին, վարձկաններին ու դուշմաններին։ ԿՀՎ-ն հավաքագրում է քրեական տարրերին, մարդասպաններին և դրանց ուղարկում Աֆղանստանի տարածքը՝ երկրի հասարակական կյանքը կազմալուծելու, բնակչությանը տեռորի ենթարկելու, անմեղ մարդկանց, ակտիվիստներին ու պետական գործիչներին սպանելու, սնդամթերքի և վառելանյութերի պահեստները հրկիզելու և այլ նպատակներով։

Սպիտակ տանը հաստատված միլիոնատերերը, որոնք կապիտալ են վաստակում սպանության միջոցների արտադրությամբ, զրպարտության, տեռորի և զինված ագրեսիայի միջոցով փորձում են ամերիկյան մոնոպոլիստներին վերադարձնել վերջին տասնամյակներում համաշխարհային ասպարեզում նրանց կորցրած դիրքերը, նվաճել նորերը։

Ռեյգանի վարչակարգը, ղեկավարվելով պետական տեռորիզմի և «ուժի դիրքերից» քաղաքականությամբ, ձեռնամուխ է եղել ագրեսիվ հարձակողական զինված ուժերի հետագա մեծացմանը։ ԱՄՆ-ի ստրատեգիական հարձակողական ուժերի մարտական զորամասերում կա միջուկային զենքի 2.346 կրող։ Ընդհանուր նշանակության ցամաքային զորքերում կան օպերատիվ-տակտիկական հրթիռների շուրջ 200 արձակման կայանք, 12.500 տանկ, շուրջ 19 հազար զրահամեքենա, 16.500 դաշտային հրանոթ ու ականանետ։ Ռազմաօդային ուժերի կազմում կա 8.700 զանազան տիպի օդանավ։

Երկրի սահմաններից դուրս տեղաբաշխված ԱՄՆ-ի ընդհանուր նշանակության ուժերից առավել հզոր խմբավորումը գտնվում է Եվրոպայում։ Դրա կազմի մեջ մտնում են 337.400 զինվոր ու սպա և ԳՖՀ-ի զորքերի հետ միասին կազմում են ՍՍՀՄ-ի ու Վարշավայի պայմանագրի մյուս երկրների դեմ ուղղված ՆԱՏՕ-ի միացյալ զինված ուժերի գլխավոր հարվածային ուժը։ ԱՄՆ-ը Միջերկրական ծովում և Ատլանտյան օվկիանոսում պահում է իր 6-րդ և 2-րդ օպերատիվ նավատորմերը, որոնց կազմում ընդհանուր հաշվով կան ավելի քան 180 մարտական նավեր։ Իր կարևորությամբ երկրորդ՝ ընդհանուր նշանակության ուժերի խմբավորումը ծավալված է Խաղաղ օվկիանոսի գոտում, որի անձնակազմի թիվը հասնում է 474.000 մարդու, ունի 140 մարտական նավ և ավելի քան 1.100 մարտական օդանավ։

ԱՄՆ-ի արտաքին քաղաքական նոր ստրատեգիան հենվում է Ռեյգանի վարչակազմի առաջադրած երկարատև՝ «մի քանի շաբաթ կամ ամիս տևող» միջուկային պատերազմ վարելու սկզբունքի վրա, որում հույս է հայտնվում «հասնել հաղթանակի»։ Ընդ որում ՍՍՀՄ-ի դեմ ագրեսիա սանձազերծելու դեպքում Պենտագոնը հույս ունի գերճշգրիտ «Պերշինգ—2» հրթիռների միջոցով (թռիչքի ամենաերկար տևողությունը 5—6 րոպե է) հանկարծակի հարվածներ հասցնել Սովետական Միության ստրատեգիական միջոցներին և նվազեցնել ԱՄՆ-ի տարածքին հասցվելիք պատասխան հարվածի ուժը։

Պրեզիդենտ Ռ. Ռեյգանը 1981 թ. հոկտեմբերի 17-ին արդյունաբերական թերթերի խմբագիրների հետ ունեցած զրույցի ժամանակ բացահայտորեն խոստովանելով, որ սպառազինությունների մրցավազք հրահրողը ԱՄՆ-ն է, հայտարարեց. «Ռուսները չեն կարող մեր ետևից հասնել»։ Իսկ Եվրոպա կատարած այցելության ժամանակ նա ՆԱՏՕ-ի խորհրդի նստաշրջանում հայտարարեց «հանուն ազատության խաչակրաց արշավանք» սկսելու ամերիկյան վարչակազմի մտադրության մասին, որն արտացոլվեց ՆԱՏՕ-ի խորհրդի 1982 թ. հունիսյան նստաշրջանի որոշումներում։

Ողջ աշխարհը լավ է տեսնում այն սպառնալիքը, որ մարդկության համար ստեղծվել է ամերիկյան իմպերիալիզմի վարած քաղաքականության հետևանքով։ ՍՄԿԿ XXVI համագումարը հստակորեն բնութագրեց Սպիտակ տան քաղաքական կուրսը. «Արկածախնդրություն, իրենց նեղ-շահադիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն՝ ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում

իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ։ Լիակատար արհամարհանք ցուցաբերելով ժողովուրդների իրավունքների և իղձերի նկատմամբ, նրանք փորձում են ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը պատկերել որպես «տեռորիզմի» դրսևորում։ Նրանք հիրավի նպատակ են դրել հասնել անհասանելիին՝ պատնեշ կանգնեցնել աշխարհում առաջադիմական փոփոխությունների ճանապարհին, իրենց վերադարձնել ժողովուրդների բախտը տնօրինողների դերը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 32)։

Կարևոր է նշել, որ մինչև օրս ՄԱԿ-ը միջազգային իրավական ակտ չի ընդունել միջազգային տեռորիզմի վերաբերյալ։ Միջազգային տեռորիզմի սահմանման շուրջ բանավեճը շարունակվում է։ Շատ պետություններ պնդում են, որ այդ արարքը որակվի որպես առավել վտանգավոր միջազգային հանցագործություն։ Հատկանշական է, որ դեռևս 1926 թ. քրեական իրավունքի մասնագետների միջազգային կոնֆերանսում փորձեր եղան տեռորիզմը որակել որպես միջազգային բնույթի ծանրագույն հանցագործություն։ Սակայն մասնակիցների մեծամասնությունը դեմ արտահայտվեց նման նախագծին։

Հետաքրքրական է, որ ավելի քան 50 տարի անց, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի XXVII նստաշրջանում ԱՄՆ-ը ներկայացրեց միջազգային տեռորիզմի դեմ պայքարին նվիրված կոնֆերանս հրավիրելու առաջարկ՝ ազգային-ազատագրական շարժումները տեռորիզմ հռչակելու իմպերիալիստական դիրքերից ելնելով։ Սակայն այդ նախագիծը մերժվեց։

Այսօր աշխարհում տիրող վիճակը պահանջում է նոր լրացուցիչ ջանքեր գործադրել պատերազմի սպառնալիքը վերացնելու, միջազգային անվտանգությունն ամրապնդելու նպատակով,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։ Հրատապ խնդիրներից մեկը պետականորեն կազմակերպված տեռորիզմը որպես ծանրագույն միջազգային հանցագործություն սահմանելու հարցն է։

Իմպերիալիստական պետությունները, հատկապես ԱՄՆ-ի կառավարող շրջանները պետք է գիտակցեն, որ ագրեսիվ քաղաքականությունը կարող է հանգեցնել մարդկության կործանման։ Այժմ, ինչպես երբեք, անհրաժեշտ է արգելապատնեշ դնել մարդկանց զանգվածային ոչնչացման նորանոր՝ գործնականում անվերահսկելի միջոցների ստեղծման ճանապարհին։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Կ. Ու. Չեռնենկոն կուսակցության Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում շեշտեց. «Մեծ Լենինը մեզ ավանդել է տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը։ Մենք միշտ էլ հավատարիմ ենք այդ սկզբունքին։ Այժմ՝ միջուկային զենքի և գերճշգրիտ հրթիռների դարում այդ սկզբունքը ժողովուրդներին հարկավոր է ավելի, քան երբևէ։ Ցավոք, կապիտալիստական երկրների որոշ ղեկավարներ, ինչպես երևում է, դրանում իրենց պարզ հաշիվ չեն տալիս կամ էլ չեն ուզում տալ... Սովետական Միությունը, որպես սոցիալիստական մեծ տերություն, լիովին գիտակցում է ժողովուրդների հանդեպ ունեցած իր պատասխանատվությունը խաղաղության պահպանության ու ամրապնդման համար։ Մեր դռները բաց են բոլոր մայրցամաքների պետությունների հետ փոխշահավետ, խաղաղ համագործակցության համար։ Մենք կողմնակից ենք, որ միջազգային բոլոր վիճելի պրոբլեմները խաղաղությամբ լուծվեն լուրջ, իրավահավասար, կոնստրուկտիվ բանակցությունների միջոցով»։

---

Նրանք մարտնչել են

հայրենիքի համար

# ԱԿԱՆԱՎՈՐ ԾՈՎԱԿԱԼԸ

**Աշոտ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆՈՒՄ իր ողջ էությամբ դրսևորվեց սովետական զորավարական արվեստի ուժը, նրա ակնբախ առավելությունը հակառակորդի ռազմական ստրատեգիայի ու տակտիկայի նկատմամբ։ Սովետական ականավոր զորավարների շարքում իր արժանի տեղն ունի Սովետական Միության նավատորմի ծովակալ, Սովետական Միության հերոս, ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ, ՀՍՍՀ ԳԱ պատվավոր անդամ Հովհաննես Ստեփանի Իսակովը։

Տեր-Իսահակյանների աղքատացած ընտանիքից սերած Հովհաննեսը պատանի տարիներից զգացել է ցարական ապայական արտոնյալ դասի արհամարհական վերաբերմունքն իր նկատմամբ։ Իսակովի մոր՝ Իդա Անտոնովնա Լաուրեի նախնիները Շվեդիայից էին, իսկ նա ինքը ծնվել էր Էստոնիայում, Տարտու քաղաքից ոչ հեռու։ Ոչ ոք չէր կարող գուշակել, թե ինչ կդառնա շագանակագույն աչքերով նրա որդին, որ ծնվել էր 1894 թվականի օգոստոսի 22-ին, Հաջիքենդ գյուղում։ Հայրը՝ ղարաբաղցի Ստեփան Եգորովիչը, հայտնի էր իբրև ճանապարհաշինարար-տեխնիկ։

Պատանու բնավորության մեջ միահյուսվել էին հարավցու կրակոտ խառնվածքն ու հյուսիսցու սառնարյունությունը, ջերմ սիրտը և սթափ միտքը։ Վաղ մանկությունից ռոմանտիկ սիրով նա ձգտում էր դեպի ծով։

Անցան տարիներ։ Իրականացան նրա ըղձանքները, և Հովհաննեսն իր ողջ կյանքը նվիրաբերեց ծովային անհուն տարածքներին՝ նավատորմին։

...1929 թվականին նա վերջացրեց Կ. Ե. Վորոշիլովի անվան ռազմածովային ակադեմիան, ուր այնուհետև վարել է պրոֆեսորադասախոսական աշխատանք։ Այսպես նա Բալթիական նավատորմի հրամանատար է, 1938 թվականի հունվարից՝ ռազմածովային նավատորմի ժողովրդական կոմիսարի տեղակալ և, համատեղությամբ՝ ռազմածովային ակադեմիայի պետ։ Սովետա-ֆիննական պատերազմի շրջանում և Հայրենական մեծ պատերազմի տարիներին Իսակովը ռազմածովային ուժերի գլխավոր շտաբի պետն է, ղեկավարում է նավատորմերի և նավատորմիկների ռազմական գործողությունները.

ԲԱԼԹԻԱԿԱՆ ՀԻՆ ԾՈՎԱՅԻՆ Միխայիլ Աֆանասևիչ Ստեպանովի հետ իմ ծանոթությունն սկսվել է դեռ 1957 թվականի գարնանը։ Ստեպանովը եղել է Սևաստոպոլի ռազմական գլխավոր նավահանգստի կուսակցական-քաղաքական աշխատանքի պատասխանատու կազմակերպիչը։ 1924 թվականի ամռանը նրան իր մոտ է կանչում Սևծովյան նավատորմի ռազմհեղխորհրդի անդամ Գ. Պ Կիրեևը։

— Այսպես, ընկեր Ստեպա՛նով, ցանկանում ենք ուղարկել քեզ «Կոմինտերն» էսմինեցը, որպես կոմիսար։ Հրամանատար է նշանակված այնտեղ ռազմածովային սպա Իսակովը։

Նավատորմում լավ հայտնի էր Ստեպանովի զգուշավոր վերաբերմունքը նախկին ցարական սպաների նկատմամբ։ Այդ մասին գիտեր և Սևծովյան նավատորմի ռազմահեղափոխական խորհուրդը։

— Իսակովը,— շարունակեց Կիրեևը,— մյուս բոլորից տարբերվում է իր նախաձեռնողականությամբ, ինքնուրույնությամբ։

— Ես ընդունում եմ հրամանատարի միայն հեղափոխական նախաձեռնությունը,— պատասխանեց Ստեպանովը,— իսկ ինչպիսի՞ մարդ է նա։

Կիրեևը Իսակովի հետ ծանոթացել էր 1917 թվականին, Հելսինգֆորսում և, ինչպես երևում է, լավ էր ուսումնասիրել նրան։

— Դե, ինչ,— ասաց ռազմհեղխորհրդի անդամը,— նա ազնվականներից է, ճիշտ է՝ ոչ տոհմական... Ռազմաճակատ է ընկել ուսանո-

դակաև ճատարանից: Իսկ թե հեղափոխությունից հետո որտեղ է ծառայել, դու գիտես: Գոհացնո՞ւմ է քեզ նրա կենսագրությունը:

— Գոհացնելը գոհացնում է, բայց ինչո՞ւ նա կուսակցության անդամ չէ:

— Մի՛ շտապիր: Աշխատիր մարդու հետ, իմացիր նրան ավելի լավ, ավելի խոր: Աշխատիր, կճանաչես, կտեսնենք:

Եվ ահա Ստեպանովն Օդեսայում է: Գիշերեց այդտեղ և հաջորդ օրը մեկնեց Նիկոլաև: Ճանապարհին ծանոթացավ Իսակովի կնոջ՝ Օլգա Վասիլևնայի հետ, որ գնում էր ամուսնու մոտ: Բայց այն, որ Օլգան Իսակովի կինն է, Ստեպանովը հետո իմացավ:

Նիկոլաևի նավամատույցում կնոջն էր սպասում Իսակովը: Օլգա Վասիլևնան Ստեպանովին ներկայացրեց ամուսնուն:

— Ահա, Վանո՛, կոմիսար եմ բերել քեզ համար,— ժպտաց, կատակով ավելացրեց,— ի՛նքս եմ ընտրել:

— Ջուր չեք նախազգուշացրել գալստյան մասին,— ասաց Իսակովը,— մեկին կուղարկեի՝ իրերը բերելու:

Նույն օրվա երեկոյան Իսակովը կոմիսարին պատմեց էսմինեցում տիրող գործերի վիճակի մասին: Իրականում էսմինեց չկար, կար միայն գործարանում կանգնած խոշոր մի կմախք: Կմախքի մարմնավորումը դանդաղ էր ընթանում. մերթ մի արտադրամասը, մերթ մյուսը ուշացնում էին մեխանիզմների մատակարարումը: Այդ զայրացնում էր հրամանատարին.

— Գործարանի արտադրամասերի կարգապահությամբ պետք է զբաղվի նաև նավի կոմիսարը: Միտք չունի ներփակվել անձնակազմի շրջանակներում, մանավանդ որ առայժմ անձնակազմը բաղկացած է ընդամենը հինգ հոգուց, և նրանք էլ ամբողջ օրը գործարանում են: Վաղը կգնանք գործարան:

Ստեպանովին դուր չեկավ այդ: Ստեղծվում էր այն տպավորությունը, որ հրամանատարն սկսում է կարգադրություններ անել ո՛չ միայն նավի անձնակազմին, այլև կոմիսարին... Բայց Ստեպանովը զսպում էր իրեն. «Տեսնենք հետո ինչ կլինի»:

Հաջորդ օրվա առավոտյան Ստեպանովը Իսակովի հետ եկավ գործարան: Զննեցին «կմախքը», ապա անցան արտադրամասերով: Այդտեղ կոմիսարը տեսավ և անձնակազմը: Գլխավոր ավագ տուրբինավար Վասիլի Պուզենկովը կոմիսարի առջև կանգնեց ոչ թե որպես նավաստի, այլ իբրև հմուտ բանվոր: Նա բծախնդրորեն զննում, շոշափում էր կառուցվող նավի համար պատրաստվող տուրբինի կարևոր մասերը:

Իսակովը Ստեպանովին թողեց մեխանիկական արտադրամասում, իսկ ինքն ուղղվեց գործարանի կառավարչություն: Խոսելով տղաների հետ՝ կոմիսարը նրանցից ևս լսեց, որ գործարանն ուշացնում է մեխանիզմների մատակարարումը: Ստեպանովը զրուցեց արտադրամասի պետի հետ: Վերջինս հավատացնում էր կոմիսարին, որ ուշացման համար ոչ թե իրենք են մեղավոր, այլ ինքը՝ էսմինեցի հրամանատարը:

— Հրամանատարն ի՞նչ մեղք ունի այստեղ,— զարմացավ Ստեպանովը:

Պարզվեց, որ գործարանում փորձում են հանձնել ոչ լիովին ստուգված մեխանիզմներ և, ընդ որում, համոզում են հրամանատարին ու անձնակազմին ընդունել նավը գործարանային և հանձնման-ընդունման փորձարկումներից հետո, և գտնում են, որ հարկ չկա ամեն մի մեխանիզմի մանրուքները պրպտելու: Իսկ Իսակովը իրավամբ պահանջում է, որ դրվեն անթերի պատրաստված, մանրակրկիտ ստուգված մեխանիզմներ:

Այս ամենը բացատրելով կոմիսարին՝ Իսակովը հարցրեց, թե Ստեպանովը ծանո՞թ է մեխանիկային: Ստանալով փոքր ի շատե գոհացուցիչ պատասխան՝ հրամանատարը հանձնարարեց կոմիսարին ստանձնել որևէ մեխանիզմի վերահսկողությունը:

Ստեպանովն այդպես էլ արեց: Պրակտիկան հաստատեց հրամանատարի իրավացիությունը:

Մի անգամ կոմիսարն ասաց Իսակովին.

— Զարմանում եմ, դուք՝ հին ծով, որտեղի՞ց այդպես լավ գիտեք մեխանիկան:

— Այնքան էլ ճիշտ չէ, թե ես հին ծով եմ: Չէ՛ որ ես միջման եմ դարձել տասնյոթ թվականին: Իսկ ինչ վերաբերում է մեխանիկայի որոշ հիմունքների իմ իրազեկությանը, ապա զարդեմարինյան դպրոց ես եկել եմ տեխնոլոգիական ինստիտուտից: Եվ հետո՝ ես ո՛չ միայն սովորում էի, այլև աշխատում էի գործարանում: Այնպես որ մեխանիկայից ես որոշ բան հասկանում եմ...

Օրեցօր լրացվում, համալրվում էր անձնակազմը: Հրամանատարը սաստիկ ծանրաբեռնված էր: Նավի կառուցումը շատ ժամանակ էր խլում: Բացի դրանից նա կատարում էր նավատորմի շտաբի հույժ հանախակի տրվող հանձնարարությունները... Նա չէր կարողանում և չէր էլ կամենում խույս տալ լրացուցիչ առաջադրանքներից:

Ստեպանովի համար Իսակովի հետ աշխատելն ավելի ու ավելի դյուրին էր դառնում: Այն ժամանակ նավատորմում գոյություն չուներ միանձնյա ղեկավարություն, այդ մասին միայն խոսում էին: Բայց Իսակովը հաճախ միջամտում էր կոմիսարի պարտականություններին: Մի անգամ նա առաջարկեց կոմիսարին հրավիրել անձնակազմի կուսակցական ժողով և խոսել կարգապահության մասին:

— Ժամանակ կգտնեմ, զեկուցումը կպատրաստեմ, հետո ժողով կհրավիրեմ:

— Միխայիլ Աֆանասևիչ, իսկ ինչպե՞ս դուք կվերաբերվեիք, եթե կուսժողովում կարգապահության վիճակի մասին ես զեկուցեի:

— Դեմ չեմ: Մանավանդ, անձնակազմը ձեզ հարգում է: Ձեր զեկուցումը կուսակցական ժողովում գործի համար առավել օգտավետ կլինի:

Պետք է ասել, որ այն ժամանակներում անկուսակցական հրամանատարին բոլորովին թույլ չէր տրվում խառնվել կուսակցական գործերին: Բայց Ստեպանովն այդ մասին չէր էլ մտածում:

Իվան Ստեփանովիչը հանգամանալի զեկուցում կարդաց կարգապահության վիճակի, կուսակցական կազմակերպության խնդիրների մասին. նրա կոնկրետ առաջարկությունները արժանացան նավի անձնակազմի, բոլոր կոմիսարների հավանությանը: Պատրաստված բանաձևը չգոհացրեց Ստեպանովին, և նա առաջարկեց կուսակցական ժողովի որոշման համար հիմք ընդունել հրամանատարի զեկուցման դրույթները: Կոմունիստները համաձայնեցին:

...«Կորֆու» էսմինեցի կառուցումն ավարտված էր, և այն նախապատրաստում էին գործարանային փորձարկումների:

Նավաստիները որոշեցին նոր անուն տալ նավին: Մի անգամ Ստեպանովը առաջարկեց Իսակովին Ուկրաինայի Կենտգործկոմի նախագահ Գրիգորի Իվանովիչ Պետրովսկու պատվին էսմինեցը կոչել «Պետրովսկի»: Իսակովը երկմտեց. նա գտնում էր, որ հարմար չէ նավերը, քաղաքները, գործարանները կոչել կենդանի մարդկանց անունով:

Կարճատև վիճաբանությունից հետո Իսակովը, այնուամենայնիվ, զիջեց: Նավի վրա ռազմածովային դրոշ բարձրացնելու օրը հրավիրվեց և Պետրովսկին: Նրա ձեռքից Իսակովն ընդունեց նավի ռազմածովային դրոշը և «Ինտերնացիոնալի» հնչյունների տակ բարձրացրեց այն: Ապա գործարանի դիրեկտորը «Յուժմաշտրեստի» (որի կազմի մեջ էր Նիկոլաևի նավաշինական գործարանը) կառավարչի հետ միասին որոշեցին համեստ ճաշկերույթ տալ: Սեղանի շուրջը Գրիգորի Իվանովիչը հարցրեց Իսակովին, թե ինչո՞ւ նա կուսակցության շարքերում չէ:

Իսակովը պատասխանեց.

— Ժամանակին ես չընդունվեցի կուսակցության շարքերը, որովհետև քիչ գիտեի նրա մասին: Իսկ հիմա, երբ կուսակցությունը դարձել է կառավարող, երբ նրա շարքերն ընդունվում են մեր երկրի միայն լավագույն մարդիկ, բայց երբեմն խցկվում են նաև անարժանները, ես չեմ ցանկանում, որ որևէ մեկը մտածի, թե ես շահադիտական մղումներից եմ ընդունվում կուսակցության մեջ:

Պետրովսկին ժպտաց.

— Կուսակցության շարքերն ընդունելով ղեկավար աշխատող ընկերների, կուսակցությունն ու պետությունը դժվարին պարագաներում կարող են մեծ վստահությամբ հենվել նրանց վրա:

— Շնորհակալ եմ վստահության համար, Գրիգորի Իվանովիչ,— ասաց Իսակովը,— ես, անշուշտ, կընդունվեմ կուսակցության շարքերը: Եթե երբևէ ծովում հանդիպեմ թշնամուն, ապա նա կհամոզվի, որ սովետական ռազմանավի հրամանատարը սովետական սպա է, բոլշևիկների կուսակցության անդամ: Եվ, եթե հարկ լինի ընկնել մարտում հանուն հայրենիքի, ես կարող եմ մեռնել այնպես, ինչպես մահացել են ինձնից առաջ իմ բոլշևիկ ընկերները:

— Մի քանի օր անց,— շարունակեց Ստեպանովը,— մենք համեստորեն ճանապարհեցինք Գրիգորի Իվանովիչ Պետրովսկուն: Հրաժեշտի պահին, արդեն կայարանում, վագոնից դուրս գալուց առաջ Գրիգորի Իվանովիչն ինձ ասաց. «Չմոռանաս այն ամենի մասին, ինչ խոսեցինք»:

— «Պետրովսկի» էսմինեցի Սևծովյան նավատորմի գործող նավերի շարքն անցնելուց հետո,— պատմում է Ստեպանովը,— սկսվեցին դրա ռազմածովային փորձարկումները՝ Իսակովի հրամանատարությամբ: Այդ ընթացքում լիովին դրսևորվեցին նրա՝ որպես ռազմանավի հրամանատարի հատկանիշները և, ես կարծում եմ, մեր օրերում վատ չի լինի հիշել նավը և անձնակազմը ղեկավարելու նրա մեթոդները: Ես չեմ քաշվում խոստովանել, որ որպես կոմիսար առաջինը պետք է ճանաչեի մարդկանց, բայց, այնուամենայնիվ, անձնակազմին ես ավելի քիչ գիտեի, քան Իսակովը: Ես շատ բան սովորեցի նրանից:

Ստեպանովի հաջորդ հանդիպումը Իսակովի հետ տեղի ունեցավ 1933 թվականին, երբ նա դասախոսում էր Կ. Ե. Վորոշիլովի անվան ռազմածովային ակադեմիայում: Արդեն լայնորեն ճանաչված էր Իսակովի անունը՝ իբրև ռազմածովային գործի տեսաբանի: Այդ ժամանակ Հովհաննես Ստեփանովիչը ուսումնասիրում էր տակտիկայի և ստրատեգիայի հարցերը. հայտնի են նրա հետևյալ աշխատությունները— **Ստորանավերի գործողությունները առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ** (հեղինակակիցներ՝ Վ. Ա. Բելլի և Ա. Պ. Ալեքսանդրով), Յինդաուի տակ տեղի

կաթյա նյարդերի տեր, կազմակերպչական արտակարգ ունակությամբ օժտված ղեկավար: Ռազմաճակատի ռազմական խորհուրդը որոշեց բեռների տեղափոխման ղեկավարությունը հանձնարարել ռազմական խորհրդի անդամ ծովակալ Իսակովին: Հովհաննես Ստեփանովիչը ձեռնամուխ եղավ այդ հույժ անհրաժեշտ գործին: Նա խորացնում էր լճի քարքարոտ հատակը և ամայի ափին կառուցում նավամատույցներ: Օրական հինգից վեց անգամ նա շրջում էր ապագա նավահանգստի տարածքի վրա, խրախուսելով ու ոգևորելով հոգնած բանվորներին, զինվորներին, նավաստիներին: Հովհաննես Ստեփանովիչին հաջողվեց շատ բան անել, սակայն նրան վիճակված չէր ավարտին հասցնել սկսած գործը: Բալթիկ ծովում հիտլերականների ակտիվ գործողությունները պահանջում էին, որ Իսակովը վերադառնա իր անմիջական պարտականությունների կատարմանը»:

Սմոլնիում, Հյուսիս-արևմտյան ուղղության շտաբում, այդ օրերին Իսակովին շատ հազվադեպ կարելի էր տեսնել. նա այնտեղ էր, ուր հատկապես ծանր, վտանգավոր էր իրավիճակը:

Հիշենք և Տալինը, որտեղ նա մասնակցեց Բալթիական նավատորմի և ռազմաճակատի ցամաքային զորքերի հետ համատեղ գործողությունների նախապատրաստմանն ու ղեկավարմանը: Կրոնշտադտում ղեկավարեց ծովի կողմից Լենինի քաղաքի մատույցների պաշտպանության նախապատրաստությունն ու կազմակերպումը: Ակտիվ մասնակցել է Լենինգրադի անմիջական ծովային պաշտպանությանը և լճային ռազմական նավատորմիկների (Լադոգայի, Օնեգայի, Չուդի) կազմակերպմանը՝ մոբիլիզացնելով, զինելով ու համալրելով առևտրական նավատորմի նավերը, ապահովելով դրանց և ռազմաճակատի հրետանու փոխգործողությունը:

Երբ 1941 թվականի սեպտեմբերին ֆաշիստական զորքերը հասան Լենինգրադի մատույցներին, մեծ դեր խաղաց քաղաքի՝ հըմուտ և ժամանակին կազմակերպված ծովային պաշտպանությունը: Օրհասական այդ օրերին Իսակովն ակտիվ մասնակցեց Լադոգա լճի վրայով Կիրովի անվան էվակուացվող գործարանի հաստոցներն ու սարքերը Ուրալ փոխադրելու գործին: Ուրալում արագ կազմակերպվում էր տանկերի արտադրությունը:

1941 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻՆ Իսակովը կանչվեց Մոսկվա՝ աշխատելու ծովային գըլխավոր շտաբում: Սակայն 1942 թվականի գարնանը, երբ Հյուսիսային Կովկասի և Ղրիմի ռազմաճակատներում դրությունն անբարենպաստ էր, Իսակովը կրկին թողեց մայրաքաղաքը:

**Այդ ժամանակ** հարավում ռազմաճակատի **գիծը** հասնում էր Կովկասյան գլխավոր լեռնաշղթային: Մեր զորքերը մեծ ջանքերի գնով պահպանում էին կովկասյան ծովափի նեղ շերտը: Սևաստոպոլը պաշտպանվում էր հարձակվող ֆաշիստական զորքերի ու ավիացիայի շրջափակման մեջ: Սևծովյան նավատորմի նավերը բազավորվել էին կովկասյան ծովափում:

Իսակովը եկավ Կրասնոդար՝ կոորդինացնելու ռազմաճակատի ու նավատորմի գործողությունները. ռազմական խորհրդի անդամ էր նա, Հարավ-արևմտյան ուղղության (հետագայում՝ Հյուսիս-կովկասյան ռազմաճակատ) հրամանատարի տեղակալ: Նրան **կարելի էր** տեսնել Կերչի նեղուցում, պահականավերի վրա, Սովետական Միության մարշալ Ս. Մ. Բուդյոննու հետ: Այդ ժամանակ անհրաժեշտ էր կազմակերպել Թամանյան թերակղզու՝ Ղրիմը թողնող մեր զորքերի փոխադրումը: Նա հաճախ էր լինում առաջապահ մարտկոցներում, Ցեմեսկի նավամատույցում:

Հյուսիս-կովկասյան ռազմաճակատի լուծարումից հետո, 1942 թվականի սեպտեմբերին, ծովային օպերատիվ խումբը Իսակովի ղեկավարությամբ հասավ Թբիլիսի, որտեղ գըտնըվում էր Անդրկովկասյան ռազմաճակատի շտաբը: 1942 թվականի հոկտեմբերի 2-ին փոխծովակալ Ռուտկովսկու հետ նա մեկնեց ռազմաճակատի գիծը՝ Նովոռոսիյսկ: Հոկտեմբերի 4-ին սկսվեց Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերի հարձակումը Տուապսեից հյուսիս՝ լեռնանցքի վրա: Քանի որ այդ օպերացիային մասնակցում էին ծովային հետևակը և ծովային հրետանին, Իսակովը փոխեց երթուղին և Անդրկովկասյան ռազմաճակատի հրամանատարության հետ մեկտեղ ուղղվեց ռազմաճակատի զորքերի գործողությունների ծավալման շրջանը: Ինդյուկ երկաթուղային կայարանի մոտերքում լեռնային նեղ ճանապարհով ընթացող մեքենաները անսպասելիորեն ենթարկվեցին հակառակորդի երեք յունկերսների հարձակմանը:

Ահա թե ինչ պատմեց ինձ այդ մասին ծովակալի համհարզ փոխգնդապետ Ա. Ի. Սոկոլովը. «Առաջին ռումբերի պայթյունից հետո մոտակայքում ես տքնոց լսեցի: Սողալով մոտեցա և այն, ինչ տեսա, սարսափելի էր. Իվան Ստեփանովիչը պառկած էր բերանքսիվայր, ձախ ոտքի վրա ոմբաբեկորից բացված խոր, մեծ վերք էր: Ես օգնության կանչեցի լեյտենանտ Մելնիկովին: Կապելով վերքը՝ «М—1» մեքենայով մենք նրան տարանք բուժանգումարտակ: Այստեղ Իվան Ստեփանովիչին արյուն ներարկեցին: Հետո բեռնատար մեքենայով ուղարկեցին նրան դաշտային հոսպիտալ, որ գտնվում էր անտառում, Ինդյուկ երկաթուղային կայարանից ոչ հեռու: Մշակեցին վերքը, տեղափոխեցին Սոչիի հոսպիտալը: Այստեղ, վիրավորվելու երրորդ օրը, սկսվող գազային փտախտի պատճառով, կըտրեցին Իվան Ստեփանովիչի ձախ ոտքը»:

Վիրահատությունը կատարած սովետական սկանավոր վիրաբույժ Յուստին Յուլիանովիչ Ջանելիձեն հիշում է.

— Մենք՝ բժիշկներս, ունենք մի չգրված օրենք, չբուժել մեզ մոտիկ, մեզ համար թանկ մարդկանց: Այս դեպքում ես նամաձայնեցի կատարել վիրահատությունը: Անդամահատության նպատակը Իսակովի կյանքը փրկելն էր:

Իսակովի հոսպիտալում եղած ժամանակ լուր ստացանք, որ նա պարգևատրվել է Ուշակովի շքանշանով: Պատասխանելով շնորհավորանքներին՝ Հովհաննես Ստեփանովիչը, դեռևս լրիվ չապաքինված, նավաստիներին ուղարկեց հետևյալ նամակը.

«Կովկասյան ռազմաճակատի ծովային խմբին
Թանկագին ընկերնե՛ր

Շնորհակալություն շնորհավորանքների և ապագայի մաղթանքների համար: Հավատացեք, որ այն ամենը, ինչ մնացել է ինձնից, ես կտամ ֆաշիզմի վերջնական ոչնչացման, մեր Միության հարազատ նավատորմի ամրապնդման և կուսակցության ու կառավարության ամեն մի առաջադրանքի իրականացման համար: Հիշեցեք, սակայն, այն մեծ գործերում, որ մենք ձեզ հետ միասին կատարում ենք, մի մարդը ոչինչ է: Ես կարող եմ գործել միմիայն ձեզ վրա հենվելով: Ձեր աշխատանքով է պայմանավորված գործի հաջողությունը, և ստացածս պարգևն զգալի չափով նաև ձերն է: Ուստի և ցանկանում եմ ձեզ առողջություն և հաջողություն աշխատանքում, առավել մեծ տոկունություն, ընկերասիրություն, հաղթանակի կամք և կուսակցականություն աշխատանքում:

Ձեր Իսակով»:

Անտանելի տանջանքներից ապաքինվելուն պես Հովհաննես Ստեփանովիչը կրկին իր պոստում է: Ծովային գլխավոր շտաբի պետի պաշտոնը առողջ մարդուց էլ մեծ ջանքեր է պահանջում, ո՞ւր մնաց հիվանդից, սակայն Իսակովը աշխատում է:

Բայց շատով հարկադրված է լինում թողնել Գլխավոր շտաբի պետի պաշտոնը: Նա կրկին վերադառնում է գիտահետազոտական աշխատանքի՝ մնալով իբրև ռազմածովային ուժերի գլխավոր հրամանատարի տեղակալ, համատեղելով պետական պատասխանատու աշխատանքը չընդհատվող գիտական և հասարակական գործունեության հետ: Այդ ժամանակաընթացքում նա գրում է **Մերձծովյան ամրություններ**, **Ակնարկներ նավատորմի պատմության** աշխատությունները, գլխավորում **Ծովային ատլասի** խմբագրությունը: Ռազմածովային գիտությանը նվիրված գրականության ֆոնդում կան Իսակովի ավելի քան հարյուր աշխատություններ:

1945 թվականի մարտին Լենինի շքանշանակիր ռազմածովային ակադեմիայի գիտական խորհուրդը բարձրագույն ատեստատացիոն հանձնաժողովին միջնորդագիր ուղարկեց՝ դոցենտ, ռազմածովային գիտությունների թեկնածու, նավատորմի ծովակալ Հովհաննես Ստեփանովիչ Իսակովին, առանց դիսերտացիայի պաշտպանության, շնորհելու ռազմածովային գիտությունների դոկտորի գիտական աստիճան և ստրատեգիայի ու օպերատիվ գործողությունների ամբիոնի պրոֆեսորի կոչում: Բարձրագույն ատեստատացիոն հանձնաժողովը շուտով հաստատեց գիտական խորհրդի որոշումը:

1950 թվականի մարտին Հովհաննես Ստեփանովիչը պաշտոնաթողություն խնդրեց: Բայց նա շարունակեց անդուլ աշխատել: Մինչև կյանքի վերջը (1967) նա մնաց **Ծովային ատլասի** պատասխանատու խմբագիրը: Այդ աշխատանքի համար մի խումբ ընկերների հետ նա արժանացավ պետական մրցանակի:

Իսակովը գրում է գիտամասսայական հոդվածներ, հիմնականում նավատորմի պատմության վերաբերյալ, որպես գլխավոր կոնսուլտանտ մասնակցում ծովակալ Ֆեոդոր Ուշակովին նվիրված կինոնկարի ստեղծմանը: Բացահայտվեց նաև Իսակովի՝ նրան քիչ ճանաչողների համար անակնկալ, գրողի ձիրքը: Իսակովի ծովային պատմվածքները հետաքրքրում են ո չ միայն ծովայիններին, այլև ընթերցողների լայն շրջաններին: Ալեքսանդր Տվարդովսկու և Կոնստանտին Սիմոնովի առաջարկով ՍՍՀՄ գրողների միությունը նրան ընդունում է իր շարքերը:

...Հուշեր չթողեց Հովհաննես Իսակովը. ժամանակը չբավականացրեց, իսկ գլխավոր պատճառը համեստությունն էր: Բազմաթիվ շքանշանների, մեդալների, երկրի մեծագույն պարգևին՝ Լենինի վեց շքանշաններին արժանացած ծովակալը չկամեցավ ուշադրություն բևեռել իր անձի վրա: Սակայն նրա գործերից, գրքերից ու նամակներից հառնում է ջերմ հայրենասերի, անձնուրաց ինտերնացիոնալիստի պայծառ կերպարը՝ հեղափոխության վետերանի, կոմունիստի, սկանավոր ռազմական գործչի, անձնուրաց մարտիկի կերպարը:

# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԸ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԱԿՏԻԿԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

## (1917 Թ. ԱՊՐԻԼ—ՄԱՅԻՍ)

Հ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1984 Թ. փետրվարյան արտահերթ պլենումում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն նշեց. «...մեր երկրի հետագա զարգացման պլանները մշակելիս մենք չենք կարող հաշվի չառնել աշխարհում ստեղծվող դրությունը: Իսկ այդ դրությունը, ինչպես գիտեք, այժմ բարդ է և լարված: Նման պայմաններում առավել մեծ նշանակություն է ձեռք բերում արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության ու սովետական պետության ճիշտ կուրսը»:

Միջազգային իրադրության ներկա բարդ և լարված պայմաններում, երբ իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները շարունակում են միջուկային սպառազինությունների մրցավազքը, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը, առաջնորդվելով ՍՄԿԿ XXIV, XXV և XXVI համագումարներում մշակված խաղաղության ծրագրով, վճռականորեն պայքարում են հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության: «Ոչ թե պատերազմի նախապատրաստություն, որը ժողովուրդներին դատապարտում է իրենց նյութական և հոգևոր հարստությունների անմիտ վատնման, այլ խաղաղության ամրապնդում՝ ահա վաղվա օրվա ուղեցույց թելը», նշված է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը**, էջ 50):

Այս առումով արդիական նշանակություն ունի նաև անցյալի պատմական փորձի՝ առավել ևս բոլշևիկյան կուսակցության մարտական ջոկատներից մեկի՝ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների և նրանց մամուլի ծավալած հակապատերազմական գործունեության ուսումնասիրությունը: Սույն հոդվածում մենք անդրադարձել ենք այդ գործունեության՝ 1917 թ. ապրիլ—մայիս ժամանակաշրջանին:

1917 թ. փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո Ռուսաստանում պատերազմի և խաղաղության հարցերը մնում էին ժամանակի գլխավորն ու ամենացավոտը, որոնց շուրջն էին պտտվում երկրի արտաքին և ներքին քաղաքականության մյուս բոլոր հարցերը: Ժամանակավոր բուրժուական կառավարությունը շարունակում էր իմպերիալիստական պատերազմը՝ աշխատավորությանը խաբելով «Հեղափոխության պաշտպանության» լոզունգով: Մշակելով բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու տեսությունը՝ Վ. Ի. Լենինը **Ապրիլյան թեզիսներում** շարադրեց նաև ժամանակի ամենահրատապ հարցի՝ պատերազմի և խաղաղության վերաբերյալ կուսակցության դիրքորոշումը:

Ցույց տալով, որ պատերազմը ժամանակավոր կառավարության օրոք ևս մնում է կողոպտչական, իմպերիալիստական, և որ անթույլատրելի են անգամ ամենաչնչին զիջումները «հեղափոխական պաշտպանողականությանը», Վ. Ի. Լենինը նշում էր, որ «հնարավոր չէ պատերազմը վերջացնել իսկական դեմոկրատական, ոչ բռնի հաշտությամբ՝ առանց կապիտալի տապալման» (**ԵԼԺ**, հ. 31, էջ 137): Լենինյան տեսակետը պաշտպանվեց ՌՍԴԲԿ VII համառուսաստանյան ապրիլյան կոնֆերանսում: Պատերազմի վերաբերյալ կոնֆերանսի ընդունած որոշման մեջ դատապարտվում էր սոցիալ-շովինիզմը, «հեղափոխական պաշտպանողականությունը», բացահայտվում էր ժամանակավոր կառավարության իմպերիալիստական բնույթը, նշվում, որ պատերազմը կարելի է ավարտել միայն պետական իշխանությունը պրոլետարիատի ձեռքը վերցնելուց հետո: Ապրիլյան կոնֆերանսը դեմ արտահայտվեց բոլշևիկների մասնակցությանը պատերազմող երկրների սոցիալիստների՝ Ստոկհոլմում հրավիրվող կոնֆերանսին, գտնելով, որ սոցիալիստները չեն կարող, չդավաճանելով պրոլետարիատի գործին, ոչ ուղղակի, ոչ էլ անուղղակի մասնակցել այդ կեղտոտ և շահախնդրական, չարչիական գործարքին (տե՛ս **ՍՄԿԿ-ն... բանաձևերում և որոշումներում,** մաս I, Պետհրատ, 1954, էջ 430), որի գլխավոր նպատակը իմպերիալիստական հաշտության վերացումն էր:

Նոր իրադրության, երկիշխանության պայմաններում հնարավոր չէր այլևս հին տակտիկայի կիրառմամբ վերջ տալ շարունակվող իմպերիալիստական պատերազմին: Ուստի Վ. Ի. Լենինը պատերազմից դուրս գալու ելք տեսնում էր «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգի, հաղթական սոցիալիստական հեղափոխության մեջ:

Վ. Ի. Լենինի թեզիսները և VII համառուսաստանյան կոնֆերանսի որոշումները ուղեցույց հանդիսացան ողջ երկրի, ինչպես և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների համար, որոնք պայքար ծավալեցին հանուն մասսաների նվաճման և սոցիալիստական հեղափոխության հաղթանակի:

Այդ պայքարը 1917 թ. ապրիլյան օրերին Անդրկովկասում ընթանում էր առանձնահատուկ, դժվարին պայմաններում: Ճիշտ է, ցարիզմի տապալումից հետո բոլշևիկները դուրս եկան ընդհատակից, լույս տեսան բոլշևիկյան թերթեր՝ «Кавказский рабочий» (1917 թ. մարտի 11-ից), «Бакинский рабочий» (ապրիլի 22-ից), «Սոցիալ-դեմոկրատ» և այլն, շատ ականավոր կուսակցական գործիչներ վերադարձան բանտերից ու աքսորից, սակայն բուրժուաազգայնական և մանրբուրժուական կուսակցությունները, օգտվելով երկրամասի առանձնահատուկ պայմաններից, ակտիվացրել էին իրենց գործունեությունը և ձգտում էին բնակչությանը վարակել շովինիզմի թույնով, ինչպես նաև սովետներում ունեցած իրենց թվական գերակշռությունն օգտագործել՝ բանվորների ու զինվորների զգալի մասին հետ պահելու դասակարգային պայքարից:

Պատերազմը շարունակելու խնդրում այդ կուսակցությունները համակողմանի աջակցություն էին ցույց տալիս ժամանակավոր կառավարությանը՝ աշխատավորությանը խաբելով «հեղափոխության պաշտպանության» լոզունգով: Բնորոշ է, որ 1917 թ. ապրիլի 12-ին ՕԶԱԿՕՄ-ը (Անդրկովկասյան հատուկ կոմիտեն) հանդես եկավ Անդրկովկասի բնակչությանն ուղղված հատուկ դիմումով, որտեղ ասվում էր. «Մեր ազատության ապագան ուղղակի կախված է ռազմաճակատում եղած մեր բանակների հաջողություններից: Բոլոր ուժերով մենք պետք է օժանդակենք մեր բանակների միությանը՝ չթողնելով, որ նրա միջավայրում կուսակցական և ազգային հողի վրա գոյություն ունենան քաղաքական և ռազմական կազմակերպություններ»*:

Այս պայմաններում առավել անհրաժեշտ էր դառնում բոլշևիկյան մամուլի միջոցով լենինյան ճշմարտացի խոսքը պրոլետարիատին և ամբողջ աշխատավորությանը հասցնելու խնդիրը:

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականներից Վ. Ի. Լենինի **Ապրիլյան թեզիսները** «Правда»-ից արտատպեցին «Кавказский рабочий»-ն (№ 34) և «Бакинский рабочий»-ն (№ 1): Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլն անդրադարձավ նաև ապրիլյան կոնֆերանսի բանաձևերին՝ ո՛չ միայն տպագրելով դրանք իրենց մայիսյան համարներում, այլև իրենց էջերը տրամադրելով ապրիլյան կոնֆերանսի մասնակիցներին, որոնք պրոլետարական լայն խավերին բացատրում էին կուսակցական տակտիկական գործելակերպը ինչպես հեղափոխության, նույնպես և պատերազմի ու խաղաղության կարևորագույն հարցերում: Այսպես. «Պայքար» լրագիրը տպագրեց Ֆ. Մախարաձեի և Մ. Ցխակայայի զեկուցումները ապրիլյան կոնֆերանսի վերաբերյալ, որտեղ, խոսելով Ստոկհոլմում հրավիրվող սոցիալիստների կոնֆերանսի մասին՝ նրանք նշում էին. «Խոսք անգամ չի կարող լինել «պաշտպանողականների» հետ միանալու մասին, որովհետև նրանք բուրժուաների շահերի պաշտպան օպորտունիստներ են՝ ինչպիսիք են զանազան շեյդեմաններ, պլեխանովներ, պոտրեսովներ, գեդեր:

Հենց այդ պատճառով էլ չպետք է մասնակցել Ստոկհոլմում գումարվելիք «սոցիալիստական» համագումարին («Պայքար», 17-ը մայիսի): Այդ հարցի վերաբերյալ ապրիլյան կոնֆերանսի դիրքերի պաշտպանությամբ հանդես եկավ նաև «Кавказский рабочий»-ն՝ գրելով. «...Պատերազմի հետ կապերը չխզած, «սոցիալիստների» կոնգրեսները փորձում են ձգձգել համաշխարհային հեղափոխությունը... և մասնավոր գործարքների միջոցով լուծել համաշխարհային ճգնաժամը

---

* *Հայկ. ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 313, ց. 1, գ. 1, թ. 71։*

որը չի լուծելու կառավարության ճգնաժամը, առաջնորդողում բացահայտ շեշտում էր, որ «Միլյուկովի և Գուչկովի հեռանալը մազաչափ անգամ փոփոխություն չի մտցրել ժամանակավոր կառավարության քաղաքականության մեջ» («Պայքար», 16 մայիսի): Իսկ «Սոցիալ-դեմոկրատ»-ն իր էջերում տպագրեց մայիսի 15-ին Բաքվում կայացած ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության միջշրջանային կոնֆերանսի ընդունած բանաձևը կոալիցիոն մինիստրության մասին: Ստ. Շահումյանի կազմած այդ բանաձևում ասվում էր. «...Սոցիալիստները ընդառաջեցին բուրժուազիայի ցանկություններին և սրանով հենց քաղաքական խոշոր սխալ գործեցին: Այդ սխալը կընկնապատկվեց նրանով, որ մինիստրության մեջ մտնելով՝ սոցիալիստները ոչ միայն չազդեցին բուրժուական կառավարության վրա, որպեսզի դրդեն նրան նոր քայլեր անելու հափշտակողական քաղաքականությունից հրաժարվելու ուղիով, այլ իրենք հենց կանգնեցին իմպերիալիստական դիրքի վրա, կոչ անելով ռուսական զորքին՝ դիմելու հարձակողական կռվի» («Սոցիալ-դեմոկրատ», 28 մայիսի):

«Սոցիալ-դեմոկրատ»-ում տպագրված այդ կոնֆերանսի բանաձևը Բաքվի բոլշևիկների կարևոր հաղթանակն էր մանրբուրժուական կուսակցությունների նկատմամբ*:

Կոալիցիոն կառավարության հակաժողովրդական քաղաքականության բացահայտման ասպարեզում կարևոր նշանակություն ուներ նաև բոլշևիկյան թերթերի կողմից պատերազմը շարունակելու հարցում այդ կառավարության և Անտանտի իմպերիալիսների շահերի ընդհանրության պարզաբանումը:

Այսպես, օրինակ, «Պայքարը» տվյալներ էր բերում, որոնք վկայում էին, որ ժամանակավոր կառավարության արտաքին քաղաքականությունը համընկնում է Անտանտի իմպերիալիստների ագրեսիվ պլաններին, իսկ «Бакинский рабочий»-ն գրում էր. «Կադետա-օկտյաբրիստական մինիստրները... «սոցիալիստներ» Կերենսկու, Ծերեթելու, Չեռնովի հետ միասին բացատրում են, թե ինչու նրանք չեն կարող դավաճանել դավաճանների կնքած պայմանագրերին: Նրանք իբր թե չեն ուզում դաշնակիցներին գրգռել Ռուսաստանի դեմ, որոնք իրենց հերթին ցանկանում են հավատարիմ մնալ Նիկոլային տրված խոսքին» («Бакинский рабочий», 30 мая):

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականների կողմից կոալիցիոն ժամանակավոր կառավարության հակաժողովրդական, իմպերիալիստական քաղաքականության քննադատությունը լրջորեն նպաստեց աշխատավորության մանրբուրժուական և բուրժուաազգայնական կուսակցությունների ազդեցության ոլորտից դուրս բերելուն:

Ինչպես ողջ երկրի, այնպես էլ Անդրկովկասի բոլշևիկյան մամուլը, քննադատելով կոալիցիոն կառավարությանը գաղտնի պայմանագրերը չհրապարակելու համար, հնարավոր ամեն ինչ անում էր մասսաներին իրազեկ պահելու այդ պայմանագրերի էությանը (տե՛ս В. П. Будников, «Большевистская партийная печать в 1917 году», Харьков, 1959, стр. 111—112): Այսպես, թե՛ «Кавказский рабочий»-ն, թե՛ «Бакинский рабочий»-ն և թե «Պայքարը» արտատպեցին Վ. Վոդովոզովի՝ «День» լրագրի № 52-ում հրապարակած Ռուսաստանի և Ռումինիայի միջև կնքված գաղտնի պայմանագիրը, ցույց տալով դրա կողոպտչական բնույթը (տե՛ս «Кавказский рабочий», 31 мая, 1917 г., «Бакинский рабочий», 11 июня, 1917 г., «Պայքար», 1 հունիսի, 1917 թ.):

Քննադատելով և մերկացնելով այդ պայմանագրի էությունը՝ անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները բանվորական և զինվորական մասսաներին մեկնաբանում էին, որ «այդ ստոր պայմանագրերի պահպանության համար էլ շարունակվում է ներկայումս պատերազմը» («Кавказский рабочий», 31 мая):

1917 թ. ապրիլ—մայիսյան օրերին անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները պայքար էին ծավալել իմպերիալիստական պատերազմը շարունակելու համար ձեռնարկվող բոլոր միջոցառումների դեմ: Այդպիսի միջոցառումներից էր «Ազատության փոխառությունը», որի բաժանորդագրման համար հայտարարությամբ ժամանակավոր կառավարությունը հանդես էր եկել դեռ 1917 թ. մարտի 6-ին: Մարտի 27-ին ժամանակավոր կառավարությունը հանդես եկավ նոր կոչով, որտեղ բաղձալի հաղթության հասնելու համար բնակչությանը քարոզում էր «կատարել իր պարտքը հայրենիքի նկատմամբ»*: Իրականում «Ազատության փոխառությունը» ռազմական փոխառություն էր, որով ժամանակավոր կառավարությունը պատերազմը շարունակելու համար նպատակ ուներ ժողովրդից կորզել նորանոր միջոցներ: Անդրկովկասի բուրժուազիան, էսէռներն ու մենշևիկները, ինչպես նաև բուրժուաազգայնական կուսակցությունները, կենտրոնի իրենց գաղափարակիցների նման, պաշտպանեցին ժամանակավոր կառավարության կոչը: Այսպես, 1917 թ. ապրիլի 13-ին Թիֆլիսում ՕԶԱԿՕՄ-ի հրավիրած խորհրդակցությունում, որը քննարկելու էր «Ազատության փոխառության» տարածման եղանակները, հանդես եկան ՕԶԱԿՕՄ-ի նախագահ կադետ Վ. Խառլամովը, Թիֆլիսի քաղաքագլուխ Ա. Խատիսյանը՝ նշելով «Ազատության փոխառության» կարևորությունն ու օգտակարությունը (տե՛ս «Кавказ», 15 апреля, 1917 г.): «Ազատության փոխառության» տարածման ու մասսայականացման նպատակով ակտիվ աշխատանք էին ծավալել Անդրկովկասում ստեղծված «Ազատության փոխառության» հասարակական կոմիտեները: Երևանի կոմիտեի ընդհանուր ժողովը մայիսի 19-ին, Թիֆլիսի նույնանուն կոմիտեի կոչի հիման վրա, ընդունում է որոշում, որտեղ «հայրենիքի թշնամիների դեմ պայքարի գործում, ժամանակավոր կառավարության պաշտպանության նպատակով» անհրաժեշտ է գտնում աջակցել բաժանորդագրությանը*: Կովկասյան բանակի երկրային I համագումարում, որը տեղի ունեցավ Թիֆլիսում 1917 թ. ապրիլի 23-ից մայիսի 24-ը, «Ազատության փոխառության» պաշտպանության կոչով հանդես եկավ մենշևիկ Գ. Գեգեչկորին**:

Անդրկովկասի բուրժուական, մանրբուրժուական և բուրժուաազգայնական մամուլը սիրով իր էջերը տրամադրեց «Ազատության փոխառության» պրոպագանդմանը: Այսպես, «Кавказское слово»-ն «Ազատության փոխառությունը» համարում էր «հաշտության գրավականը» («Кавказское слово», 7 мая), «Հորիզոնը»՝ «մեծ գործի պաշտպանություն» («Հորիզոն», 5 մայիսի), Թիֆլիսի էսէռամենշևիկյան սովետի օրգան «Известия»-ն՝ «փրկության փոխառություն՝ կոչված պաշտպանելու հեղափոխության մեծ նվաճումները» («Известия Советов и Рабочих и Солдатских депутатов гор. Тифлиса, 8 августа), «Մշակ»-ը այդ փոխառությանը մասնակցելը համարում էր «ամեն մի քաղաքացու ամենանվիրական քաղաքական պարտականությունը» («Մշակ», 6 մայիսի):

Անդրկովկասի բոլշևիկների և նրանց մամուլի առջև կարևոր խնդիր էր դրված՝ երկրամասի աշխատավոր զանգվածներին բացատրել, որ «Ազատության փոխառությունը» ժամանակավոր կառավարության համար մի միջոց է պատերազմական միլիարդների հասնող ծախսերի մեծ մասը ժողովրդի ուսերին բարդելու, բացի դրանից այդ փոխառության հաջողության դեպքում կառավարությունը գործը կներկայացներ այնպես, որ դրանով իբր ժողովրդական մասսաները հավանություն են տալիս իր վարած արտաքին նվաճողական քաղաքականությանը:

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները ձեռնամուխ եղան «Ազատության փոխառության» մերկացման գործին, ցույց տալով, որ այն կոչված է հավաքելու նոր, «հրասկայական միջոցներ պատերազմը շարունակելու նպատակով» («Кавказский рабочий», 28 апреля) և որ թեև այն նախատեսված է ամբողջ բնակչության համար, սակայն ավելի ձեռնտու է բուրժուազիային, որը պատերազմից ստանում է հսկայական եկամուտներ և պատրաստ է իր «հայրենասիրությունը ցուցաբերել» («Պայքար», 10 մայիսի):

Անդրկովկասյան բոլշևիկյան լրագրերը միաժամանակ արտահայտում էին այն միտքը, որ այդ փոխառությանն աջակցելը դավաճանական քայլ կլինի միջազգային ինտերնացիոնալիստական շարժման նկատմամբ. «Բ և Զ դեպ. սովետը պնդում է, թե տխրահռչակ «Ազատության փոխառությունը» կծառայի մյուս երկրներում հեղափոխական շարժման ամրապնդմանը... Ավա՜ղ, գործը հակառակ բնույթ ունի... Սովետի քվեարկելը «Ազատության փոխառության» օգտին հանդիսանում է հարված ընկեր Կարլ Լիբկնեխտի, ընկ. Մակլինի թիկունքին» («Бакинский рабочий», 11 июня):

«Ազատության փոխառության» սպառիչ բնութագիրը և բոլշևիկյան կուսակցության վերաբերմունքը դրա հանդեպ տրվել է մայիսի 15-ին Բաքվում կայացած ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության միջշրջանային վերոհիշյալ կոնֆերանսում Ստ. Շահումյանի կազմած բանաձևում, որը տպագրվեց «Սոցիալ-դեմոկրատ»ում: Այնտեղ ասված էր. «Ի նկատի առնելով 1) որ մեր ժամանակավոր կառավարությունը... փոխառություն է կնքում գլխավորապես պատերազմական նպատակով, 2) որ բոլոր երկրների հեղափոխական սոցիալիստները ներկայումս հակառակ ձայն են տալիս պատերազմական փոխառություններին, կոնֆերանսը գտնում է, որ բանվորները պիտի հրաժարվեն համաձայնություն տալ այս փոխառությանը, ...որ այն բուրժուազիան, որ

* Այդ կոնֆերանսում մենշևիկները բոլոր հարցերում լիակատար պարտություն կրեցին և ստիպված հեռացան կոնֆերանսից, իսկ բոլշևիկները ընտրեցին ժամանակավոր բոլշևիկյան կոմիտե: Տե՛ս «Очерки истории коммунистических организаций Закавказья», Тбилиси, 1967, ч. I, стр. 330:

* Негативный фонд Бакинского филиала центрального музея В. И. Ленина, № 9106:

* Հայկ. ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 119, ց. 1, գ. 25, թ. 23:

** ЦГИА Грузинской ССР, ф. 1838, оп. 2, д. 2, л. 72.

պատերազմի ժամանակ կուտակել է և շարունակում է կուտակել միլիարդներ, ինքը կարող է ծածկել այս բոլոր ծախսերը՝ չդիմելով ժողովրդական փոխառություններին» («Սոցիալ-դեմոկրատ», 28 մայիսի):

Անդրկովկասի բոլշևիկների և նրանց մամուլի՝ բանվորների ու զինվորների շրջանում ծավալած հսկա, բացատրական աշխատանքը տվեց իր արդյունքները: «Ազատության փոխառության» բաժանորդագրությունը Անդրկովկասում հաջողություն չունեցավ՝ չարդարացնելով այն հույսերը, որ դրա հետ կապել էին բուրժուազիան և համաձայնողական կուսակցությունները:

Անդրկովկասի բոլշևիկները և նրանց պարբերականները ապրիլ—մայիսյան ժամանակաշրջանում ո՛չ միայն քննադատում էին ժամանակավոր և կոալիցիոն կառավարության գործունեությունը պատերազմի և խաղաղության բնագավառում, այլև, ելնելով **Ապրիլյան թեզիսներից** և ապրիլյան կոնֆերանսի կուսակցական տակտիկայից, բանվորներին, զինվորներին ու գյուղացիներին կոչ էին անում իմպերիալիստական պատերազմին վերջ տալ և կնքել դեմոկրատական հաշտություն: Նրանք ցույց էին տալիս, որ շուտափույթ հաշտություն կարող է կնքել միայն սոցիալիստական հեղափոխության միջոցով իշխանության գլուխ անցած բանվորագյուղացիական կառավարությունը:

Այսպես, «Սոցիալ-դեմոկրատ»-ում հրապարակված Ստ. Շահումյանի **Քաղաքական ճգնաժամը** հոդվածում այն միտքն էր արծարծվում, որ «պատերազմը վերջացնել... կարող է միայն այն կառավարությունը, որը բաղկացած կլինի բանվորների ու գյուղացիների ներկայացուցիչներից» (28 մայիսի), իսկ «Պայքարը», 1917 թ. մայիսյան օրերին մասսայականացնելով «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը, իր առաջնորդողում գրում էր, որ պատերազմից դուրս գալու միակ ելքը պետք է լինի այն, որ «բանվորական և զինվորական պատգամավորների խորհուրդը իր ձեռքը վերցնի պետության ղեկը» (7 մայիսի): Նույնպիսի մտքերով էին հանդես գալիս նաև «Кавказский рабочий»-ն և «Бакинский рабочий»-ն: Ընդ որում «Бакинский рабочий»-ի մայիսի 30-ի համարը մի կատարյալ հեղափոխական կոչ էր Անդրկովկասի ազատատենչ աշխատավորությանը: Այնտեղ ասված էր. «Ընկե՛ր բանվորներ, ընկե՛ր զինվորներ, հասեք ամբողջ իշխանության անցմանը բանվորների և գյուղացիների սովետների ձեռքը, հասե՛ք այդ սովետների վարած քաղաքականության փոփոխմանը: Միայն և միայն այդ ժամանակ մենք կարող ենք ոչ թե խոսքով, այլ գործով բոլոր ժողովուրդներին առաջարկել դեմոկրատական հաշտություն, միայն և միայն այդ ժամանակ մենք արագ քայլերով կգնանք դեպի այս անիծյալ պատերազմի ավարտը» (30 мая):

1917 թ. ապրիլ—մայիսյան օրերին, երբ ժամանակավոր կառավարության վարած թե՛ ներքին և թե արտաքին քաղաքականությունն առավել հակաժողովրդական բնույթ էր ստանում, և երբ կոալիցիոն կառավարությունը բանակի ռեակցիոն հրամանատարության հետ մեկտեղ հարձակման ավանտյուրիստական պլաններ էր մշակում, անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլի կոչը լրջորեն նպաստում էր հեղափոխական ճանապարհով ավարտելու պատերազմը և հասնելու դեմոկրատական հաշտության: Այսպիսով, 1917 թ. ապրիլ—մայիսին անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլը, հանդես գալով պատերազմի և խաղաղության լենինյան տակտիկական գծի պաշտպանությամբ, վճռականորեն մերկացնում էր ժամանակավոր կառավարության և համաձայնողական կուսակցությունների հակաժողովրդական, իմպերիալիստական քաղաքականությունը:

Այժմ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումում, երբ «Արդի իրադրությունը մեզանից մշտական ու համակողմանի ջանքեր է պահանջում երկրի անվտանգության ապահովման և սովետական մարդկանց խաղաղ աշխատանքի հուսալի պաշտպանության ասպարեզում», առավել կարևոր նշանակություն է ձեռք բերում կուսակցության վարած գաղափարադաստիարակչական աշխատանքը, նրա ծավալած անդուլ պայքարն ընդդեմ պատերազմի, հանուն խաղաղության. պայքար, որի պատմության լուսաբանումը բնավ չի կորցնում իր այժմեականությունը:



## ՖԻՏՈՏԵԽՆԻԿԱՆ՝ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

*ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ ՍՄԿԿ Կենտկոմի վերջին բոլոր պլենումները համարել են որպես գյուղատնտեսության արդյունավետության, բերքատվության բարձրացման կարևոր պայման: Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հիմնական ուղղություններից մեկը բույսերի աճման կարգավորիչների օգտագործումն է: Մեր երկրում դրանց ստեղծման և ուսումնասիրման համար մշակվել է գիտատեխնիկական նպատակամետ ծրագիր: Այն ընդգրկում է գիտական և կազմակերպական հարցերի ամբողջական համալիր. բույսերի աճման կարգավորիչների կիրառումը լայն հեռանկարներ է բացում հողի արդյունավետության բարձրացման ասպարեզում:*

*Բույսերի աճման ու զարգացման ամենաէական պրոբլեմների բնագավառում աշխարհի խոշորագույն մասնագետներից է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Կ. Տիմիրյազևի անվան բույսերի ֆիզիոլոգիայի ինստիտուտի լաբորատորիայի վարիչ, ՍՍՀՄ և ՀՍՍՀ գիտությունների ակադեմիաների իսկական անդամ Միքայել Քրիստափորի Չայլախյանը: Գիտական բազմամյա գործունեությունն արժանի ճանաչում է բերել նրան ո՛չ միայն մեր երկրում, այլև արտասահմանում: Մ. Ք. Չայլախյանը ԲԺՀ-ի, ԳԴՀ-ի, Հնդկաստանի, ԳՖՀ-ի, ԱՄՆ-ի ակադեմիաների և բուսաբանների ու բնագետների ընկերությունների անդամ է, պարգևատրվել է Լենինի երկու, Աշխատանքային կարմիր դրոշի և Կարմիր աստղի շքանշաններով:*

*Խմբագրության հանձնարարությամբ ժուռնալիստ Լ. ՄԱՆԱՅԱՆԸ Մոսկվայում հանդիպեց գիտնականի հետ և խնդրեց պատասխանել մի քանի հարցերի:*

**ԹՂԹ.— Միքայել Քրիստափորովիչ, բույսերի ֆիզիոլոգիայի հայրենական դպրոցի ճանաչված ղեկավարն եք Դուք, դպրոց, որն ուսումնասիրում է բույսերի աճման ու զարգացման կարգավորման պրոբլեմները: Կարծում եմ, որ մեր ամսագրի ընթերցողներից շատերը միջնակարգն ավարտելուց հետո հաճախ չէ, որ առնչվում են նման պրոբլեմներին: Ուստի խնդրում եմ, մի քանի խոսք այն մասին, թե ինչ է նշանակում բույսերի կենսագործունեության կարգավորում...**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Սկսենք պատմական էքսկուրսից: Ավելի քան 100 տարի առաջ Չարլզ Դարվինը **Բույսերի շարժունակությունը** գրքում առաջին անգամ հայտնեց այն միտքը, որ վարսակի և փալարիկախոտի ծիլերի վերնամասերում, միակողմանի լուսապարբերականության դեպքում, գոյանում է ինչ-որ խորհրդավոր նյութ: Շարժվելով դեպի ծիլի հիմքը՝ այն առաջացնում է անհամաչափ աճ դեպի լույս թեքվող բույսի մեջ: Մեծ գիտնականը հաստատեց, որ այդ նյութը կարգավորում է ծիլերի աճը:

Սակայն պահանջվեցին ևս կեսդարյա ուսումնասիրություններ, մինչև որ ստեղծվեցին բույսերի կարգավորիչների՝ բուսական ծագում ունեցող հորմոնների մասին գիտության տեսական ու փորձնական հիմքերը: Դրանց քիմիական բնույթի ընդունումը և բույսերի վրա զարմանալի ազդեցությունը կենսաբանության ամենահետաքրքրական բնագավառներից է:

Նման կարգավորիչներն այնպիսի բնական և սինթետիկ օրգանական նյութեր են, որ բույսերի մեջ դրանց քիչ քանակությունն անգամ առաջացնում է աճման ու զարգացման մեծ փոփոխություններ և կարգավորում դրանք: Այդ կարգավորիչների առանձնահատկությունն այն է, որ դրանք ազդում են այնպիսի պրոցեսների վրա,

որոնք «չեն ենթարկվում» ագրոտեխնիկական սովորական եղանակներին՝ ոռոգում, պարարտանյութերի օգտագործում և այլն: Աճման կարգավորիչների կիրառումը կամ այլ խոսքով՝ ֆիտոտեխնիկան բույսերի վրա անմիջական ներգործման եղանակների միագումարն է: Եվ եթե նախկինում ֆիտոտեխնիկային վերագրում էին պատվաստման, բույսերի օղակաձյութման և այլնի հետ կապված ձևերը, ապա այսօր ֆիտոտեխնիկայի «միջոցների»՝ բուսահորմոնների կիրառման բնագավառն ընդլայնվել է և ընդգրկում է բույսերի աճման ու զարգացման պրոցեսների քիմիական ողջ կարգավորումը:

**ԹՂԹ.— Պատմեք, խնդրեմ, մանրամասն այդ ««միջոցների» մասին:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Այսօր ընդունված է դրանք բոլորը միավորել երեք խոշոր խմբում. առաջին՝ աճի խթանման բուսահորմոններ՝ աուքսիններ, հիբերելիններ և ցիտոկինիններ: Երկրորդ խումբը՝ աճն արգելակող ինհիբիտորային բուսահորմոններն են՝ էթիլեն և աբսցիզինաթթու: Երրորդ խմբում են ոչ հորմոնային նյութերը: Հորմոնների առաջին երկու խմբերը՝ խթանիչներն ու ինհիբիտորները, ունեն ընդհանուր հատկություններ. բույսերի մեջ դրանք գոյանում են քիչ քանակությամբ, հեշտությամբ մի մասից մյուսն են շարժվում, բավական զգալի է դրանց ներգործումը ձևագոյավորման վրա: Որպես ընդհանուր հատկություն կարելի է նաև նշել, որ այդ հորմոնների ազդեցությունը պայմանավորված է բույսերում դրանց քանակությամբ: Նույն նյութը ցածր խտության դեպքում կարող է խթանել աճը, միջինի դեպքում՝ արգելակել, իսկ բարձրի դեպքում՝ լրիվ կասեցնել աճման պրոցեսը:

**ԹՂԹ.— Քանի որ ֆիտոտեխնիկան համարվում է առավել, եթե կարելի է այդպես ասել, «պրակտիկ» դիսցիպլիններից մեկը, ապա հետաքրքրական է իմանալ այդ հորմոնների կիրառումը առանձին-առանձին:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Սկսենք աուքսիններից: Դրանց հայտնաբերման պատմությունն սկսվել է Դարվինի փորձերից. նա է հայտնաբերել աճման նյութերը: Դրանից հետո շատ գիտնականներ մութ կամերաներում, կարմիր լույսի տակ վիրահատական գործողություններ էին կատարում վարսակի, ցորենի և եգիպտացորենի ծիլերի վրա: Փորձերը հաստատեցին «Չարլզ Դարվինի ֆենոմենը», և ծնվեց աճման հորմոնների տեսությունը: Ստեղծվեց բուսահորմոնների ուսմունքը: Որոշ ժամանակ անց հայտնագործվեց բույսերի աճման խորհրդավոր նյութի՝ աուքսինի քիմիական բնույթը:

Աուքսինների խմբի նյութերի ներգործությունը բազմակողմանի է: Դրանք խթանում են արմատների գոյացումն ու աճը, կարգավորում տերևների ու պտուղների թափվելը, արագացնում են աճն ու պտուղների հասունացումը: Այս և դրանց մի քանի այլ առանձնահատկություններ օգտագործվեցին, երբ 40—50-ական թվականներին սկսվեց աուքսինների լայն կիրառումը պտղատու և անտառային տեսակների, տեխնիկական և դեկորատիվ բույսերի վեգետացիոն բազմացման գործում:

**ԹՂԹ.— Ներեցեք ընդհատելու համար: Ձեր գործընկերների հետ զրուցելիս իմացա, որ Դուք հեղինակն եք 1942 թվականին հրատարակված այդ նյութերի կիրառման մեթոդական ցուցումների:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Ես ունեի նաև համահեղինակներ: Բայց ամենագլխավորն այն է, որ այժմ աուքսինները տարածվել են ամենուր՝ և՛ մեր երկրում, և՛ արտասահմանում: Դրանք արագացնում ու ավելացնում են պոմիդորի և այլ բանջարեղենների պտղաբերությունը: Ընդ որում այդ նյութերով մշակված բույսերի պտուղները սովորական պոմիդորներից տարբերվում են մեծությամբ և ավելի համեղ են:

Բույսերի վեգետատիվ բազմացումից և մրգատու կուլտուրաների բերքատվության բարձրացումից բացի, աուքսիններն օգտագործվում են նաև կարտոֆիլների պալարային պահորակումը բարելավելու և խնձորենու ու տանձենու նախաբերքահավաքային պտղաթափը պակասեցնելու համար: Այսպիսով, կանխվում են արդեն հասած բերքի, մարդկային աշխատանքի մեծ կորուստները:

**ԹՂԹ.— Ինչ կասեիք Ձեր մի այլ նախաձեռնության՝ գիբերելինների պրակտիկ օգտագործման մասին:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Արևելյան Ասիայի երկրների գյուղացիները «կատաղած բրինձ» են անվանում այն հիվանդությունը, երբ հիվանդացած բույսի ցողուններն արագ բարձրանում-ձգվում են, իսկ հասկերը զարգանում են շատ թույլ, երբեմն էլ լրիվ փուչ



են լինում: Հիվանդությունը հանգեցնում է բրնձի բերքի շեշտակի անկման: Միայն 50-ական թվականներին գիտնականները կարողացան զատել ֆիզիոլոգիապես արտակարգ ակտիվ մի նյութ՝ հիբերելինը և կիրառել այն գյուղատնտեսության մեջ:

Այսօր այդ նյութի շնորհիվ հնարավոր է վերացնել բույսերի գաճաճությունը և հասցնել դրանք նորմալ չափերի: Մի շարք ինստիտուտներում սովորական չափի բույսերից ստացել են ավելի քան վեց մետրանոց կաղամբի, ծխախոտի և կանեփի հսկա սերմնաբույսեր: Հիբերելինները ասես բացում են բույսերի «ախորժակը» և բացահայտում դրանց աճման հարուստ պոտենցիալ ուժը: Այդ նյութերի կիրառումը մեծացնում է բույսի չափերը և փոխում տերևների ձևը, նպաստում խոշոր անսերմ պտուղների գոյացմանն ու աճմանը, արագացնում ծաղկումն ու պտղաբերումը:

Հիբերելինների կիրառման առավել լայն հեռանկարներ են բացվում խաղողագործության ասպարեզում, որտեղ անսերմ տեսակների կամ քիշմիշի բերքը հնարավոր է լինում ավելացնել երկու անգամ: Ուզբեկստանում այդ նյութերով արդեն մշակվում են հինգ հազար հեկտարից ավելի խաղողի այգիներ. դրանք սկսել են կիրառվել նաև Տաջիկստանում, Թուրքմենիայում: Եվ ամենուր բարձրանում է բերքատվությունը:

Այդ «կանաչ աշխարհի կախարդի» օգնությամբ, ինչպես նշել են հիբերելինը դրա մասին գիտամասսայական ֆիլմ ստեղծողները, հնարավոր է դառնում ավելացնել կանեփի բերքը և կանեփաթելի ստացումը, բարձրացնել վարունգի և մի քանի այլ կուլտուրաների բերքատվությունը, մեկ տարում ստանալու կարտոֆիլի երկու բերք հարավում...

**ԹՂԹ.— Ֆիտոտեխնիկայի՝ բույսերի աճման կարգավորիչների ժողովրդատըն-տեսական մեծ նշանակությունն ակնհայտ է: Այժմ կուզեինք իմանալ, ինչի՞ համար են օգտագործվում բույսերի աճն արգելակող նյութերը:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Պատկերացրեք մի պատրաստուկ, որը կասեցնում է կարտոֆիլների պալարների ծլումը երկարատև պահպանության դեպքում... Այդպիսի պատրաստուկ կա: Այն կոչվում է հիդրել՝ էթիլեն արտադրող և ներկայումս ենթարկվում է արտադրական լայն փորձարկման:

Չէ՞ որ ասում ենք՝ բույսերի աճման կարգավորում: Այդ նշանակում է ո՛չ միայն աճման խթանում, այլև կասեցում, նյութի հաշվեկշռված ներգործություն, ասես, իրար բացառող «դերերով»: «Կասեցնող» պատրաստուկների մեջ առանձնահատուկ դեր ունեն էթիլենը և այն արտադրողները, ինչպես նաև աբսցիզինները:

Հյուսիսային շրջաններում հավաքված խակ պոմիդորները հետո լավ հասունանում են էթիլենային կամերաներում: Այդ եղանակը կիրառվում է և այն պտուղների նկատմամբ, որոնք հասած վիճակում հնարավոր չէ փոխադրել: Արհեստականորեն հասունացվում են դրանք սպառման վայրերում: Իսկ աբսցիզինները, ինչպես պարզվեց վերջին տարիներս, նպաստում են բույսերի դիմացկունության բարձրացմանը երաշտի ժամանակ և կասեցնում են բույսերի աճը աղակալած հողերում:

Ես խորապես համոզված եմ, որ չնայած այդ պատրաստուկներն առայժմ քիչ են տարածված, այնուամենայնիվ, դրանք շատ հեռանկարային են: Եվ տարվող հետազոտությունների շնորհիվ մոտակա տարիներին կտեսնենք դրա ապացույցները:

**ԹՂԹ.— Կարելի է ենթադրել, որ բույսերի աճը կասեցնող նյութերը կապված են ասիական մի շարք երկրներում գաճաճ ցորենի հայտնվելու առնչությամբ կատարված «կանաչ հեղափոխության» հետ:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Դեռևս մեր հարյուրամյակի 20-ական թվականներին ժամանակակից ագրոքիմիայի հիմնադիրներից մեկը՝ Դ. Ն. Պրյանիշնիկովը, ասաց, որ ցորենի բերքի մեջ մեզ պետք են հասուն հասկերը և ոչ թե ծղոտը: «Կանաչ հեղափոխությունը»՝ դա ցորենի, բրնձի և այլ հացազգիների բարձր բերքատու, ցածր և չպառկող տեսակների սելեկցիան ու տարածումն է:

Դրանց ստացման ուղիներից մեկը բույսերի աճը կանխող նյութերի օգտագործումն է: Այդ նյութերը՝ ռետարդանտները, ցողունները դարձնում են առավել ամուր, պառկելակայուն և, այդպիսով, պահպանում են բերքը: Որոշակի ժամանակահատվածում, օրինակ, ցանքը ССС պատրաստուկներով մի անգամ սրսկելու դեպքում բույսերի մոտ ձևավորվում են կարճ, ամուր, պառկելակայուն ցողուններ: ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության տվյալներով միայն 1982 թ. այդ պատրաս-

տուկներով մշակվել է 2,5 միլիոն հեկտար աշնանացան և գարնանացան ցորեն, որը հնարավորություն է ընձեռել լրացուցիչ հավաքելու 500 հազար տոննա հացահատիկ: Խորամուխ եղեք. ռետարդանտների շնորհիվ մեր ժողովրդի սեղանին դրվեց կես միլիոն տոննա լրացուցիչ հաց... Միջին Ասիայում, Անդրկովկասում և Ղրիմում ռետարդանտները լայնորեն կիրառվում են նաև խաղողի այգիների մշակման համար:

Աճման կարգավորիչների կոմպլեքսային կիրառումը և, մասնավորապես, ռետարդանտները, հնարավորություն ընձեռեցին նույնիսկ Սիբիրում, բաց հողում լուծելու պոմիդորի աճեցման պրոբլեմը:

Մյուս ռետարդանտը՝ ալարը, լայնորեն կիրառվում է այգեգործության տարբեր ճյուղերում: Այն կանխում է խնձորենու, տանձենու, դեղձենու, սալորի, բալի, և հաղարջի թափվելը մինչև բերքահավաքը, ինչպես նաև հանգեցնում է երիտասարդ ծառերի վաղ պտղաբերության:

Ռետարդանտներից բացի բուսաբուծության բնագավառում վերջին տարիներին սկսեցին կիրառվել նաև այնպիսի պատրաստուկներ, ինչպիսին են մալեինաթթվի հիդրազիդը, մորֆոնոլը, եռայոդաբենզոյաթթուն և այլն: Դրանցից առաջինը երկարացնում է շաքարի ճակնդեղի արմատապտուղների պահպանման ժամկետը: Մորֆոնոլի կիրառման շնորհիվ բամբակահավաքը կարելի է ավարտել ավելի վաղ, ընդ որում ավելանում է բերքատվությունը, բարձրանում է հումքի որակը...

**Թ.Դ.Թ.— Միքայել Քրիստափորովիչ, Դուք բավական սերտ գիտական կապեր ունեք հայ մասնագետների հետ, մասնավորապես, Հայաստանի գյուղատնտեսության մինիստրության խաղողագործության, գինեգործության ու պտղաբուծության և ՀՍՍՀ ԳԱ ագրոքիմիական պրոբլեմների ու հիդրոպոնիկայի ինստիտուտների հետ: Այդ կապերը, հավանաբար, ներառնում են նաև Ձեր գաղափարների և մեթոդների պրակտիկ մարմնավորումը հանրապետությունում:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Անշուշտ: Հանրապետությունում ստեղծվել է գիտնականների մի ամբողջ դպրոց, որն զբաղվում է բույսերի աճման ու զարգացման կարգավորիչների ուսումնասիրմամբ:

Հայաստանում բուսահորմոնները օգտագործվում են հիմնականում խաղողի և պտղատու կուլտուրաների այգիներում: Դրանք հնարավորություն են ընձեռում զգալիորեն ավելացնելու բույսերի բերքատվությունը: Աճման կարգավորիչների օգտագործումը մեծ հեռանկարներ է բացում բույսերի վեգետատիվ բազմացման բնագավառում. շատ կարևոր է այդ Հայաստանի չոր և շոգ կլիմայի պայմաններում:

**Թ.Դ.Թ.— Ինչպիսի՞ք են ըստ Ձեզ ֆիտոտեխնիկայի հեռանկարները մոտ ապագայում:**

ՉԱՅԼԱԽՅԱՆ.— Դրանք բավական խոստումնալից են: Ֆիտոտեխնիկան ավելի ու ավելի անհրաժեշտ է դառնում: Դրա առավելությունները սկսում են հասկանալ նույնիսկ երկրագործությունից հեռու կանգնած մարդիկ: Գիտականորեն հիմնավորված հանձնարարականով աճման կարգավորիչների կիրառումը լրացուցիչ բերքի ստացման հուսալի գրավականն է: Մեծանում է երկրագործության մեջ ֆիտոտեխնիկայի տեսակարար կշիռը, այն դառնում է ագրոտեխնիկայի անփոխարինելի օգնականը:

Այսպիսով, աճման կարգավորիչների օգտագործումը գյուղատնտեսության ինտենսիֆիկացման կարևորագույն ուղղություններից մեկն է: Ֆիտոտեխնիկան պետք է և կարող է ծառայել դաշտերի, պտղատու և խաղողի այգիների բերքատվության բարձրացմանը, պարենային ծրագրի հաջող լուծմանը:

---



# ԱՐԺԵՔԱՎՈՐ ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ հրապարակվել են հայ փիլիսոփայական մտքի երևելի ներկայացուցիչների մի շարք գործեր: Հայ փիլիսոփայության պատմության ուսումնասիրությունն այսօր անհրաժեշտաբար պահանջում է ոչ միայն առանձին ականավոր իմաստասերների, փիլիսոփայական ուղղությունների, դպրոցների արժեքավորում, այլև գիտական իմաստավորում այն տեսական և գրական աղբյուրների, որոնք այս կամ այն առումով ազդել ու որոշակի դեր են խաղացել Հայաստանում փիլիսոփայական գիտության ձևավորման և հետագա զարգացման ասպարեզում:

Նման բնույթի հետազոտությունները կարևոր նշանակություն ունեն ոչ միայն հայ փիլիսոփայության զարգացման ընթացքը բնութագրելու, այլև զանազան ժողովուրդների հոգևոր մշակույթների փոխազդեցության, փոխհարստացման առնչությունները բացահայտելու նպատակով:

Այս առումով ուշագրավ է պրոֆ. Ա. Թևոսյանի աշխատությունը*, որը նվիրված է XIX դարի հայ տեսական մտքի վրա XVIII դարի գերմանացի մեծ փիլիսոփա Իմանուիլ Կանտի գիտափիլիսոփայական ժառանգության ունեցած ազդեցության բնութագրմանը:

Կանտի փիլիսոփայության ազդեցությամբ XIX դարի երկրորդ կեսին ստեղծվել էր մի նոր ուղղություն՝ կանտականություն, որը դուրս է մնացել հայ փիլիսոփայական մտքի հետազոտողների տեսադաշտից: Հեղինակը հարուստ նյութերի հիման վրա ցույց է տալիս, որ հայ կանտականությունը ժամանակի տիրապետող տեսական-գաղափարական ուղղություններից էր, որ նրա ներկայացուցիչները ոչ միայն յուրացրել ու պրոպագանդել, այլև ըստեղծագործաբար զարգացրել են Կանտի ուսմունքը:

«Կանտի փիլիսոփայական ժառանգության գնահատումը հայ իրականության մեջ» գլխում հեղինակը, համառոտակի անդրադառնալով պատմության մեջ Կանտի փիլիսոփայության խաղացած դերին, այնուհետև հանգամանորեն վերլուծում է այն գործոնները, որոնց առկայությունը պայմանավորել է կանտյան գաղափարների տարածումը հայ իրականության մեջ բուն XIX դարի երկրորդ կեսին:

Կանտի հայ հետևորդների հայացքների և կանտյան դրույթների հետ դրանց հարաբերակցումը բնութագրելիս հեղինակը բնականաբար անդրադառնում է այն հայ մտածողների աշխատություններին, ուր քննարկվող հարցը առավել խոր է լուսաբանվել:

Այստեղ նշվում է, որ Կանտի ազդեցությունը չէր սահմանափակվում զուտ փիլիսոփայական կամ բնագիտական մտքի շրջանակներով, այլև ներթափանցել էր մանկավարժական և գեղարվեստական տեսության ու պրակտիկայի ոլորտը, այսինքն հայ կանտականությունը վերածվել էր ազգային և մշակութային երևույթի՝ ծառայելով թե՛ առաջադիմական, թե՛ հետադիմական գաղափարների հիմնավորմանը:

Մենագրության մեջ այն միտքն է շեշտվում, որ հայ մտածողներից շատերը ոչ թե կուրորեն էին հետևում Կանտի փիլիսոփայական ժառանգությանը, այլ քննադատական վերաբերմունք էին ցուցաբերում դրա նկատմամբ:

Ա. Թևոսյանը, հանգամանորեն ներկայացնելով հայ էմպիրիկ փիլիսոփաների, մատերիալիստների (Ա. Բագրատունի, Ստ. Նազարյան, Գ. Կոստանդյան), իդեալիստների (Ստ. Ոսկան և ուրիշներ), կրոնաիդեալիստական ուղղության ներկայացուցիչների (Ավ. Գուրգենյան, Գ. Աշըգյան, Պ. Էմմանուելյան և ուրիշներ) վերաբերմունքը կանտյան ժառանգության նկատմամբ, միաժամանակ ցույց է տալիս, թե ինչպես և ինչու էին նրանք դիմել Կանտի ուսմունքին, ի՛նչ չափով էին հետևում, ո՛ր չափով քննադատում նրան:

Միանգամայն ճիշտ է նշում հեղինակը, որ «Կանտի փիլիսոփայական իդեաների ներմուծումը հայ իրականության մեջ պատմական մի այնպիսի անհրաժեշտություն էր, առանց որոնց

---

* *Ա. Մ. Թևոսյան,* Կանտը և XIX դարի հայ փիլիսոփայական միտքը: *ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1981, 179 էջ:*

յուրացման հայ տեսական միտքը չէր կարող ապրել իր հետագա զարգացումը, լուծել իր առջև կանգնած խնդիրները» (էջ 64):

«Փիլիսոփայության առարկայի և իմացության պրոցեսի ըմբռնումը» գլխում հեղինակը համառոտակի անդրադառնում է փիլիսոփայության առարկայի կանտյան հայեցակետի և դրանից բխող իմացության պրոցեսի ըմբռնման վերլուծությանը: Հայ կանտականների հայացքները վերլուծելիս Ա. Թևոսյանը հանգում է այն եզրակացության, որ, հետևելով Կանտին, «Նրանք փիլիսոփայությունը դիտել են որպես մեթոդաբանական գիտություն, որն իր հաստատած սկզբունքներով օգնում, օժանդակում է գիտություններին իրենց առջև դրըված խնդիրները լուծելու ժամանակ» (էջ 69): Սակայն, ինչպես նշում է հեղինակը, Կանտի հայ հետևորդները գտնում էին, որ դրանով կանտյան փիլիսոփայությունը չի վերածվում «մտահայեցողական գիտության», չի հեռանում գործնական խնդիրների լուծումից, այլ, ընդհակառակն, աշխատել է տեսական հետազոտության արդյունքները ծառայեցնել «մարդկանց շահերին», դաստիարակմանը (տե՛ս էջ 70):

Մենագրության մեջ ցույց է տրված, որ հայ կանտականներն իմացության պրոցեսում նույնպես ընդունում էին զգայականի ու բանականի միասնության դրույթը և դեմ էին աշխարհի ճանաչողության ինչպես էմպիրիկ, այնպես էլ բանական ձևերի բացարձականացմանը և պրոբլեմի լուծումը տեսնում էին կանտյան ապրիորիստական հարցադրման մեջ: Հայ կանտականների կարծիքով, Կանտի իմացաբանությունը միակ, փրկարար ուսմունքն էր, ուր իր վերաոված արտահայտությունն էին ստանում նոր ժամանակի փիլիսոփայության մեջ առկա երկու հիմնական ուղղությունները՝ էմպիրիզմն ու ռացիոնալիզմը:

«Կանտի տրամաբանական ըմբռնումների արտացոլումը նրա հայ հետևորդների աշխատություններում» գլխում հեղինակը նշում է, որ XIX դարի հայ մտածողները Կանտի օրինակով ձգտում էին ելնել այնպիսի տրամաբանությունից, որում զուգակցվեր թե՛ հետազոտական, թե՛ ապացուցողական ֆունկցիաներ և միտեր ոչ միայն նոր ճշմարտությունների բացահայտմանը, այլև ձեռք բերած ճըշմարտությունների հիմնավորմանը:

Ցույց տալով, որ թե՛ սենսուալիստ, թե՛ ռացիոնալիստ հայ կանտականները ընդհանուր հասկացությունների ծագման ու էության հարցում ունեին դուալիստական տեսակետ, ընդունելով դրանց ծագման երկու աղբյուր՝ զուտ զգայական և գերզգայական, հեղինակը նշում է, որ «թե մեկ և թե մյուս դեպքում նրանք չկարողացան տեսնել որոշակի կապ և անցում այդ կարգի գաղափարների միջև..., որ, այսպես կոչված, գերզգայական գաղափարները վերջին հաշվով հենվում են փորձի տվյալների վրա...» (էջ 94):

Աշխատությունից բխում է, որ իմացաբանության մեջ «էմպիրիզմի և ռացիոնալիզմի միակողմանիության հաղթահարման կանտյան սկզբունքը նրա հայ հետևորդները միաժամանակ ընկալել են նաև որպես ինդուկտիվիզմի և դեդուկտիվիզմի հաղթահարում տրամաբանության բնագավառում» (էջ 102):

Ծարադրելով հայ կանտականների ըմբըռնումները հիշյալ հարցի վերաբերյալ ու ցույց տալով, որ ըստ նրանց ինդուկցիան գործ ունի իրականության ուսումնասիրության և ընդհանրացման հետ, իսկ դեդուկտիվ մեթոդն իր հիմքում ունի բանականության ապրիորի կատեգորիաները, հեղինակը նշում է, որ նրանք այս դեպքում ևս ունեն դուալիստական դիրքորոշում:

«Հայ կանտականների բարոյագիտական ուսմունքը» գլխում քննարկվում են մի շարք բարոյական պրոբլեմներ և կատեգորիաներ, որոնք գտնվում էին անցյալ դարի հայ մտածողների ուշադրության կենտրոնում, հատկապես նրանց, ովքեր գիտափիլիսոփայական գործունեությանը զուգահեռ զբաղվում էին նաև մանկավարժական պրակտիկայով:

Գրքում մարքսիստական մեթոդաբանության դիրքերից քննադատվում է հայ կանտականների այն կարծիքը, թե իբր մատերիալիզմն ի վիճակի չէ բացահայտել հոգևոր գործոնի դերը մարդու թե՛ անհատական, թե՛ հասարակական կյանքում, քանզի մարդկանց կյանքի բուն նպատակը ապրիորի ձևով արդեն իսկ առկա է նրանց հոգեկանի մեջ:

Բարոյագիտական կատեգորիաներից հայ կանտականները հատուկ ուշադրություն էին դարձնում կամքի կատեգորիային՝ պաշտպանելով կամքի ազատության գաղափարը: Սակայն նրանք արդարացնում էին միայն բարոյականության օրենքների և սկզբունքների ոգուն համապատասխան կատարվող գործողությունները, որոնք արտահայտում են համամարդկային նպատակներ ու իդեալներ: Իսկ բարոյական կամ ոչ բարոյական գործունեության չափանիշը նրանք համարում էին բարոյականության ապրիորի, համընդհանուր և անհրաժեշտ, այլ ոչ թե անհատին վերաբերող օրենքները, որոնց պետք է հաղորդակից լինեն բոլոր մարդիկ (տե՛ս էջ 115—116):

Բարոյականության հայ տեսաբանների ըմբռնումը կրում է աբստրակտ, ոչ պատմական բնույթ, նրանց պատկերացրած մարդը կոնկրետ չէ, կոնկրետ պատմական պայմաններից դուրս է: Նրանք այս նույն ոգով էին բացատրում թե՛ բարոյականության օրենքների առաջացումը, թե՛ դրանց իրականացումը:

«Կանտյան բնափիլիսոփայությունը և հայ բնագիտական միտքը» գլխում լուսաբանված է հայ իմաստասերների (Ա. Գարագաշյան, Ն. Տաղավարյան, Ն. Ռուսինյան) և բնագետների (Հ. Բարսեղյան, Ս. Բալազյան) գիտափիլիսոփայական գործունեությունը, որի նպատակն էր Կանտի բնափիլիսոփայական ուսմունքի, հատկապես կոսմոլոգիական տեսության ուսումնասիրությունն ու պրոպագանդումը:

Գիտական շրջանառության մեջ դնելով բավականին հարուստ և տեսական առումով հետաքրքրական նյութ, Ա. Թևոսյանը ցույց է տալիս, որ հայ հեղինակներն այս հարցում ևս տարբեր տեսանկյունից են մոտեցել Կանտի բնագիտական ժառանգությանը: Ոմանք (Հ. Բարսեղյանը, Ս. Բալազյանը և ուրիշներ) չեն շրջափել Կանտի կոսմոգոնիական վարկածի փիլիսոփայական հիմքը, իսկ ոմանք՝ ելնելով իրենց ուսուցչի բնագիտական ուսմունքից, կատարել են աշխարհայացքային հետևություններ:

Այստեղ նշված է նաև, որ որոշ հայ հեղինակներ, մասնավորապես Մ. Վարդանյանը, շեղվում էին Կանտի իսկ կողմից կատարած եզրակացություններից: Այսպես, օրինակ, Կանտի ուսմունքում նրանք տեսնում էին մատերիալիզմի հիմնաքարերի հաստատումը, նրա գիտական ստեղծագործության առաջին փուլը մեկնաբանում մատերիալիստորեն: Որոշ հայ հեղինակներ չեն բավարարվել կանտյան վարկածի պարզ շարադրանքով, այլ, ելնելով իրենց ժամանակի բնական գիտությունների զարգացման մակարդակից, լրացուցիչ փաստարկներ են բերել այդ վարկածի ճշմարտացիությունը հաստատելու, մի շարք երկրաբանական պրոցեսների առաջացման պատճառները բացատրելու համար (տե՛ս էջ 148—149, 152):

Գրախոսվող աշխատությունը կարևոր նշանակություն ունի հայ փիլիսոփայական մտքի պատմությունը բազմակողմանի և խոր ներկայացնելու համար: Բարձր գնահատելով Ա. Թևոսյանի կատարած շնորհակալ աշխատանքը, կամենում ենք հայտնել մի քանի նկատառումներ: Աշխատությունը կշահեր, եթե հեղինակը ներկայացներ այն կոնկրետ սոցիալ-քաղաքական, տնտեսական, պատմական և մշակութային գործոնների առավել հանգամանալի բնութագիրը, որոնք պայմանավորեցին ոչ միայն հայ մտածողների հետաքրքրությունը դեպի Կանտը, այլև հայ գաղափարախոսական կյանքի որոշակի ուղղության ներկայացուցիչների վերաբերմունքը:

Ցանկալի է, որ աշխատությունն ունենար առաջաբան, ուր համեմատաբար ավելի մանրամասն ներկայացված լինեն թեմայի հրատապությունը, նշանակությունը: Անչափ համառոտ է խոսվում Կանտի և իր ուսմունքի դերի մասին փիլիսոփայության պատմության մեջ: Առաջին գլուխը անհամեմատ շահում է հարցերի քննարկման, արժութավորումների, համեմատական վերլուծության ընդարձակության առումով: Հաջորդ գլուխներում երբեմն գերակշռում է փաստական նյութը (էջ 117—124, 130—131 և այլն):

Մեր կարծիքով, հեղինակը երբեմն թերագնահատում է հայ մտածողների վերաբերմունքը Կանտի ուսմունքի նկատմամբ: Այսպես, անդրադառնալով որոշ հայ կանտականների՝ մեծ գերմանացու հայացքների զարգացման առաջին շրջանի վերաբերյալ դատողությունների գնահատմանը, Ա. Թևոսյանը նշում է, թե նրանք Կանտի փիլիսոփայության զարգացման այդ շրջանի բովանդակությունը սխալմամբ համարել են անվերապահորեն մատերիալիստական: Անշուշտ, Կանտը նպատակ չի հետապնդել մատերիալիստական ուսմունք ստեղծել, սակայն, ինչպես վկայում է նրա առաջին շրջանի աշխատությունների վերլուծությունը, դրանցից օբյեկտիվորեն բխում են մատերիալիստական հետևություններ: Մեզ թվում է, թե Կանտի հայացքների նմանօրինակ մեկնաբանումը հետևանք է ոչ այնքան հայ հեղինակների սխալ ըմբռնման, որքան նրանց մեթոդաբանական դիրքորոշման (որի մասին այլ կապակցությամբ խոսում է և ինքը՝ հեղինակը), հայ իրականության գաղափարական-տեսական պահանջներով, որոնք ծառացել էին հայ մտածողների առաջ:

Այս դիտողությունները բնավ չեն նսեմացնում Ա. Թևոսյանի մենագրության գիտական արժեքը: Գրախոսվող աշխատությունը թե՛ առաջադրած պրոբլեմների, թե՛ ընդգրկած նյութի առումով մեծ հետաքրքրություն կարող է առաջացնել ինչպես մասնագետների, այնպես էլ ընթերցողների լայն շրջաններում:

**Կ. ՄԻՐՈՒՄՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**

# ՀԱՎԵՐԺՈՒԹՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆԸ

ՌՈՒՍԵՐԵՆԻՑ ԹԱՐԳՄԱՆՎԵԼ և հայ ընթերցողի սեղանին է դրվել մի ուշագրավ գիրք*: Դա հրապարակախոսական բնույթի ակնարկների ժողովածու է այն մտածող-մարտիկների, հեղափոխական գործիչների մասին, որոնց անունները փորագրված են Կրեմլի Ալեքսանդրյան այգում կանգնեցված հուշարձան-կոթողի վրա:

Տասնինը փառավոր անուններ: Տարբեր են այդ մարդկանց ճակատագրերն ու կյանքի ուղիները, նրանց տեսական հայացքներն ու հեղափոխական գործունեությունը: Սակայն բոլորն էլ եղել են սոցիալական ճնշումից ու հարստահարումից աշխատավոր մարդու ազատագրության ու երջանկության, նրա լուսավոր ապագայի համար մղված պայքարի անձնազոհ մարտիկներ, մեծ մտածողներ: Հատկանշական է, ասված է գրքում, որ այդ գործիչների ճնշող մեծամասնությունը կրել է անլուր զրկանքներ ու հալածանքներ, գիտակցական կյանքի գրեթե կեսը անց է կացրել տարագրության մեջ, աքսորում և բանտերում:

Հեղինակներն իրենց առջև խնդիր չեն դրել խորությամբ ու համակողմանի վերլուծել նրանց գիտական և պրակտիկ գործունեությունը: Նրանք ղեկավարվել են լենինյան այն ցուցումով, որ պատմական ծառայությունները գնահատվում են ոչ թե նրանով, թե ի՛նչ չեն տվել պատմական գործիչները ժամանակակից պահանջների համեմատությամբ, այլ նրանով, թե ի՛նչ նոր բան են տվել նրանք իրենց նախորդների համեմատությամբ:

Հեղափոխական Ռուսաստանի առաջին հուշարձան-կոթողի վրա հավերժացված են գիտական կոմունիզմի հիմնադիրներ, միջազգային պրոլետարիատի առաջնորդներ Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի անունները, որոնց հանճարեղ գաղափարները, մարդկության գեղեցիկ ապագայի մասին նրանց խոհերը ռեալ մարմնավորում ստացան առաջինը մեր երկրում:

**Չեմ կարող ապրել հանգիստ.** այսպիսին է Մարքսին նվիրված ակնարկի խորագիրը, բնաբան, որ վերցված է երիտասարդ տարիներին նրա գրած բանաստեղծություններից, տող, որ բնութագրում է հանճարեղ մտածողի խառնվածքը, հեղափոխական մարտիկի փոթորկուն կյանքի անցած ուղին: Ֆ. Էնգելսի ընկերակցությամբ ստեղծված գիտական կոմունիզմի ուսմունքը փիլիսոփայական, տնտեսական ու սոցիալ-քաղաքական հայացքների մի կուռ սիստեմ է, կենդանի, ստեղծագործական ուսմունք, գործողության ուղեցույց բանվոր դասակարգի ու նրա կուսակցության հեղափոխական պայքարի համար:

Ամենաականավոր գիտնականների ու հեղափոխական գործիչների համաստեղությանն է պատկանում Կարլ Մարքսի մեծ բարեկամն ու մերձավորագույն զինակիցը, մարդ, որ իր ողջ եռանդն ու միտքը նվիրաբերեց աշխարհի հեղափոխական վերափոխման մեծ գործին: Հետաքրքրությամբ են ընթերցվում գրքի այն էջերը, ուր խոսվում է երկու հանճարեղ մտածողների ու հեղափոխականների անկեղծ բարեկամության, նրանց համատեղ տեսական ու պրակտիկ գործունեության մասին: Նրանց կարճատև անձնական հանդիպումը 1844 թվականին, հարատևեց քառասուն տարի և վերաճեց խոր բարեկամության: «Եվրոպական պրոլետարիատը կարող է ասել,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ նրանց փոխհարաբերությունները գերազանցում են նախնիների բոլոր ամենասրտաշարժ ավանդազրույցները մարդկային բարեկամության մասին»:

Հուշարձան-կոթողի վրա փորագրված են ուտոպիական սոցիալիզմի հիմնադիրներ Թոմաս Մորի, Թոմազո Կամպանելլայի, Ջերալդ Ուինստենլիի, Ժան Մելիեի, Անրի Սեն-Սիմոնի և Շարլ Ֆուրիեի անունները: Արտահայտելով բռնակալության և շահագործման տակ հեծող աշխատավորական լայն զանգվածների խոհերը, դարավոր լուսավոր երազանքները, մեծ մտածող-մարտիկներն իրենց աշխատություններում ներկայացրին ապագա արդարացի, կոմունիստական հասարակության ուրվագիծը: Ինչ խոսք, նրանց սոցիալիստական գաղափարներն այսօր շատ բանով պարզունակ են, սակայն դրանք մեծ դեր են խաղացել ապագա սերունդների «մտքի արթնացման» համար: Ավելին, ուտոպիստ-սոցիալիստների աշխատություններում արտահայտված շատ գաղափարներ հետագայում ստեղծագործաբար վերամշակեցին, գիտականորեն իմաստավորեցին մարքսիզմ-լենինիզմի դասականները:

* *Դ. Վալովոյ, Հ. Լապշինա,* Անուններ կոթողի վրա, *«Հայաստան» հրատ., 1983 թ., 400 էջ:*



Ընթերցողը ծանոթանում է անգլիական մեծ հումանիստ, ուտոպիական սոցիալիզմի ականավոր հիմնադիրներից մեկի՝ Թ. Մորի կյանքին, հայացքներին, որոնք շարադրված են նրա հռչակավոր **Ուտոպիա** աշխատության մեջ: Այստեղ անողոքաբար դատապարտվում է մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգը, մասնավոր սեփականությունը համարվում է բոլոր չարիքների ու տառապանքների աղբյուրը: Այնուհետև Մորը այդ կարգերին հակադրում է շահագործումից ազատ ու արդարացի հասարակարգը, որ իբր գոյություն ունի ինչ-որ երևակայական կղզում, ուր չկան մասնավոր սեփականություն, աղքատներ ու հարուստներ, ուր թագավորում են աշխատանքը, հավասարությունն ու արդարությունը: Սոցիալական անարդարությունը ոչնչացնելու համար նա առաջարկում է լուսավորությունը, համոզման մեթոդները: Մեծ հումանիստը, անգլիացի նախկին լորդ-կանցլերը իր կյանքն ավարտեց կառափնարանում, չհրաժարվելով իր համոզմունքներից:

Ինկվիզիցիայի լեգենդար կալանավորը՝ Թ. Կամպանելլան, որն իր կյանքի 33 տարիներն անցկացրել է պատժախցերում, ընթերցողի առջև հառնում է որպես հանճարեղ մտածող, քաջարի հեղափոխական: Բանտում, երբ այլևս շարժվել չէր կարող, նա գրում է իր ամենանշանավոր երկը՝ **Արևի քաղաքը**, որը գրված է Մորի **Ուտոպիա** գրքի ազդեցությամբ, բայց շատ բանով գերազանցում է նրան: Կամպանելլայի կոմունիստական ուտոպիան, որն արտացոլված է այդ աշխատության մեջ, ընդհանուր առմամբ իր մտահղացմամբ և հասարակության կառուցվածքի ու զարգացման գլխավոր հարցերի լուծումով ամենաամբողջականներից էր:

Անգլիայում XVII դարի կեսերին բուրժուական հեղափոխությունը, որն իրականացվեց լայն մասսաների աջակցությամբ, ոչինչ չտվեց աշխատավոր մարդուն. շահագործման մի ձևը փոխարինվեց մի այլ ձևով: Ջ. Ուինստենլին ևս, իր նախորդների նման, սոցիալական բոլոր չարիքների պատճառը համարում էր մասնավոր սեփականությունը: Նա լքված մի փոքր հողակտորի վրա ստեղծում է կոմունա, ուր քսան հոգի մեկտեղ մշակում են դաշտերը՝ իր արդյունքները բաշխում հավասարապես: Իր հայացքներն առավել հանգամանորեն ու ցայտուն նա շարադրեց իր վերջին պանֆլետներից մեկում՝ **Ազատության օրենքում**, ուր տրված է հասարակության վերակառուցման նախագիծը:

Ահա և ֆրանսիական գյուղի քահանա Ժան Մելիեն, որն իր երկերում, հատկապես **Կտակում**, կոչ է անում տապալել թագավորին, պետությունը, համարձակ հանդես է գալիս մասնավոր սեփականության, կրոնի ու եկեղեցու դեմ, անրջում արդարացի հասարակության մասին: Մելիեն իրավամբ համարվում է XVIII դարի ֆրանսիական ուտոպիական կոմունիզմի հայրը, ֆրանսիական առաջին մատերիալիստն ու աթեիստը, հեղափոխական դեմոկրատը: Նա գտնում էր, որ ազատությունը կարելի է ձեռք բերել միայն հեղափոխական ճանապարհով:

Վերջինիս հայրենակիցն ու ժամանակակիցն է եղել Սեն-Սիմոնը՝ խոշոր մտածող, մարտնչող գիտնական. հիասթափված մեծ հեղափոխության արդյունքներից, նա առաջ էր քաշում հասարակության զարգացման օրինաչափության գաղափարը, մարդկային հասարակությունը դիտելով որպես շարունակ զարգացող ամբողջական օրգանիզմ: Իր աշխատություններում անողոք քննադատում էր կապիտալիզմը, հանդես գալիս որպես սոցիալական վերափոխության ջատագով, սոցիալական հավասարության պաշտպան: Սակայն, ի տարբերություն Մելիեի, նա չէր ժխտում մասնավոր սեփականությունը, քարոզում էր հասարակության վերափոխման խաղաղ ճանապարհը: Այնուամենայնիվ, Սեն-Սիմոնը այն մեծ սոցիալիստ-ուտոպիստներից էր, որոնց աշխատությունները դարձել են գաղափարական նախադրյալներ գիտական կոմունիզմի տեսության ստեղծման համար:

Շ. Ֆուրիեի **Չորս շարժումների տեսությունը** լույս տեսավ 1808 թ.: Կապիտալիզմի դեմ նետված առաջին ռումբն էր այդ: Ինչպես նշում են մարքսիզմի կլասիկները, բոլոր ուտոպիստներից Ֆուրիեն է արտակարգ սրությամբ քննադատել բուրժուական քաղաքակրթությունը: Չնայած նրա սխալներին, որոնք դարաշրջանի պայմանների հետևանք են, նա հանճարեղորեն ուրվագծել է ապագա կոմունիստական հասարակարգի շատ կողմեր:

Մանրբուրժուական սոցիալիզմի խոշոր ներկայացուցիչներ Պիեռ Պրուդոնը և Ֆերդինանդ Լասսալը ապրել ու գործել են XIX դարում և իրենց աշխատություններով ու ելույթներով նպաստել են Ֆրանսիայի ու Գերմանիայի պրոլետարիատի սոցիալական և քաղաքական զարթոնքին:

Կ. Մարքսը նշել է, որ Պրուդոնը մանր բուրժուազիայի տիպիկ գաղափարախոսն է, իսկ նրա սոցիալիզմը՝ գյուղացիների ու արհեստավորների աշխարհայացքը: Սեփականությունը նրա իդեալն է, բուրժուական սեփականությունը քննադատվում է մանր բուր-

ժուազիայի դիրքերից: Քննադատելով կապիտալիստական հարաբերությունները՝ նա հարձակվում է բանվոր դասակարգի գաղափարախոսության վրա: Մարքսն ու Էնգելսը սուր քննադատել են Պրուդոնի սխալ հայացքները, որոնք խոչընդոտում էին գիտական կոմունիզմի գաղափարների տարածմանը բանվորների շրջանում: Չնայած դրան, նա դատապարտում է անարդարությունը, հանդես գալիս աշխատավորների շահերի պաշտպանությամբ, քննադատում կրոնն ու եկեղեցին...

«Մեր թշնամիների թշնամին»,— այսպես է անվանել Մարքսը Ֆերդինանդ Լասսալին՝ չափազանց տաղանդավոր ու բազմակողմանի կրթված, մեծ եռանդի տեր այդ մարդուն, Գերմանիայի XIX դարի կեսերի բանվորական շարժման ականավոր գործչին: 60-ական թվականների սկզբին Լասսալը ակտիվ հանդես է գալիս կազմակերպորեն ինքնուրույն բանվորական կուսակցության ստեղծման օգտին: Սակայն նա մերժում էր բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը, դեմ էր պրոլետարիատի դիկտատուրային, հանդես էր գալիս որպես մանրբուրժուական դեմոկրատ:

Վիլհելմ Լիբկնեխտը, Ավգուստ Բեբելը, Ժան Ժորեսը և Էդուարդ Վայանը բացառիկ դեր են խաղացել բանվորական ու սոցիալիստական շարժման զարգացման գործում, ակտիվ մասնակցել ռեակցիայի, կապիտալիստական շահագործման, միլիտարիզմի ու իմպերիալիստական պատերազմների դեմ մղված պայքարին:

Վ. Լիբկնեխտը 1846 թվականին քսան տարեկան հասակում դառնում է կոմունիստ: Նրա սոցիալական ու քաղաքական հայացքների ձևավորման, ամբողջացման գործում կարևոր դեր խաղացին Մարքսի ու Էնգելսի աշխատությունների ուսումնասիրությունը, անձնական հանդիպումները, ապա և բարեկամությունը նրանց հետ: Մարքսը դառնում է Լիբկնեխտի «խստապահանջ ուսուցիչը», որի շնորհիվ նա ազատագրվում է մանրբուրժուական սոցիալիզմի վերջին «երանգներից և կարողանում է մտածել ու գործել Մարքսի գիտական տեսության ոգով»:

Գերմանական հեղափոխական շարժման վետերան, «հեղափոխության զինվոր» էին կոչում նրան. 1865 թ. նա հանդիպում է 25-ամյա խառատ Ավգուստ Բեբելին: Լիբկնեխտն արդեն քառասուն տարեկան էր, քաղաքականապես փորձված ու կրթված, մասնակցել էր 1848 թ. հեղափոխությանը: Այլ էին Բեբելի հեղափոխական գործունեության նախնական քայլերը: Ընչազուրկ պրոլետարներին օգնելու անկեղծ ցանկությունը, բանվորական կյանքի խոր իմացությունը և, վերջապես, ծանոթությունը սոցիալիստական գրականությանը, 60-ական թվականների սկզբին կտրուկ շրջադարձ առաջացրին նրա հայացքներում: Բեբելը թոթափում է լիբերալ-բուրժուական պատրանքները և գալիս սոցիալիստների բանակը:

Վ. Լիբկնեխտի և Ա. Բեբելի ջանքերով հիմնադրվում է Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը. խոշորագույն մի իրադարձություն էր այդ ո՛չ միայն գերմանական, այլև միջազգային բանվորական ամբողջ շարժման մեջ: Նրանք համատեղ մշակում են կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, ղեկավարում բանվոր դասակարգի պայքարը հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ընդդեմ ռեակցիայի, օպորտունիզմի և ռևիզիոնիզմի: Մարքսն ու Էնգելսը բարձր են գնահատել գերմանական բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական դիրքը ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ, այդ գործում Լիբկնեխտի և Բեբելի ծառայությունը. լինելով ռայխստագի դեպուտատներ՝ նրանք հանդես էին գալիս միլիտարիզմի, ռազմական վարկերի դեմ, ռայխստագի ամբիոնից մերկացնելով պրուսական ռեակցիայի հակաժողովրդական բնույթը:

«Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը,— գրել է Մորիս Թորեզը,— Վայանից ու Ժորեսից ժառանգություն է ստացել լավագույնը՝ նրանց հավատը բանվոր դասակարգի ապագայի նկատմամբ»: Իրոք, դժվար է գերագնահատել ֆրանսիական ու միջազգային սոցիալիստական շարժման այդ ականավոր գործիչների և հեղափոխական մարտիկների ծառայությունը: Էդուարդ Վայանը եղել է Ֆրանսիայի սոցիալիստական կուսակցության կազմավորման նախաձեռնողներից մեկը, I Ինտերնացիոնալի գլխավոր խորհրդի անդամը, ապա II Ինտերնացիոնալի ձախ թևի առաջնորդներից մեկը: Նա եղել է Փարիզի կոմունայի խոշոր գործիչը, նրա գործադիր հանձնաժողովի անդամը, ակտիվ մարտնչել նրա բարիկադների վրա մինչև վերջին պահը, որի անկումից հետո հեռակա կարգով դատապարտվել է մահվան: Ֆրանսիայի պրեզիդենտի պոստի համար Վայանի թեկնածությունն առաջադրելու առնչությամբ Վ. Ի. Լենինը գրել է. «Վայանի օգտին քվեարկումը ցույց էր ի պատիվ կոմունայի: Վայանը կենդանի հուշ էր նրա մասին»:

Հեղինակները վկայակոչել են մեծ գրող Ռոմեն Ռոլանի խոսքերը Ժան Ժորեսի մասին, որը պառլամենտի ամբիոնից ու մամուլի էջերից վճռականորեն հանդես էր գալիս ընդդեմ ռեակցիայի, բուրժուական կարգերի, ջերմորեն պաշտպանում աշխատավորական զանգվածների շահերը: «...Ես սկսեցի ջանասիրությամբ հաճախել պառլամենտի կարևորագույն նիստերին,— գրել է Ռոլանը:— Իր առաջին հաջողություններից նանանչափայլ լուսապսակով էր հանդես գալիս Ժորեսը: Նա գրոհի էր տանում կարգապահ, աչալուրջ, կենսախինդ, հաղթանակին հավատացող իր զորքը՝ սոցիալիստական կուսակցությունը»: Չնայած մինչև վերջ նա չկարողացավ ընկալել մարքսիզմի հեղափոխական բովանդակությունը, այնուամենայնիվ, Ժորեսն անկեղծորեն հավատում ու պայքարում էր պրոլետարիատի վերջնական նպատակի՝ սոցիալիզմի համար, երբեք ձեռք չմեկնելով բուրժուազիային ու չհամագործակցելով նրա հետ: Ժորեսը մինչև վերջ մնաց միլիտարիզմի ու իմպերիալիստական պատերազմների դեմ հետևողական պայքարող: 1904 թ. նրա հիմնած հեղափոխական դեմոկրատիայի մարտական լրագիրը՝ «Յումանիտեն», 1920-ից դարձավ Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության օրգանը:

Ռուսական հեղափոխական ու դեմոկրատական շարժման զարգացումը հնարավոր չէ պատկերացնել առանց այնպիսի գործիչների, ինչպիսիք են Բակունինը, Չերնիշևսկին, Լավրովը, Պլեխանովը և Միխայլովսկին:

Գրքում ընդհանուր գծերով ներկայացված են Միխայիլ Բակունինի կերպարը, նրա հայացքները: Բելինսկին գրել է, որ Բակունինի մեջ իրեն «գերել է կյանքի շարժումը, անհանգիստ ոգին, կենդանի ձգտումը ճշմարտության...»: Այդ «անհանգիստ ոգուց» հալածական, նա հայտնվում էր այնտեղ, որտեղ հասունում էին հեղափոխական իրադարձությունները, տեղի էին ունենում կատաղի մարտեր: 1848—1849 թթ. Բակունինը Փարիզի ու Բեռլինի բարիկադների վրա էր, Պրագայի ու Դրեզդենի ապստամբությունների ղեկավարների շարքերում, կրքոտ պաշտպանում էր Փարիզի կոմունայի գործը: Նա հեղափոխական քաջարի մարտիկ էր, որն իր ամբողջ կյանքը նվիրաբերել էր շահագործումից ու ճնշումից աշխատավորների ազատագրման գործին, վճռականորեն հանդես էր գալիս ռուսական ինքնակալության ու ճորտատիրության դեմ, հավատում էր Ռուսաստանի լուսավոր ապագային:

Հեղափոխական գործունեության համար նրան երկու անգամ դատապարտել են մահվան, ութ տարի նա անց է կացրել արևմտաեվրոպական ու ռուսական ամենախիստ ռեժիմի բանտախցերում, չորս տարի՝ սիբիրյան աքսորում: Մյուս կողմից՝ լինելով մինչպրոլետարական ժամանակաշրջանի հեղափոխական գաղափարների արտահայտիչ, գործնականում արտահայտելով գյուղացիության շահերը, Բակունինը անարխիստական հայացքների գաղափարախոս էր: Անարխիզմի դեմ Մարքսի ու Էնգելսի պայքարն ավարտվեց բակունինիզմի լիակատար պարտությամբ, իսկ բանվորական հուժկու շարժումը արժանի դաս տվեց Բակունինին, ստիպելով նրան հեռանալ ուտոպիստական պատկերացումներից և մոտենալ սոցիալիստական հեղափոխության մեջ պրոլետարիատի դերի ըմբռնմանը:

XIX դարի ռուսական իրականության ամենախոշոր դեմքերից էր Նիկոլայ Չերնիշևսկին՝ մեծ մտածող, գրող ու գրական քննադատ, հեղափոխական դեմոկրատիայի առաջնորդ, որի աշխատություններում դասակարգային պայքարի ոգի կար: Չնայած հեղափոխական գյուղացիության գաղափարախոսը մնաց ուտոպիական սոցիալիստ, այնուամենայնիվ, նա մինչմարքսյան դարաշրջանի բոլոր մտածողներից ավելի էր մոտեցել գիտական սոցիալիզմին: Չերնիշևսկին իր աշխատություններում հանդես էր գալիս գյուղացիական լայն զանգվածների շահերի պաշտպանությամբ, ընդդեմ 1861 թվականի հակաժողովրդական ռեֆորմի, ցարիզմի: Նա ժխտում էր գյուղացիության հարցի «խաղաղ լուծման» քարոզը, պրոպագանդում զինված ապստամբության գաղափարը:

Ցարական բանակի նախկին գնդապետ, Պետերբուրգի հրետանային ակադեմիայի պրոֆեսոր, փայլուն մաթեմատիկոս ու բանաստեղծ Պյոտր Լավրովը անցյալ դարի 50-ական թվականների վերջերին հեղափոխական խմորումների իրադրության պայմաններում լիբերալիզմից անցնում է հեղափոխական դեմոկրատիզմի դիրքերը, սերտ կապեր հաստատում Միխայլովսկու և Չերնիշևսկու հետ: Հեղափոխական գործունեության համար «խռովարար պրոֆեսորը» նետվում է բանտ, ապա աքսորավայրից փախչում արտասահման: Այնտեղ նա հանդիպում է Մարքսին ու Էնգելսին, ծանոթանում նրանց աշխատություններին, ջերմ բարեկամական հարաբերություններ է հաստատում սոցիալիստների հետ, դառնում I Ինտերնացիոնալի անդամ, հայտնըվում հեղափոխական իրադարձությունների բուն կենտրոնում: Լավրովը ո՛չ միայն լիովին պաշտպանում էր Փարիզի կոմունան, այլև կատարում էր կոմունարների հանձնարարությունները: «Փարիզի կոմունան,— ազդարարել է նա,— կլինի մարդկային շարժման կարևոր դարագլուխը»:

Ազնիվ հեղափոխականն ու սոցիալիստը, սակայն, չկարողացավ հաղթահարել նարոդնիկական պատրանքները, լիովին ըմբռնել գիտական կոմունիզմի տեսության ողջ խորությունը:

«Ռուսական զինանշանի արծիվն ունի երկու

գլուխ, երկու ագահ կտուց՝ մեկը դինաստիական-ոստիկանական, իսկ մյուսը՝ բուրժուական: Ուրեմն, խփեցե՛ք գիշատիչ թռչունի երկու գլխին էլ»: Այսպես է գրել անցյալ հարյուրամյակում Նիկոլայ Միխայլովսկին, կոչ անելով երիտասարդությանը պայքարի ելնել ինքնակալության դեմ: Ահա թե ինչու ցարական կառավարությունը նրան համարում էր վտանգավոր ու անհաշտ մի թշնամի, և դաժանորեն հետապնդում էր նրան: Քննադատելով Միխայլովսկու իդեալիստական աշխատությունները, նրա հրաժարումը հեղափոխական նարոդնիկության ավանդույթներից, Վ. Ի. Լենինը պատշաճն է հատուցել հեղափոխական շարժման մեջ այդ գործչի ներդրած ավանդին, մեծարելով նրան որպես ժողովրդի ազատագրության համար մղված պայքարի անկեղծ ու տաղանդավոր մարտիկի:

Ռուսաստանն անցել էր հեղափոխական տեսության որոնման երկար, տանջալից ուղի: Հեղափոխականների նոր սերունդն սկսեց հասկանալ, որ Ռուսաստանի ապագան ամենաառաջավոր տեսությամբ՝ մարքսիզմով զինված բանվոր դասակարգի հեղափոխական շարժման մեջ է: Մենք ուրիշ ելք չունենք: Գեորգի Վալենտինովիչ Պլեխանովի այս թևավոր ու խոր մտքերն են հեղինակներն ընտրել որպես վերնագիր մարքսիզմի սերմերը Ռուսաստանի հողում ցանողին, ամբողջ երկու տասնամյակ գիտական կոմունիզմի հետևողական ու անխոնջ պրոպագանդիստին նվիրված ակնարկի համար:

1883 թ. Ժնևում Պլեխանովը մի խումբ ռուս հեղափոխականների հետ ստեղծեց առաջին ռուսական սոցիալ-դեմոկրատական «Աշխատանքի ազատագրություն» խումբը, որը մեծ գործ կատարեց գիտական սոցիալիզմը Ռուսաստանում պրոպագանդելու և ռուսական բանվորական սոցիալ-դեմոկրատական կուսակցության կազմակերպման նախապատրաստության համար:

Գեորգի Պլեխանովը բացառիկ փայլուն և շռայլորեն օժտված անհատ էր, մեծ կուլտուրայի տեր մարդ, ականավոր գիտնական ու տեսաբան, առաջին մարքսիստը Ռուսաստանում: Չնայած լուրջ սխալներին, վիթխարի են Պլեխանովի մատուցած ծառայությունները ռուսական և միջազգային հեղափոխական շարժմանը:

Գիրքն ընթերցողների մեջ ո՛չ միայն խոր հետաքրքրություն է հարուցում մեծ մտածող-մարտիկների, հեղափոխական գործիչների հանդեպ, այլև համակում է նրանց անկեղծ սիրով ու երախտագիտությամբ այն մարդկանց նկատմամբ, ովքեր իրենց կյանքն ու ստեղծագործական միտքը անմնացորդ նվիրաբերել են աշխատավոր ժողովրդի լուսավոր ապագայի կերտման գործին, իրենց հզոր մտքով և հեղափոխական գործունեությամբ ուղի են հարթել կոմունիստական հասարակության կառուցման համար:

**Վ. ՍԱՐԳՍՅԱՆ**



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 18.07.84 թ.: Ստորագրված է տպագրության 8.08.84 թ.: ՎՖ 04653: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.482: Պատվեր 1634:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.